ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

# ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆԻ ՅՕԴՈՒԱԾՆԵՐԸ *ԱՐԵՒ* ԼՐԱԳԻՐԻՆ ՄԷՋ

## ՀՆԱՐԱՒՈՐՈՒԹԻ՞ՒՆ ԹԷ ԴԻՄԱԴՐՈՒԹԻՒՆ

*ՋԱՀԱԿԻՐ* ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԻԲ.

ԳԱՀԻՐԷ
2019

ՀԱՅԿ ԱՒԱԳԵԱՆ

# ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆԻ ՅՕԴՈՒԱԾՆԵՐԸ *ԱՐԵՒ* ԼՐԱԳԻՐԻՆ ՄԷՋ

## ՀՆԱՐԱՒՈՐՈՒԹԻ՞ՒՆ ԹԷ ԴԻՄԱԴՐՈՒԹԻՒՆ

*ՋԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ*
ՅԱՒԵԼՈՒԱԾ ԻԲ.

ԳԱՀԻՐԷ
2019

*Հայ գրողը աշխարհ եկած է մասնաւոր ընդունակութեամբ մը,*
*անապատին մէջ քարոզելու ընդունակութեամբ։*
ՎԱՀԱՆ ԹԷՔԷԵԱՆ[1]

# ՄՈՒՏՔ

1912-ին Երուանդ Օտեան պիտի գրէր.

*Վահան Թէքէեանը թէեւ նախապէս կը ճանչնայի, սակայն մտերմութիւն մը չունէի հետը։ Բարիզ տեսած էի զինքը քանի մը անգամներ, ուր եկած էր Մարսիլիայէն, մէկ քանի շաբաթ ժամանակ անցընելու համար։ Ամէն օր գրավաթ փոխող մարդու մը տպաւորութիւնը թողած էր վրաս։ Կը կարծէի թէ զուտ բանաստեղծ մըն է, որուն հետ կարելի չէ արձակօրէն խօսիլ։ Իր բանաստեղծական նախափորձերն ալ, որոնք Հոգեր տիտղոսով հատորի մը մէջ երեւցած էին, շատ խանդավառած չէին զիս։*

*Բայց երբ Հնդկաստան գտնուած միջոցիս Ազատ բեմի մէջ կարդացի իր երգիծական արձակ ու ոտանաւոր գրութիւնները եւ խմբագրականները, որոնք Տիրանեան կեղծանունով երեւցած են, համարումս բոլորովին աւելցաւ իր վրայ։ Իսկ երբ աւելի մօտէն ճանչցայ զինքը ու հետը մտերմացայ, ա՛լ աւելի բարեկամական կապերով կապուեցանք միասին[2]։*

Բազմակողմանի, ընդարձակ հետաքրքրութիւններու տէր մտաւորական, հրապարակագիր, բանաստեղծ, արձակագիր, ազգային գործիչ Վահան Թէքէեան յետմահու վերստացաւ իր «գրավաթ»-ը, «արձակ խօսք»-էն վերածուեցաւ «զուտ բանաստեղծ»-ի եւ նուազեցաւ *Հոգեր*ու դրութեան։ Իր քարոզը մնաց «անապատին մէջ»։ Թէքէեան՝ որ իր կեանքի ընթացքին բացայայտած էր նշանակալի անյարմարուողականութիւն, դարձաւ յարմարուողական։

Թէքէեանական այս անյարմարուողականութիւնն է՝ զոր կը փափաքիմ ուրուագծել այստեղ, առանցք ունենալով *Արեւ* լրագիրին մէջ ստորագրած յօդուածները։ Կ'ուզեմ շեշտել՝ որ կը հիմնուիմ միայն *ստորագրուած* գրութիւններուն վրայ, դիտարկումէս դուրս ձգելով անստորագիր խմբագրականները, որոնց քանակը բաւական շատ է։

## ԱՐԵՒ ԵՒ ԹԷՔԷԵԱՆ

1915 Մայիս 11-ին Աղեքսանդրիոյ մէջ կը սկսի լոյս տեսնել *Արեւ* եռօրեան (տնօրէն-խմբագրապետ՝ Վահան Թէքէեան, արտօնատէր՝ Լեւոն Մկրտիչեան), իբրեւ անկախ լրագիր։

1921 Մայիս 4-ին *Արեւ* կը դառնայ Պաշտօնաթերթ Հայ Ռամկավար Կուսակցութեան Եգիպտոսի Շրջանակին (տնօրէն-խմբագիր՝ Միքայէլ Ս. Կիւրճեան), իսկ 1921 Հոկտեմբեր 7-ին՝ Պաշտօնաթերթ Ռամկավար Ազատական Կուսակցութեան Եգիպտոսի Շրջանակին (տնօրէն-խմբագիր՝ Միքայէլ Ս. Կիւրճեան)։

1922 Դեկտեմբեր 11-ին կը վերածուի օրաթերթի (խմբագրապետ՝ Յովհաննէս Յակոբեան)։

1924 Օգոստոս 9-ին կը փոխադրուի Գահիրէ (խմբագրապետ՝ Յովհաննէս Յակոբեան)։

Վահան Թէքէեան զանազան շրջաններու ստանձնած է *Արեւ*ի խմբագրապետութիւնը։ Ըլլալով լրագիրին հիմնադիրներէն մէկը, որոշ ընմիջումներով մինչեւ 1920 Յուլիս 2 եղած է անոր տնօրէն-խմբագրապետը[3]։

1927 Սեպտեմբեր 1 – 1928 Յունիս վերստանձնած է խմբագրապետութիւնը, ապա՝ 1928 Նոյեմբեր – 1929 Յուլիս 6-ին[4], 1931 Յունուար – Յունիսին[5], եւ 1935 Սեպտեմբերէն[6] մինչեւ իր վախճանը՝ քանի մը կարճ ընդմիջումներով։

## ՄԱՍՆԱԿՑՈՂԱԿԱՆ ՀՐԱՊԱՐԱԿԱԳՐՈՒԹԻՒՆ

*Արեւ*ի մէջ Թէքէեան հանդէս եկած է իբրեւ հրապարակագիր, բայց ոչ-սովորական իմաստով։ Հրապարակագրութեան մասին գրած է.

***Հրապարակագրի մը համար հանրային կարեւոր խնդրի մը մէջ ձեռնպահութիւնը համարժէք է իր պաշտօնէն ձեռնթափութեան, չգործածելու համար բառը որ գրչիս ծայրն է՝ անպատուութեան։ Գիտնալ թէ խնդիր մը գէշ դրուած է եւ կրնայ յանգիլ գէշ լուծումի մը, զգալ թէ պարտաւոր ես խօսիլ եւ սակայն չխօսիլ նոյն իսկ բարի դիտաւորութիւններով, այսինքն գործին շահը նկատի առնելով, այնպիսի դիրք մըն է որ ամէնուն չի յարմարիր, ան «կեղծ դիրք» մըն է եւ այդ պատճառաւ՝ աւելի կը վնասէ գործին քան օգտակար կ՚ըլլայ անոր[7]։***

«Պաշտօնի ձեռնթափութիւն» եւ «անպատուութիւն» բառեր են զորս ան գործածած է ի տես «բարի դիտաւորութիւններով» թերութիւնները ծածկող հրապարակագիր բազմութեան։ Թէքէեան, *Արեւ*ի խմբագրապետութեան զանազան

շրջաններուն փորձած է դիմադրել այս բազմութիւնը։

Միաժամանակ, Թէքէեան համոզուած է՝ որ հրապարակագիրը պէտք չէ ստանձնէ անկարելի վերարտադրողի մը դերը։ Ինչպէս կը գրէ՝

*[Գ]րողը բացակայ պիտի չըլլայ իր գրութիւններուն մէջ։ Ուրիշ խօսքով, ան պիտի չծածկէ իր նախասիրութիւնները, իր կարծիքներն ու իր դատաստանները. զանոնք կակուղցնելու համար մեղրամոմ պիտի չխառնէ անոնց մէջ. վարդի ջուր, օրհնած ջուր պիտի չսրսկէ իր չուրջը՝ ամէն օր Վարդավառ համարելով*[8]*։*

Այստեղ Թէքէեան կը խօսի ենթակայական հրապարակագրութեան մասին, երբ հրապարակագիրը՝ իբրեւ այդպիսին, կը դառնայ իրադարձութիւններուն մասնակցողը։ Ենթակայականութիւնը, արդարեւ, պիտի հասկնալ իբրեւ համակեցական փորձառութիւն, հեռու անձնապաշտութենէ, ինչպէս ինք կը բացատրէ.

*Ինչ որ չի նշանակեր, հարկաւ, թէ «ես» պիտի ըսէ ամէն առթիւ, թէ իր եսը բեմադրելն ու պանծացնելը պիտի ըլլայ իր ճիգը։ «Ես ըսած եմ, ես կ'ըսեմ»ին, «ես ըրած եմ, ես կ'ընեմ»ին «ես»ը մերթ ծիծաղելի, յաճախ ձանձրալի «ես» մըն է։ Ասոր չի նմանիր «ես կը սիրեմ»ին, «ես կ'ատեմ»ին եւ երբեմն, տարակոյսի պահերուն, «ես կը կարծեմ»ին «ես»ը»*[9]*։*

Անձը կամ եսը կենդանի բաղադրիչ մըն է հաւաքականութեան գաղափարին մէջ։ Հանրային գործիչը՝ որուն հասկնալիօրէն մաս պիտի կազմէր հրապարակագիրը, իր «ես»-ով պատասխանատուութիւն վերցուցած կ'ըլլայ հաւաքականութեան մէջ։ Վտանգաւոր է այն հանրային գործիչը որ կարծիք չունի եւ կ'ուզէ ինքզինք անընդհատ յարմարցնել հիմնահոսանքի ընկալումներուն, դառնալ անոնց կոյր կրկնօրինակողը.

*Ենթադրենք, դարձեալ, որ այլասիրութեան ուժեղ տարրով մը կազմուած է բնութիւնդ եւ ինքզինքդ անհաշիւ վատնած ես ուրիշներուն, մանաւանդ հաւաքականութեան համար։ Քու անձդ, եւ ոչ թէ քու եսդ դրած ես բոլոր ըրածիդ եւ գրածիդ մէջ։ Եթէ «ես» ըսած ես երբեմն, պատճառը այն եղած է՝ որ ուզած ես աւելի պատասխանատուութիւն վերցնել, հարուածներու դէմ կուրծքդ ամբողջովին բանալ։ Եւ ահա կը հանդիպիս մէկուն որ անձնական կարծիքներ եւ համոզումներ չունի կամ եթէ ունի՝ այնքան թոյլ են անոնք որ միշտ կը փոխուին, որովհետեւ այդ անձը ամէն բանէ առաջ իր վրայ կը խորհի միշտ, կ'ուզէ ներկայանալ հանրութեան այնպէս ինչպէս կը կարծէ թէ ան տեսնել կ'ուզէ զինք, վերջապէս հանրութիւնն ալ, հանրային գործն ալ կը տեսնէ իր եսին հետ յարաբերութեամբ, կապակցութեամբ միայն։ Արդ, ես ատելով կ'ատեմ այս հանրային գործիչը*[10]*։*

Հրապարակագրութիւնը առաքելութիւն մըն է եւ ոչ թէ պաշտօն։ Պաշտօնը՝ վերարտադրութիւն է առանց սեփական համոզումի, առաքելութիւնը՝

մասնակցութիւն է եւ համոզուածութիւն.

*Հրապարակագիրը ա՛յն է բոլոր ազատ-ասպարիզականներուն մէջ՝ որ ամենէն աւելի յաճախակի եւ ուղղակի հանրութեան համար կը գործէ, ատոր համար պաշտօնի կոչուած է եւ կամ պաշտօնի կոչած է ինքզինքը երբ ինք տէրն է իր թերթին, եւ որ, եթէ առաքելութիւն մը նկատելով չկատարէ իր պաշտօնը՝ միշտ անօգուտ եւ յաճախ վնասակար կ'ըլլայ հանրութեան*[11]։

Հրապակագրութեան ասպարէզը անձնական ընտրութիւն մըն է՝ արդիւնքը ներքին անդիմադրելի կրակի մը։ Անիկա կը դիմադրէ սովորամոլութիւնը եւ կը պայքարի զիջողականութեան դէմ.

*Հրապարակագրութիւնն ալ կա՛մ առաքելութիւն մը ըլլալու էր եւ կամ բնաւ ըլլալու չէր։ Եկեղեցականութեան նման։ Ոչինչ ձեզ կ'ստիպէ, ոչ ոք ձենէ կ'սպասէ՝ որ ձեր ժամանակակիցներուն միտքը – կամ հոգին – վարելու ձեռնարկէք, անոնց խմբական եւ երբեմն ալ անձնական կեանքին խնդիրները քննէք եւ ըսէք թէ սա կամ նա ձեւով պէտք է լուծուին։ Ոչի՛նչ, ո՛չ ոք, բացի կրակէ մը որ կը բորբոքի ձեր մէջ, այլասիրութեա՛ն կրակէն՝ այնչափ ուժեղ որ անհանգիստ կ'ընէ թէ՛ ձեզ եւ թէ ուրիշները, որ ձեզ կռիւի կը մղէ ընդդէմ անոնց որ ինկած տեղին վրայ զայն մարել, անոր արշաւը կասեցնել կ'ուզեն եւ ձեզ զգուշութեան ու խոհեմութեան կը հրաւիրեն*[12]։

Հայերը ունեցած են սկզբունքներ հետապնդող հրապարակագիրներ՝ Նազարեանց, Նալպանդեան, Պատկանեան, Արծրունի, Ստ. Ոսկան, Զօրայեան, Մամուրեան, Իւթիւճեան, Արփիարեան, որոնք, ինչպես իրական հրապարակագրութիւնը կը թելադրէ, առաջ անցած են ընդունուած կարգուկանոնէն, դառնալով առաքեալներ։ Հրապարակագիրը առաքեալ մըն է.

*Խօսքը մասնաւորենք հրապարակագրութեան վրայ, որ ինչպէս բոլոր վերածնող, բոլոր տագնապահար եւ առ հասարակ բոլոր այն ժողովուրդներուն մէջ որոնք նոր գաղափարներով կը խմորուին՝ մեր մէջ ալ կատարած է եւ դեռ ունի կատարելիք հսկայական դեր մը։*

*Հրապարակագրութիւնը իբրեւ առաքելութիւն ընդունելով եւ գործադրելով է՝ որ արեւելահայոց մէջ Նազարեանց, Նալպանդեան, Պատկանեան, Արծրունի եւ արեւմտահայոց մէջ Ստ. Ոսկան, Զօրայեան, Մամուրեան, Իւթիւճեան ու մանաւանդ Արփիարեան, պեղած են խորունկ ակօս մը մեր կեանքին կոշտացած հողին մէջ՝ ուրկէ ծլած ամէն ինչն է, լաւն ու գէշը հաւասարապէս, որ մեզ կ'ապրեցնէ այսօր։*

*Ըսե՞նք թէ հրապակագրութիւնը, այսպէս ըմբռնուած, կաշկանդում չընդունիր, ի բաց առեալ ա՛յն զոր իր սկզբունքները նախ եւ հանրային շահը յետոյ, կը հարկադրեն հրապարակագրին։*

*Իր սկզբունքներուն հարկադրած «կաշկանդո՛ւմն» է միայն՝ որ հրապարակագիրը կը*

*ղնէ նոյն սկզբունքներն ընդունած ուրիշ մարդոց հետ հաւասար գծի վրայ տեսականօրէն՝ որովհետեւ գործնականին մէջ հրապարակագիրը յաճախ կը տարբերի կամ կը զատուի անոնցմէ, առաջ կ՚անցնի որովհետեւ այդպէս կը պահանջէ թէ՛ օրը օրին ապրուող կեանքը որ կը քալէ եւ հետեւաբար քալել կը ստիպէ, եւ թէ իր՝ հրապարակագրին ներքին կրակը: Երբ գործնականը շատ հեռացած է տեսականէն, կամ, ինչ որ նոյնն է, հրապարակագիրը շատ առաջ անցած է իր գաղափարակիցներէն՝ որոնք չեն ուզած կամ կրցած իրեն հետեւիլ, անոնք կը զատուին իրարմէ. հրապարակագիրը՝ ի՛նչ տարիքի ալ պատկանի եւ ինչ անցեալ ալ ունեցած ըլլայ, կը դառնայ անկախ կամ իրեն հետեւողներով կը կազմէ նոր գաղափարակցութիւն մը, ու իր նախկին գաղափարակիցները կը մնան հոն ուր էին՝ իրենց յարմար նոր առաջնորդով մը, որուն համար աւելի ճիշդ պիտի ըլլար հետեւորդ ըսել:*

*Ինչպէս օտարներու՝ մեր մէջ ալ եղած են հրապարակագիրներ որոնք մինչեւ տեղ մը եւ ժամանակ մը իրենց խումբին հետ քալած են ու այնուհետեւ քաշուած, երբեմն իրաւացիօրէն եւ երբեմն ոչ:*

*Այսօր բաւական ժամանակէ ի վեր հայ հրապարակագիրները – որոնց մէջ քիչերն են այս անունին արժանի – կը մնան իրենց նոյն դիրքին վրայ եւ նոյն շրջապատին մէջ. չեն նախատեսուիր ո՛չ Վարդօյի եւ ոչ ալ Արփիարի եղերական վախճաններուն յանգող կամ աւելի խաղաղ կերպով ընդունուած՝ Շահան Նաթալիի կամ Պարթեւեանի խզումները իրենց երէկի գաղափարակիցներէն, փոխադարձաբար աւելի կամ նուազ արդարանալի, աւելի կամ նուազ «գաղափարական» պատճառներով տեղի ունեցած:*

*Բայց հրապարակագիրը՝ երէկուան, այսօրուան եւ վաղուան. ռամկավարական կարգերով կառավարուած երկրի կամ ազգի մը հրապարակագի՛րը մանաւանդ (որովհետեւ ամբողջատիրական կարգերու մէջ նոյնը չէ պարագան). հայ հրապարակագիրը որ այսօր որոշ ազատութիւն մը կը վայելէ արտասահմանի մէջ՝ իբրեւ միակ առաւելութիւնը ընդդէմ բազմաթիւ խեղճութիւններու, այդ «հետաքրքրական կենդանին» ... կա՛մ պէտք է սպաննել իբրեւ անպէտ այսուհետեւ, կամ պէտք է թողուլ որ իր առաքելութիւնը կատարէ եւ ատոր ընթացքին մեռնի գոհ սրտով:*

*Հրապարակագրութեան այս ըմբռնումն է, նաեւ, որ մեզի կընայ նոր առաքեալի ոգիով դէմքեր հանել*[13]:

Լուրերու ժամանակակից յորձանքին մէջ, ընթերցողն ալ պէտք է ունենայ իր մասնակցութիւնը՝ զատորոշելու համար ճիշդ լուրը կեղծէն: Ան պէտք է մտածէ՝ թէ լուրը հրապարակողը ի՞նչ շահ կրնայ ունենալ անկէ, պէտք չէ անպատճառ ստոյգ համարէ այն լուրը՝ որ կը յարմարի իր ցանկութիւններուն: Ընթերցողը քննական դատողութեամբ պէտք է մօտենայ լուրին.

*Այս առթիւ կ՚ուզենք երկու թելադրութիւն ընել ոչ թէ միայն մեր ընթերցողներուն այլ առ հասարակ թերթ կարդացող հայերու մեծամասնութեան.*

*Առաջին. քաղաքական լուրերը, մանաւանդ անո՛նք որ կարեւոր կ՚երեւին, կարդալ քննադատական որոշ ոգիով մը, մտածելով թէ արդեօք կրնա՞յ ճիշդ ըլլալ եւ թէ ո՛վ ի՛նչ շահ ունի*

*որ ան ճիշդ... չըլլայ:*

*Երկրորդ. անպատճառ ստոյգ, հարիւրին հարիւր ստոյգ չհամարել ա՛յն քաղաքական լուրերը մասնաւորապէս՝ որոնք մեզի հաճելի են. ստոյգ չհամարելէ զատ՝ զանոնք չզարդարել կամ չճոխացնել մեր փափաքներովը, ինչպէս կ՚ընեն ոմանք եւ ըստ այնմ կը կրկնեն իրենց հանդիպածին, աւելի գեղեցկացուցած ու կատարելագործած, լսողին աւելի հաճելի եւ շահեկան ընծայած զանոնք*[14]*:*

Քննականութեամբ եւ քննադատութեամբ, ընթերցողը եւս մասնակցած կ՚ըլլայ լուրի եւ հրապարակագրութեան կերտումին եւ տարածումին:

# ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ

## 1. ԳՐԱԿԱՆՈՒԹԵԱՆ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ

1926 Ապրիլ 22-ին, Ժողովրդային Սրահին մէջ Թէքէեան կու տայ դասախօսութիւն մը՝ *Գրականութեան դերը հայութեան ճակատագրին վրայ*: Անոր սղագրութիւնը կարեւոր միտքեր կը բացայայտէ:

Տարածուած են կարծրատիպեր, ըստ որոնց գրականութիւնը նպաստած է հայ մշակոյթի զարգացումին, բարձրացուցած է հայոց մտաւոր մակարդակը, եւ այլն: Թէքէեան անպայմանօրէն հակառակը չէ որ կ՚ուզէ ներկայացնել, այլ կը մտցնէ կարեւոր շերտաւորում մը գրականութեան նպատակային ուղղուածութեան մէջ:

Համաձայն Թէքէեանին, Ե. դարուն հայ գրականութիւնը խաղացած է ուղղակի յեղաշրջող դեր: Գրականութեան շնորհիւ վերածաղկեցան երեք մարդկային ընդհանուր յատկանիշներ՝ հաւատք, աշխատանք եւ ստեղծագործում: Կը նշանակէ՝ գրականութիւնը կեանքի գլխաւոր բաղկացուցիչն է: Սղագիրը կը համառօտագրէ Թէքէեանին կարծիքը.

*Արդարեւ սկիզբը երբ Հայ ժողովուրդը խզուած էր իր անցեալէն, իր աւանդութիւններէն, երբ ամուլ շրջան մը կ՚անցընէր, Հայ գրականութիւնն էր որ յեղաշրջում մը ստեղծեց ու մտրակողի, խթանողի ազդեցութեամբ ազգը առաջնորդեց վերածաղկումի, վերապրեցնելով մեր նախահայրերուն հաւատքի, աշխատանքի, ստեղծագործումի կարողութիւնները: Հայրենավառ ու ազատաշունչ ներշնչումով ան փոթորկեց ժողովուրդը, ոտքի հանեց զայն, բայց – եւ հոդ է որ թերացաւ ան – փոթորկին յաջորդող պայծառ օդը չի կրցաւ պարգեւել հայութեան*[15]*:*

Սղագրութեան մէջ Թէքէեան կ՚առաջարկէ հարցումներու շարք մը.

*Մեր ազգն ալ եթէ Խորենացի մը, Եղիշէ մը չունենար պիտի կրնա՞ր այս դարերու ճնշումէն, մահացումէն յետոյ ի յայտ բերել այն ճիգը զոր ըրաւ իր գոյութիւնը ամրապնդելու համար եւ որ թէեւ անյաջող բայց վերջացած ճիգ մը չէ: Անոր արծարծած կրակն է որ տեսնուեցաւ Մխիթարեաններու եւ բոլոր Հայ գրողներու գործերուն մէջ եւ մղեց Հայ ժողովուրդը գործի ճամբուն վրայ խլելու այն ինչ որ իր իրաւունքը կը ճանչնար, ազատութիւնը:*

*Խնդիր է սակայն թէ այդ ներշնչման ցարդ ներգործումը մեր ճակատագրին վրայ եղա՞ւ այն ինչ որ պէտք էր ըլլար: Մեր գրականութիւնը իր բնական ճամբէն քալե՞ց: Արդեօք լաւագոյն դեր մը չէ՞ր կրնար ունենալ եթէ առաջ տարուած ըլլար ոգիի աւելի ճշդութեամբ: Անշուշտ այդ ոգին սկիզբը ճիշդ ոգի մ՚էր, ազգը ազատութեան, բարձրութեան տանող ոգի մը. չարունակե՞ց ըլլալ նոյնը յետագային*[16]*:*

Թէեւ հարցումներուն պատասխանները ուղղակիօրէն չեն տրուած, բայց յստակ է՝ որ անոնք բացասական են:

Դարձեալ սղագիրին համաձայն՝

*Մեր գրականութիւնը, իր զուտ ազգասիրական ուղղութեամբ, ունեցաւ շատ մը խոչընդոտներ ուր գնաց սահիլ իր ուժերուն մէկ մեծ մասը առանց բեղմնաւորելու Հայութեան դաշտը: Ան չջամբեց մարդկային այն լայն, խորունկ ու բազմակողմանի հայեացքները որ գրականութեանն են ու այնքան կ՚ազդեն ազգերու մտայնութեան վրայ: Ան անտեսեց թատերական, պատմական, իմաստասիրական եւ այլ կարեւոր բայց աշխատանքի կարօտ սեռերը*[17]*:*

Ուրեմն, նախադրեալները՝ նոյնիսկ յեղափոխական եւ փոթորկալից, գոյութիւն ունեցած են Ե. դարուն, բայց յետագային (սղագրութեան մէջ այնքան ալ յստակ չէ յետագայի ժամանակաշրջանը, բայց ան առ նուազն կը բովանդակէ նոր գրականութիւնը ԺԹ. դարէն սկսեալ մինչեւ Թէքէեանի ժամանակները, եթէ ոչ յետոսկեդարեան ամբողջ գրականութիւնը) գրականութիւնը չէ ծառայած իր կոչումին: Թէեւ առանց Խորենացիի եւ Եղիշէի ազգը անկարող պիտի ըլլար ի յայտ բերել իր գոյաբանական ճիգը, սակայն մեր գրականութիւնը յետագային չէ կրցած պահպանել ոգիի ճշդութիւնը:

Հայ գրականութիւնը «ներշնչեց» բայց «չներգործեց», կ՚ըսէ Թէքէեան: Ան ներշնչեց՝ ոգեւորեց ժամանակաւորապէս, յառաջացուց յոյզեր, բայց չներգործեց՝ չդարձաւ առօրեայ գործողութեան իմաստն ու արժէքը: Խորենացիէն եւ Եղիշէէն ետք գրականութիւնը «փոթորկին յաջորդող պայծառ օդը չի կրցաւ պարգեւել հայութեան», չբեղմնաւորեց հայութեան դաշտը, չջամբեց մարդկային լայն, խորունկ ու բազմակողմանի հայեացքները եւ ազգը չտոգորեց ազատութեան եւ բարձրութեան ոգիով:

Թէքէեան թերացումին ծանրութիւնը կը դնէ գրականութեան վրայ: Մինչդեռ վերնախաւային պատումը ճիշդ հակառակը պիտի ըսէր: Ան անընդհատ պիտի

պնդէր, որ հակառակ գրագէտներու անդուլ ջանքերուն, ժողովուրդը անփոյթ ու անտարբեր մնաց գրականութեան նկատմամբ։ Թէքէեանի համար, ընդհակառակը, թերացումը կու գայ վերէն՝ գրականութիւնը կերտողներէն, որոնք չեն կրցած շարժել ժողովուրդը։

Թէքէեան գրականութեան դերը կը փոխէ իբրեւ հասարակութիւնը *արտացոլող* միջոցէ դէպի հասարակութեան *մաս կազմող* գործօն։

Անկախ այն հանգամանքէն թէ հայ գրականութիւնը երբ եւ ինչ աստիճանով յաջողած է փոխել հասարակութիւնը, այս բանախօսութեամբ Թէքէեան առաջ բերած կ’ըլլայ էական հարց մը. կրնա՞յ գրականութիւնը փոխել հասարակութիւնը։ Ըստ իրեն՝ կրնայ։ Բայց փոխելու համար գրականութիւնը նախ եւ առաջ պէտք է փոխէ մարդու մտածելակերպը։ Մայքըլ Մաք 2012-ին կը մեկնաբանէ՝ թէ ինչպէ՞ս արուեստն ու գրականութիւնը կրնան փոխել մարդու մտածելակերպը։

> *Արուեստները չեն հանդիսանար մեր աշխարհի պարզ նկարագրութիւնը միայն, եւ ոչ ալ անպայմանօրէն կը սահմանեն՝ թէ ինչպէս պէտք է ինքզինքնիս առաջնորդենք որպէսզի յարմարաւէտ ընթանանք հաստատուած պատկերումներուն եւ գաղափարներուն հետ։ Փոխարէնը, արուեստները եւ հասարակական գիտութիւնները եզակի եւ թերագնահատուած կարողութիւն ունին մեզի գիտակից դարձնելու՝ թէ ինչպէս կրնանք փոխել ընկալումի եւ գործողութեան սովորական դարձած ձեւերը։*
>
> ...
>
> *Գրականութիւնը ոչ միայն մեզի կը ներկայացնէ մեր աշխարհը այլ մեզի ցոյց կու տայ ճանապարհներ, որոնց միջոցով կրնանք փոխել աշխարհը կամ յարմարուիլ այն փոփոխութիւններուն՝ որոնք արդէն տեղի ունեցած են առանց մեր գիտակցութեան։ Գրականութեան իմացական տարողութիւնները կ’օգնեն մեզի յաղթահարելու ներկայ եւ ապագայ մարտահրաւէրները՝ փոխելով մեր մտածելակերպը ինքզինքնուս, մեր հասարակութեան եւ մեր հասարակութենէն բացառուածներուն եւ մեկուսացուածներուն մասին*[18]*։*

Խնդիրը այն է, որ գրականութիւնը, արուեստը, հասարակական գիտութիւնները, այլեւ արդի մտաւոր արդիւնաբերութեան ծանրակշիռ մասը՝ ներառեալ ամբողջ զանգուածային կրթութեան համակարգը, ուղղուած են առանց առարկութեան վերարտադրելու հաստատուած պատկերումներն ու գաղափարները։ Այս հիմքով է որ հայ գրականութիւնը կ’ուսուցանեն դպրոցներուն մէջ. անիկա գեղեցիկ է, հրաշալի է, հանճարեղ է. ազգային պարտք մըն է գիտնալ մեր մեծ գրողներուն մասին։ Եւ քանի որ հայկական գրականութիւնը այս բոլորն է, ուրեմն անիկա հակուած է վերածուելու թանգարանային բիւրեղեայ անշարժութեան։

Աշակերտին արգիլուած է երկխօսութեան մէջ մտնել գրական գործին հետ, ինքզինքը տեսնել այդ ստեղծագործութեան մէջ։ Աշակերտը անպայմանօրէն տարածութիւն մը պէտք է պահպանէ իր եւ գրականութեան միջեւ, վերջինս ընկալուելով իր զգայարաններէն անդին գտնուող պատկերումներու աշխարհի

մը մէջ։ Ուստի, կորսուած կ՚ըլլայ գրականութեան յեղափոխական կարելիութիւնը։

## 2. ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ԻԲՐԵՒ ՀԱՅԱԿԵՐՏՈՒՄ

Թէքէեան բազմիցս արտայայտուած է գրականութեան դերին մասին իբրեւ ազգ պահպանելու եւ կերտելու առաջնային միջոց.

*Ի՞նչ ընել՝ հասկցնելու համար հայ հարուստին – բարեգործի՛ն եւ անո՛ր որ դեռ կը փնտռէ բարիք գործելու ամէնէն օգտակար ու ապահով ձեւը – ի՞նչ ընել, հասկցնելու համար թէ գրականութիւնը, ազգ պահպանելու եւ շինելու տեսակէտէն, այսօր առաջին գծին վրայ կուգայ ու պէտք է օգնել անո՛ր ալ, անո՛ր մանաւանդ որ անտեսուած է, որուն ոչ ոք կ՚օգնէ*[19]:

Ուրիշ հարց, թէ այս գրութեամբ Թէքէեան առանձնաշնորհեալ դիրք մը տուած կ՚ըլլայ հարուստին եւ հաստատած կ՚ըլլայ անոր կարեւորութիւնը եւ նոյնիսկ անխուսափելիութիւնը գրականութեան տարածումին համար։

Դպրոցը աւարտելէ ետք, պատանին կամ երիտասարդը այլեւս կը դադրի անմիջական շփում ունենալէ հայկականութեան հետ։ Գրականութիւնն է որ կրնայ այդ շփումը ապահովել.

*Այդ օրէն կ՚սկսի աստիճանաբար փսորիլ իր դեռ արդէն խախուտ շէնքը ազգային գիտութեան եւ զգացումի, որ ճիշդ այնուհետեւ պիտի ամրանար եւ բարձրանար՝ տղուն հետաքրքրութեանն ու եռանդին գտնելիք, իր միջավայրէն եւ իր ժամանակէն գտնելիք, ազգային նոր տարրերով, զինք ոգեւորող եւ հմայող, սնուցանող եւ կշտացնող նիւթերով։*

*Գրականութիւնը, միա՛յն գրականութիւնն է, որ այդ դերը կը կատարէ, այդ պահանջը կը գոհացնէ՝ մանաւանդ հայ տղոց համար։*

*Ուրիշ ազգերու մէջ, որոնք կ՚ապրին իրենց հայրենի հողին վրայ ու պետութիւն են, կա՛ն եւ ուրիշ միջոցներ տղան իր ազգին կապող, անոր սիրովը, շահովն ու հպարտութեամբը գայն շաղուող։ Պետական պաշտպանութիւնն ու պետական պաշտօնները, օրինակի համար, գրական եւ գեղարուեստական բազմաթիւ ճոխ միջոցներուն հետ*[20]:

Դժբախտաբար, Սփիւռքը չի մտածեր գրականութեան ազգապահպան դերին մասին.

*Հայ գիրը հոս կը նշանակէ հայ գրականութիւն։ Անոր համար է այս կամաւոր չփոթութիւնը՝ որ եթէ հայերէն տառն ու բառը անհրաժեշտ են հայ գրականութիւն մը ունենալու համար, հայ գրականութիւնն ալ անհրաժեշտ է հայ տառն ու հայ բառը պահելու համար – Հայաստանէն դուրս մանաւանդ, ուր անոնք կրնան կորսուիլ հարիւր հազարաւոր Հայերու լեզուին վրայ եւ պատճառ ըլլալ անոնց Հայութեան համար կորուստին։*

*Բայց մենք, Սփիւռքի մէջ, մինչեւ հիմա շատ չենք մտածած գրականութեան*

*ազգապահպանման դերին։ Ասկէ վերջը մտածենք թերեւս, հաւաքական եւ ի հարկին պաշտօնական ալ եղանակով մը, ինչպէս եկեղեցիի եւ դպրոցի համար կը մտածենք։ Այսինքն՝ չմտածե՞ն միա՛յն գրողները, որոնք գրականութիւնը ստեղծողներն են թէեւ բայց հրատարակողները չեն միեւնոյն ատեն, ոչ ալ զայն նիւթապէս վարձատրողները...*[21]։

## 3. ԲԱՆԱՍՏԵՂԾՈՒԹԻՒՆ

1926 Դեկտեմբեր 30-ին, Պէրպէրեան Վարժարանին մէջ Թէքէեան կը բանախօսէ նիւթ ունենալով՝ *Բանաստեղծութիւնը եւ կեանքը*[22]։

Համաձայն քննախօսական յօդուածին, բանաստեղծութեամբ կեանքը փոխելու հարցը չէ բարձրացուցած Թէքէեան, բայց բանաստեղծութիւնն ու կեանքը համարելով փոխլրացուցիչ ազդակներ, այլեւ միեւնոյն ազդակի երկու երեսակները, բանաստեղծութեան ակամայաբար կու տայ փոխելու կարելիութիւն.

*Իսկ բանաստեղծը ի՞նչ կապ ունի կեանքին հետ։ Ան, ըստ Պ. Թէքէեան, իր ստեղծման պահերուն, տարօրինակ սուզումներ կ՚ընէ իրականութեան խորը, ուր իր հանդիպումէն բնազանցական բանաստեղծութեան հետ, իր սրտին մէջ կ՚զգայ ծնունդը բանաստեղծական այն մեկին զգացման զոր պիտի երգէ յետոյ մեծութեամբ իր տողերուն մէջ։ Ու մարդերը որ կ՚ունկնդրեն իրեն կը ճանչնան թէ ան, բանաստեղծը, բանբերն է իրենց սկզբունքին, եւ ահա ինչու լուսեղէն բանաստեղծութենէն է որ կրնան ստանալ սնունդը իրենց համեստ կեանքին*[23]։

Բանաստեղծութիւնը կը բաժնէ երկու երեսներու։ Առաջինը անոր շօշափելի մասն է՝ բառ, պատկեր, յանգ, չափ եւ կշռոյթ.

*Պ. Թէքէեան սահմանեց նախ Բանաստեղծութիւնը իբր զգացում մը մեկին զոր բանաստեղծը կ՚ունենայ եւ զոր բառերու, պատկերներու, յանգերու, չափի եւ կշռոյթի միջոցաւ – որոնք կը կազմեն Բանաստեղծութեան շօշափելի ձեւը – կը հաղորդէ մեզի, զմեզ ալ լեցնելու համար այս զգացումով, բանաստեղծականով, եթէ սակայն ընտրեալներ ենք՝ կարող՝ ընդունելու այցելութիւնը այդպիսի յուզման։ Բանաստեղծութեան այս սահմանը, ըստ Պ. Թէքէեան, կը համապատասխանէ բանաստեղծական իրականութեան մէկ երեսին միայն*[24]։

Բանաստեղծութեան միւս երեսը անոր առարկայական իրականութիւնը ըլլալու հանգամանքն է։ Բանաստեղծութիւնը կը գտնուի ամէն տեղ, ամէն բանի մէջ, ամէն մարդու մէջ, անկէ կը բխի ու կը ծագի կեանքը իր ողջ բարդութեամբ ու բազմազանութեամբ.

*Սակայն Բանաստեղծութիւնը ունի նաեւ եւ մանաւանդ ուրիշ երես մը. Բանաստեղծութիւն կը կոչուի նաեւ, այս անգամ առարկայական, ուրիշ իրականութիւն մը. բանաստեղծութիւնը է, այս իմաստով, այն էութիւնը ուրկէ կը ժայթքին տեսողութեան եւ տարածութեան մէջ բոլոր իրերը։ Այս բանաստեղծութիւնը այն սկզբունքն է, աշխարհի անդունդին խորը*

*հաստատուած, որ կարելի կ՚ըլլայ աշխարհի կարգը, որ Օրէնքն է իրերուն մէջ, անոնց ներդաշնակութեան Ծայրագոյն Գաղտնիքը, եւ կեանքին, տարրերու կարգաւորութեան գերազանց այդ ձեւին բնութիւնը իսկ: Բանաստեղծութիւնը այս իմաստով ամէն բանի մէջ է. էն խոնարհ գոյութենէն մինչեւ էն հարուստը կը պարունակէ զայն. Բանաստեղծութիւն ունին ծովը, լեռը, անապատը, լոյսը, ծառը, որդը, մարդը: Ուրեմն Բանաստեղծութիւնը մասնաւորաբար կեանքին գոյութիւնը իսկ պայմանաւորող բնազանցական ոյժն է, որ կեանքին թանձրացեալ հրաշալիօրէն բազմազան ձեւերուն մէջ իր առօրեայ մարմնաւորումին կը յանգի: Այս տեսակէտովն է որ Բանաստեղծութիւն եւ Կեանք պատճառի եւ հետեւանքի յարաբերութիւն մը կը ներկայացնեն. Բանաստեղծութիւնը կ՚ըլլայ այսպէս կեանքի պահերուն առաջին ներդաշնակիչը*[25]:

Այս իմաստով արդէն բանաստեղծութիւնը դուրս կը հանէ իր եզրոյթային սահմաններէն եւ բանաստեղծութիւն-բանաստեղծականութիւնը կը տարածէ կեանքի ոլորտներուն եւ մարդոց վրայ՝ դարձնելով անոնց սկզբնաղբիւրն ու բաղադրիչը: Եւ այս բնաբանով է որ բանաստեղծութիւնը կը դառնայ առարկայական իրականութիւն:

Թէքէեանի համար երբեմն աւելի դիւրին կ՚ըլլայ անձնական գաղափարները արտայայտել ուրիշներու բերանով, մանաւանդ երբ այդ ուրիշին համար պատրաստուած է խօսքի յատուկ հարթակներ:

Փարիզի *Իկտրազիլ* բանաստեղծական պարբերաթերթը ճաշասեղանի մը շուրջ կը համախմբէ իր աշխատակիցները, որոնք կը յղեն իրենց ուղերձները: Դէպքը՝ իբրեւ այդպիսին, չյայտարարուած նշանակութիւն մը ունեցած պէտք է ըլլայ Թէքէեանին համար. հայկական մամուլ մը կամ միութիւն մը երբեւէ հրաւիրա՞ծ է իր անդամները՝ հնչեցնելու համար մշակոյթի մասին խորապէս մտածուած ուղերձներ:

Համաձայն Թէքէեանի թարգմանութեան, Ֆրանսական Ակադեմիայի անդամ Էտմոն Ժալուի ուղերձը կ՚անդրադառնայ բանաստեղծութեան մոգական փորձարկութեան՝ որուն շնորհիւ բանաստեղծութիւնը ունակ է այլակերպելու աշխարհը եւ էափոխելու ու ձեւափոխելու մարդիկը.

*Ամէնքս գիտենք որ բանաստեղծութեան մէջ նախ արհեստ մը կայ, ամենաբարակ, ամենահմուտ եւ ամենէն նրբախոյզ արհեստը բոլոր արհեստներուն. գիտենք յետոյ, թէ կայ տեսակ մը մոգական փորձարկութիւն, որուն ձգտումն է աշխարհը այլակերպել բառերու եւ երգերու միջոցաւ եւ մեզ ապրեցնել էափոխութեանց ու ձեւափոխութեանց մշտական հրաշքին մէջ. գիտենք նաեւ թէ հարցը կը կայանայ խանդաբորբ ու գրեթէ անմարմին հաղորդակցութեան մէջ ամէն ինչի հետ որ կայ, բնութեան, իրերու եւ մարդոց հետ. թանձրացեալին եւ անհունին, բազմապատիկին եւ միաւորին հետ. գիտենք վերջապէս թէ հարազատ բանաստեղծը բոլորովին ինքնայատուկ հոգեբանական կեանք մը ունի եւ թէ իր ներքին օրագրութիւնը ուրիշ ոչ մէկ օրագրութեան կը նմանի՝ որովհետեւ իր կեանքին պատահարները*

*յուզումներ են, քնարական յայտնութիւններ, ոգեկան հանդիպումներ, պատկերներու զուգորդութիւններ, շփումներ տիեզերքի հետ, անձկութեան, երջանկութեան կամ նախազգացութեան վիճակներ՝ որոնք թերեւս անծանօթ չեն ամենօրեայ մարդուն բայց բանաստեղծն է միայն որ զանոնք կը զգայ նմանօրինակ հոծութեամբ մը, պէտի ըսէի գրեթէ՝ ողբերգութեան հոծութիւնը*[26]:

Մանաւանդ այն գաղափարը՝ թէ բանաստեղծութիւնը նաեւ կրաւորական է, այն իմաստով՝ որ շատեր բանաստեղծ կրնան ըլլալ առանց գրելու, պայմանով որ անոնց կեանքը ըլլայ խորհուրդներով, խորհրդանշանով եւ յափշտակութեամբ յագեցած: Կրնանք հասկնալ նաեւ հակառակը, թէ գրող-բանաստեղծ մը բանաստեղծ չի կրնար համարուիլ, եթէ ան դատարկ է խորհուրդներէ, խորհրդանշանէ եւ յափշտակութենէ: Իսկ այս երեք բանաստեղծական յատկանիշները կը քանդեն նուիրապետութիւնը, յանուն համակեցութեան.

*Բանաստեղծական կեանքը սա ալ ունի հրաշալի՝ որ անոր կարելի է մասնակցիլ կրաւորական եղանակով եւ առանց ստեղծագործ ոգիի: Սեղանաւոր չէք ըլլար եթէ դրամ չձեռնէք. որմնադիր չէք եթէ պատ մը կանգնելու համար քարեր չշարէք. բայց բանաստեղծ էք առանց գրելու. բանաստեղծ էք կարդալով, հայեցողութեամբ, հանապազօրեայ կեանքով, եթէ ձեր ընտրած հանապազօրեայ կեանքը լի է խորհուրդներով, խորհրդանշանով եւ յափշտակութիւնով: Ահա թէ ինչու բանաստեղծութիւնը այն միակ ընկերութիւնն է ուր պէտք չկայ նուիրապետութեան, է միակ ճշմարիտ եղբայրակցութիւնը*[27]:

*Իկտրազիլ*ի ճաշկերոյթին նախագահն էր Արտաքին Գործոց նախարար Իվօն Տէլպօս: Թէքէեանի համար այս հանգամանքը շատ կարեւոր ըլլալու է, քանի որ նախագահը իր խօսքին մէջ կը շեշտէ բանաստեղծներուն կարեւորութիւնը՝ մօտեցնելու համար ժողովուրդներու մտածողութիւնը.

*Իր պատասխանին մէջ, որ իր պարզութեամբն ու սրտաբուխ չեշտովը հրապուրած է ներկաները, նախարարը յայտնած է որ իր «գործ»ն է ստեղծել ժողովուրդներու մտածմանց մէջ մերձեցում մը՝ որուն համար ընտրանիները, եւ անոնց թարգման բանաստեղծները, լաւագոյն օժանդակներն են, անոնք են որ մարդկային հաւաքականութիւնները կը հրաւիրեն իրարու հետ հաղորդակցիլ գագաթներու վրայ, ամբոխները կ'ազատագրեն իրենց կրայոյզ շարժումներէն եւ անոնց կը սորվեցնեն իրարու հանդիպիլ այն խոչընդոտներէն վեր որոնք ըստ երեւոյթին անանցանելի են*[28]:

Թէքէեան մեկնաբանութիւններ չ'աւելցներ: Իրեն համար հարազատ են այս գաղափարները. այնտեղ կը տեսնէ ինքզինքը իբրեւ բանաստեղծ: Խօսքեր՝ զորս կ'ուզէր ինք արտասանած ըլլալ: Անոնցմով կ'ուզէ յիշեցնել բանաստեղծութեան մը լինելութեան եւ կարողութեան արժէքները, եւ, քանի որ այդ արժէքները

արտայայտել կարողացողը ֆրանսացին է եւ ոչ հայը, անուղղակիօրէն մատնանշած կ՚ըլլայ անոնց բացակայութիւնը հայ բանաստեղծութեան ընկալումներուն եւ գործադրութիւններուն մէջ, ներառեալ՝ վերաբերմունքը իր սեփական բանաստեղծութիւններուն նկատմամբ։ Պէտք է յիշեցնել, որ Թէքէեան իբրեւ բանաստեղծ ծանօթ էր լոկ նեղ շրջանակներու մէջ, իսկ իր բանաստեղծութիւններուն տրուած ներունակութիւնները չէին մեկնաբանուած կամ շարժումի մէջ դրուած։

Այս բոլորին հետ կապուած, բանաստեղծութիւնը՝ իբրեւ գրական սեռ, Թէքէեանի համար ունեցած է որոշ յատկանիշներ։ Այս յատկանիշներուն մասին ան ուղղակիօրէն չէ արտայայտուած, այլ արձանագրած է գրախօսականներու միջոցով։ Հիմնուելով 1938-ի գրախօսականներէն մէկուն վրայ, կարելի է յիշատակել քանի մը թէքէեանական մտորումներ.

1. Բանաստեղծութիւնը պէտք է ըլլայ արուեստ։ Բանաստեղծութիւն մը կրնայ ըլլալ ճշմարիտ, բայց առանց արուեստի կը մնայ անարժէք.

*Պ. Վէմեան քանի մը տարի առաջ հրատարակած էր Մենիկ ծառը, միակ երկարաշունչ քերթուած մը, որուն մէջ ճշմարիտ բանաստեղծութիւն կար՝ շատ քիչ արուեստի հետ։ Երիցուկի թերթերը կազմուած են բազմաթիւ անջատ կտորներէ, որոնցմէ ոմանք միայն, թէ՛ բանաստեղծութիւն ունին իրենց մէջ եւ թէ արուեստ*[29]*։*

2. Ձեւի եւ բովանդակութեան, մտածումի, նիւթի եւ ներշնչումի ներդաշնակութիւն.

*Կը թուի թէ ձեւը զինք* [իմա՝ Պ. Խ. Պ. Վէմեանին, Հ.Ա.] *երբեք չի հետաքրքրեր. դիպուած է՝ եթէ ներշնչումը կամ մտածումը ներդաշնակ տարազով մը կը ներկայանան. ինք չէ փնտռած այդ տարազը՝ ո՛րչափ արհամարհուած է ան ուրիշ շատ տեղեր։ Եւ սակայն, առանց ձեւի բանաստեղծութի՞ւն... ։*

...

*Մ. Իշխան տարի մը առաջ հրատարակեց Տուներու երգը, հաւաքածոյ մը նիւթի եւ ներշնչումի միութեամբ յօրինուած քերթուածներու, ինչ որ հազուադէպ կամ նոյն իսկ բացառիկ երեւոյթ մըն է մեր բանաստեղծութեան մէջ*[30]*։*

3. Պատկերներու եւ գաղափարներու յստակութիւն.

*Դժբախտաբար, սակայն, քերթուածը* [իմա՝ Պ. Խ. Պ. Վէմեանի *Երիցուկի թերթերը*, Հ.Ա.] *արձակունակ ընթացք մը կ՚առնէ մերթ, շատ են իր լեզուի անճշդութիւններն ու խորթութիւնները, չփոթութիւն կայ պատկերներուն եւ գաղափարներուն մէջ, – ու կ՚ապշինք պարզապէս՝ երբ կը յիշենք թէ «բանաստեղծը» հեռու չէ այս ամենէն ու անոնց մէջ ալ է երբեմն*[31]*։*

4. Անակնկալը ներդաշնակութեան եւ պատկերներուն մէջ.

[Մուշեղ Իշխանի *Կրակ*ին մէջ] *[կ]ը պակսի անակնկալը թէ՛ ներդաշնակութեան եւ թէ պատկերի մէջ։ Եթէ Մ. Իշխան ունի կամ պիտի ունենայ ուրիշ ըսելիք, անհրաժեշտ է որ թօթուըւի եւ ըսէ նոր, տարբեր ձեւերով*[32]:

5. Սեղմութիւն եւ հոծութիւն.

*Իր բանաստեղծի քանի մը իրական ձիրքերուն վրայ կը մաղթեմ Մ. Իշխանին աւելցնել սեղմութիւնը եւ հոծութիւնը*[33]:

6. Բխումի զօրութիւն՝ առանց ընդլայնումի.

*Այս հատորին մէջ* [իմա՝ Մուշեղ Իշխանի *Կրակ*ը, Հ.Ա.] *իմ նախընտրութիւնս կ՚երթայ «Օրօր»ին, որուն թերութիւնները կը տեսնեմ բայց որուն մէջ կը սիրեմ բխումին զօրութեան հետ՝ ընդլայնումէ խուսափումը*[34]:

7. Բանաստեղծութիւնը լեզու է.

*Ընդհանուր առմամբ՝ յստակ եւ սահուն – մինչեւ անգամ քիչ մը շատ յստակ եւ շատ սահուն – լեզուն ակամայ մթութիւններ եւ ցնցումներ կը յայտնէ տեղ տեղ* [իմա՝ Մուշեղ Իշխանի *Կրակ*ին մէջ, Հ.Ա.], *ինչպէս «Անմահութիւն»ի առաջին տունին վերջին տողին մէջ, մինչ նոյնին առաջին տողը գէշ է իր լաւ ըլլալու երեւոյթովը*[35]:

## 4. ՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆԸ ՎՏԱՆԳԻ ՏԱԿ

Սփիւռքի հայութեան համար գրականութիւնը գոյաբանական հարց մըն է, քանի որ անիկա իր մէջ կը պարփակէ լեզուն, յիշատակները եւ զգացումները։ Ազգ մը չի կրնար գոյատեւել առանց գրականութեան.

*Գրականութիւնը այն չէ ինչ որ ընդհանրապէս կը կարծեն մենէ շատերը, լիւքսի առարկա՛յ մը. այն ալ ոչ առօրեայ կեանքին մէջ տեղ մը ունեցող։*

*Շատ չեն, շատ քիչ են գիտցողները՝ թէ առանց անոր մարդ մը կ՚ապրի բայց ազգ մը չապրիր այսօր, – պիտի չապրէ՞ր հազար հինգ հարիւր տարիէ ի վեր Հայ Ազգը, օրինակի համար։*

*Մեզի համար մանաւանդ, որ այսօր այնքան թուլցած ու տկարացած ենք մեր հայրենիքէն դուրս ամէն տեղ ուր կանք եւ կը կազմենք ազգին ամբողջական թիւին համեմատութեամբ պատկառելի թիւ մը, մեզի համար՝ Գրականութիւնը հա՛ց է, ներեցէք՝ ուրիշ ամէն բանէ աւելի հա՛ց։*

*Լեզուն պահպանող, յիշատակներն արծարծող, զգացումները թարմացնող մեծ գիտն է*

*ան՝ զոր ըրած է մարդկութիւնը իր մեծագոյն շահուն համար*[36]:

Այսօր, սակայն, փառաւոր հանդիսութիւններու եւ Թարգմանչացի հոգեհանգստեան պաշտօններու միջոցով գաղութի ղեկավարները կ'ուզեն պանծացուցած ըլլալ հին գրականութիւնը, առանց պէտքը զգալու շարունակել Թարգմանչաց գործը.

*Տօ՛ն, մեծաշուք հանդիսութի՛ւն, հանդիսաւոր Ս. Պատարա՛գ, եւ յետոյ հրաւէր «մեր հաւատացեալ ժողովուրդին ու համայն վարժարանաց ուսանողութեան՝ բերելու իրեն մասնակցութիւնը այս հոգեկան հանդիսութեանց...:» Ուրիշ ի՞նչ կրնայինք ընել մեծարելու համար յիշատակը գրոց գիւտին եւ Ս. Գրոց թարգմանութեան հեղինակներուն, բացի կրկին ու կրկին չեշտելէ՝ թէ հանդէս կը կատարենք իրենց համար եւ... փակելէ ազգային վարժարանները, ինչ որ եթէ գոհունակութեամբ կ'ողջունուի ուսուցիչներէն եւ աշակերտներէն, ընդունի՛նք թէ հայ գիրը եւ լեզուն փառաւորելու բաւական բառատոքսալ միջոց մըն է...:*

*...*

*Հազար հինգ հարիւր տարի ետքը, Եկեղեցին եւ Ազգը, այսօր, կը տօնեն Սուրբ Թարգմանիչները, այդ առթիւ մինչեւ իսկ պատշաճ կը համարեն «հոգեհանգստեան հանդիսաւոր պաշտօն կատարել հանգուցեալ կրթական մշակներու եւ գրչի վաստակաւորներու հոգւոյն համար», բայց անոնց այն ատեն սկսած գրական գործը շարունակել տալու համար՝ երբեք բան մը ընելու պէտքը չեն զգար*[37]:

Նաեւ, հայ իրականութիւնը ողողուած է անկենդան գրականութեամբ: Անկենդան գրողին համար գրելը ներքնականացուած պահանջք մը չէ. ան կը գրէ ելլելով արտաքին գրգիռներէ եւ ձեւական կարողութիւններէ: Գրական դաշտը մեծապէս կը տուժէ նման գրողներու պատճառով.

*Առանց «կեանք»ի գրականութիւն մը ստեղծուած է եւ կը տեւէ գաղութահայութեան մէջ հիմա, այս տարիներուս: Ժամանակ է վտա՛նգ պոռալու այդ գրականութեան հեղինակներուն եւ զայն «սիրողներուն»: Ոչինչ այնչափ թշնամի է բուն գրականութեան որքան կեանքէն չեկող գրականութիւնը: Ան կ'սպաննէ, երբեմն երկար ատենի համար, միւսին կարելիութիւնները: Ճշմարիտ տեղ առնուելով՝ կը մոռցնէ ճշմարիտ գրականութիւնը, անոր պէտքն ու անոր գեղեցկութիւնը: Անհրաժեշտ է հալածել զայն:*

*«Առանց կեանք»ի կը կոչեմ ա՛յն գրականութիւնը որ կը խարխափէ՝ որովհետեւ գրողը լեցուած չէր իր նիւթով, չէր զգար գրելու անհրաժեշտութիւնը բայց գրեց:*

*Գրե՛ց՝ իր գրելու դիւրութենէն եւ յետոյ հրատարակելու դիւրութենէն տարուելով: Գրեց՝ գոհացնելու համար իր փառասիրութիւնը որ օր աւուր կը մեծնայ, իր առաջին հրատարակութենէն եւ իրեն ուղղուած առաջին գնահատանքի ու քաջալերութեան խօսքերէն ի վեր, ու գրեց կարծելով, իրապէս կարծելո՜վ որ ըսելիք մը ունենալուն համար կը գրէ՝ մինչ գրելու*

*համար է որ ըսելիքը կը փնտռէ, եւ իր գրութիւնը կը վերջանայ, երբեմն, դեռ ըսելիքը չգտնուած…*[38]:

Թէքէեան անուններ չի նշեր, բայց կարելի է յիշել իրեն ժամանակակից «գրող»-ներէն մէկը՝ Արշամ Տատրեան, որ տասնամեակներ շարունակ լեցուցած է եգիպտահայ էջերը անհաղորդական բանաստեղծութիւններով եւ արձակով:

## ՀԱՅ ԳՐՈՂԸ

Գրելը դժուար բան չէ. դժուարը *գրագէտ* գրող ըլլալն է, դիտել կու տայ Թէքէեան:

Յատկապէս հայ լրագիրներուն մէջ կը գտնուի ոչ-գրագէտ քաղաքական գրողներու բազմութիւն մը: Գրագէտ ըլլալու երեք յատկանիշներ կան՝ տիրապետել զգացումին, զայն վերածել խորհուրդի եւ կարողանալ այդ խորհուրդը արտայայտել.

*«Գրագէտ-գրող» բացատրութիւնը աւելորդ չէր, ընդհակառակն պէտք եղաւ ստեղծել հայերէնի մէջ, որովհետեւ ոչ-գրագէտ-գրողներ շատ ունինք դժբախտաբար՝ մասնաւորապէս քաղաքական գրողներու այն բազմութեան մէջ, որոնք հայ լրագրութիւնը լեցուցած են եւ լեցնել կը շարունակեն:*

*Այո՛, ամէն գրագէտ քաղաքականութեամբ չի զբաղիր, քաղաքականութեան վրայ չի գրեր, պէտք չէ գրէ ու չի կրնար գրել անպատճառ, բայց քաղաքականութեան վրայ գրողը պէտք էր միշտ՝ գրագէտ ըլլալ:*

*Գրագէտը մարդ մըն է որ իր զգացումին տիրապետել, զայն խորհուրդի վերածել եւ իր խորհուրդը արտայայտել գիտէ: Այս երեք պայմանները անհրաժեշտ են քաղաքական գրողին համար եւս, որ այս պատճառաւ պէտք է գրագէտ ըլլայ եւ ոչ թէ պարզ գրող միայն*[39]:

Թէքէեան միշտ զանգատած է հայ (գրագէտ) գրողի դրամական վիճակէն: Արհեստաւորը իր արտադրածը իրաւունք ունի ծախելու, մինչդեռ հայ գրողը ի զուր կ՚ակնկալէ նուազագոյն նիւթական վարձատրութիւն՝ կարենալու համար *բարոյապէս* ապրիլ.

*Մենէ ամէն մէկը, մենք որ այնքան քիչւոր ենք արդէն, նախ բան մը ժառանգեր ենք մեր ծնողքէն, ու տարիներով սիրտ, ժամանակ, աշխատանք ու դրամ վատներ ենք բա՛ն մը ըլլալու համար, պզտիկ կամ մեծ, ա՛յն որ եղած ենք: Ամենահասարակ արհեստաւորը իրաւունք կ'ունենայ տարիներու ընթացքին իր ձեռք բերած փորձառութիւնը՝ իր գիտութի՛ւնը, իր ճաշա՛կը, վճարել տալու հանրութեան՝ այսինքն իր յաճախորդներուն: Ի՞նչ փոյթ որ հայ*

*գրողը չունենայ այդ իրաւունքը: Ան չուզեր զայն ունենալ: Ան կ՚ուզէ միայն՝ որ Հանրութիւնը կարդա՛յ Հայ մեռած գրագէտներուն գործերը, որ ասկէ վերջ՝ նոր եկած ու գալիք Հայ գրագէտներուն աւելի լաւ աչքով նայի քան նայեցաւ իրեն, որ նիւթապէս քիչ մը քաջալերելով նորերը՝ զանոնք ապրեցնէ գէթ բարոյապէս...*[40]:

Գիրքի մը հեղինակը գրողն է, թատերգութեան մը հեղինակը գրողն է։ Գրող, տպագրիչ եւ դերասան համագործակցային հաւասար կապի մէջ պէտք է գտնուին։ Սակայն գաղութահայ իրականութեան մէջ տպագրիչն ու դերասանը առաջ անցած են գրողէն։ Գրողի կշռականութեան անտեսումով, գիրքն ու թատրոնը ինկած են չքաւորութեան մէջ.

*Գիրքը տպագրիչին, Թատրոնը դերասանին կալուածն են մեր մէջ, տարամերժօրէն անո՛նց կալուածը: Կը վարուին անոր Հետ ինչպէս որ կը փափաքին, չափազանցութիւն չըլլար ըսել՝ անխելք տանտիրոջ մը պէս որ դուռները կոտրելով կը վառէ տաքնալու կամ տախտակամածները քակելով կը ծախէ ապրելու Համար: Կամաց-կամաց, տպագրիչը գիրքէն եւ դերասանը Թատրոնէն դուրս նետած է գրողը: Այս վերջինը Հասած է այն դիրքին՝ ուր վճարելով կամ աղաչելով միայն կրնայ ներս ընդունուիլ իրենն ալ, մանաւանդ իրե՛նն եղող տունէն: Տպագրիչն ու դերասանը Հարստացած չեն այս ընկերաբաժանման Հետեւանօք, գրողը բան մը կորսնցուցած է իր արտագրելու եռանդէն զատ, եւ չքաւորութեան մէջ ինկած են՝ ապաՀովապէս՝ գիրքն ու Թատրոնը*[41]:

Ընդհանրապէս հայ (գրագէտ) գրողին ձայնը անլսելի կը մնայ, այն աստիճան՝ որ գրողը ինքը այլեւս անփոյթ է իր լսելիութեան նկատմամբ.

*Հայ գրողը աշխարՀ եկած է մասնաւոր ընդունակութեամբ մը, անապատին մէջ քարոզելու ընդունակութեամբ:*

*Ան կ՚ըսէ միշտ միեւնոյն բանը կամ տարբեր բաներ՝ երբեք չյոգնելով եւ երբեք Հոգ չընելով Թէ արդեօք կա՞յ զինքը լսող մը*[42]:

Բայց չէ՞ որ այս անլսելիութիւնը գրողին առիթ կրնայ տալ արտայայտուելու առանց կաշկանդումներու, առանց հաշուարկումներու՝ ազատագրուած միտքով։ Թէքէեան, կարելի է ըսել, լաւագոյն կերպով օգտուած է այս առիթէն, ինչպէս ցոյց կու տան *Արեւ*ի յօդուածները։

## ՀԱՅԿԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹԻՒՆՆԵՐԸ

1896-ին՝ 18 տարեկանին, Թէքէեան Պոլսոյ մէջ կը միանայ Հնչակեաններուն

շարքերը։ 1904-ին, Աղեքսանդրիոյ մէջ կը դառնայ Վերակազմեալ Հնչակեան, որմէ կը հրաժարի յետագային։

*Արեւ*ի առաջին թիւին մէջ կը շեշտէր լրագիրին ոչ-կուսակցական անկախութիւնը.

*Միայն սա՛ կ'ուզենք այստեղ անմիջապէս ըսել՝ թէ ԱՐԵՒ քաղաքական կուսակցութեան մը օրկանը չէ եւ չպիտի ըլլայ։*

***Հակա-կուսակցական օրկան մըն ալ չէ սակայն***[43]***։***

Յետագային Թէքէեան պիտի անդամագրուէր Ռամկավար Ազատական Կուսակցութեան, որուն, գոնէ առերեւութապէս, հաւատարիմ պիտի մնար մինչեւ կեանքին վերջը։

Շատ դիպուկ է ընդհանուր կուսակցական մտայնութեան թէքէեանական նկարագրութիւնը։ 1937-ին կը քննադատէ, երբ կուսակցութիւնները իրենք իրենց կը նոյնացնեն ողջ հայութեան հետ։ *Իրենք* են հայութիւնը։ Իրենց ամենէն աննշան գործը կը ներկայացնեն ուռճացումով իսկ ձախողանքներուն համար անպայման կը գտնեն ներքին եւ արտաքին հակառակորդներ։ Կուսակցութիւններուն համար կարեւորը դէպքն է կամ սկզբնական կատարուածը, անտեսելով անոր հետեւանքները.

*Կուսակցական մտայնութիւն մը կայ մեր մէջ՝ որ կ'ըսէ.*

*Կայ չկայ մեր կուսակցութիւնը կայ հայ ժողովուրդին մէջ։ Խելքն ալ, հայրենասիրութիւնն ալ, քաջութիւնն ալ մեր քովը պէտք է փնտռել միայն, անոնք մեր մէջ հոսած եւ ամբարուած են ամբողջովին։ Հայութեան մնացեալ մասը պարտաւոր է կուրօրէն հետեւիլ մեզի, միշտ լաւ գտնել մեր ըրածը եւ մեզի տալ մեր ուզածը։ Առանց մեզի կատարուած եւ կատարուող ոչ մէկ գործ լաւ է. լաւ ըլլալու համար պէտք է մեր մասնակցութիւնը գտնուի անոր մէջ, հոգ չէ թէ անիկա փոքր, շատ փոքր ըլլայ, որովհետեւ պիտի կրնանք զայն էական եւ մեծ ցուցնել վերջէն...։*

*Ընդհակառակն եթէ պատահի որ գործ մը մենք միայն կատարած ըլլանք ու այդ գործը վիժած, այդ գործը աղէտ բերած ըլլայ ազգին գլխուն, մենք պատասխանատու չենք անոր համար, մեր ըրածին հետեւանքը չեն ո՛չ յառաջ եկած ֆիզիքական ահաւոր կորուստները, ոչ ալ մեր դատին ատկէ կրած քաղաքական մեծ ձախողութիւնը։ Պատասխանատու են անոնք՝ որ չօգնեցին մեզի. վստահաբար պիտի յաջողէինք՝ եթէ մեր հակառակորդները – որոնց համար միշտ ըսած ենք թէ ճղճիմ, աննշան խմբակ մը կը կազմեն թիւով եւ որակով – արգիլած չըլլային որ չէզոք ժողովուրդը զանգուածօրէն միանայ եւ ուժ տայ մեզի։ Այդ հակառակորդները պէտք է ծածկէին իրենց տարախոհութիւնը, գիտնալով թէ ոեւէ ձեռնարկի յաջողութեան պայմանն է ոչ թէ իր նախահաշիւներուն ճշդութիւնը՝ այլ, հակառակ անոնց սխալ ըլլալուն, այն անակնկալ օգնութիւնը զոր ճամբու ընթացքին ձեռնարկը կրնայ գտնել...։*

*Ասոր ապացոյց՝ մեր այդ ձեռնարկներուն բոլորին սկզբնական յաջողութիւնը: Այսպէս՝ Խանասորի մէջ «սպաննեցինք» Շարաֆ բէկը, Պոլսոյ մէջ գրաւեցինք Պանք Օթօմանը, համաձայնութիւն կնքեցինք Իթթիհատի հետ, վերջէն՝ յարձակեցանք եւ առինք Օլթին, յարուցինք փետրուարեան ապստամբութիւնը, կնքեցինք հայեւքիւրտ համաձայնութիւնը եւ ունեցանք ասոնց պէս ուրիշ բազմաթիւ «սկզբնական» յաջողութիւններ...: Ո՛չ, յանցանքը մերը չէ, մեզ առանձին ձգող Հայերուն եւ առնուազն դիպուածինն է՝ եթէ բոլոր այս գործերը վերջնական յաջողութիւններով չպսակուեցան եւ ստեղծեցին, ընդհակառակն, մեծ դժբախտութիւններ: Բայց մենք գոնէ հաստատեցինք անոնցմով, թէ ի՛նչեր կրնայինք ընել, այսինքն կրնայ ընել հայ ժողովուրդը՝ զոր արթնցուցած, ռազմունակ ժողովուրդի մը վերածած եւ «հոգիով ազատագրած» ըլլալնիս ոչ ոք թող համարձակի ուրանալ...: Մնացեալը ժամանակի հարց է միայն, եւ մենք, փառք Ստեղծողին, մեռած չենք, լուծուած չենք, դադրած չենք եւ պիտի չդադրինք գործելէ...*[44]:

Դժուար չէ նկատել որ բերուած օրինակները կը վերաբերին Դաշնակցութեան, քանի որ Ռամկավարութիւնը ստեղծուելով շատ աւելի ուշ, հեռու մնացած էր յեղափոխական գործողութիւններէն: Բայց անկախ դէպքային պարագաներէն, կարելի է աւելցնել, որ բոլոր կուսակցութիւններն ալ ինքզինքնին կը նոյնացնեն ամբողջ հայութեան հետ եւ իրենց հայապահպանումի պատումները կը հիմնեն կատարուածի ցուցադրութեան վրայ, առանց մտահոգուելու ընթացքով եւ արդիւնքով: Օրինակ, երբ 2012-ին ԻՒՆԵՍՔՕ-ն արեւմտահայերէնը կը յայտարարէր վտանգուած լեզու, կուսակցութիւններէն ոչ մէկը տագնապի նշոյլներ ցոյց տուաւ, այլ բաւարարուեցաւ յայտարարութեան արձանագրութեամբ, մինչդեռ իրենք էին որոնք ինքզինքնուն պարգեւած էին հայապահպան կառոյցներու հիմնադիրները ըլլալու առաւելութիւնը: Հիմնադրութիւնը՝ մնալով ուղղահայեաց իրականութիւն մը, օտարացաւ գործողութենէն:

Կուսակցութիւն հասկացողութեան դէմ չէ Թէքէեան, ընդհակառակը, կուսակցութիւններու գոյութիւնն ու իրենց միջեւ եղած պայքարը կը նկատէ առողջարար երեւոյթներ: Ասիկա կը վկայէ Ռամկավար Ազատական Կուսակցութեան 17-ամեակին առիթով ունեցած ելոյթին սղագրութիւնը.

*Կուսակցականները կրնան հպարտութեամբ ըսել «մենք»: Ձի անոնք, ընդդէմ ձեռնպահութեան, չէզոքութեան, ծուլութեան եւ անտարբերութեան՝ կը ներկայացնեն ազգի մը ոգեւոր, գործօն, զոհաբերող տարրերը:*

*Կուսակցութիւնները այժմու քաղաքական աշխարհին, քաղաքակրթութեան այժմու փուլին մէջ, անհրաժեշտութիւններ են եւ գոյութիւն ունին բոլոր յառաջացեալ ազգերուն մէջ: Անոնց պայքարնե՞րը: Երբեմն անխուսափելի են անոնք, անհրաժեշտ նոյնիսկ: Եւ պայքարներո՛ւ ալ կը հանդիպինք օտար ազգերուն մէջ, յաճախ նոյնիսկ աւելի բուռն քան մեր մէջ մղուածները:*

*Կուսակցական պայքարները՝ իրենց բոլոր անպատեհութիւններովը, նախընտրելի են*

*անտարբերութիւնէն, մեռելային անշարժութենէն*[45]:

Համոզումնութիւնը Ռամկավար Կուսակցութեան հանդէպ լիարժէք է, համաձայն նոյն սղագրութեան.

*Ռամկ. Ազատականներս ալ կրնանք ըսել «մենք», եւ «մենք» ըսած կ'ըլլանք արդէն այս հանդէսը տալով եւ ժողովուրդը հրաւիրելով մեր «Օրը» տօնախմբելու մեզի հետ: Աստր իրաւունքը կուտայ մեզի մեր տարիներով յարատեւող ճիգը, զոհողութիւնները՝ ազգին բարւոյն ու բարօրութեան համար*[46]:

Թէքէեան համոզուած է նաեւ Ռամկավար մամուլի համեմատաբար աւելի անխտրական կեցուածքին.

*Արդար ըլլալու համար, պէտք է ըսուի որ Ռ. Ա. մամուլը աւելի եւ շատ աւելի անխտրական եղած է՝ քան ուրիշ կուսակցութեան մը մամուլը*[47]:

## ՄՇԱԿՈՅԹԻ ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆԱՑՈՒՄ

Թէքէեան դէմ է մշակոյթի կուսակցականացումին: Տարածուած երեւոյթներ են կուսակցական դպրոցը, կուսակցական գրական հանդէսը եւ կուսակցական գեղարուեստական հաւաքոյթը, որոնք կը ցրեն կարողութիւնները գաղութահայ խեղճ կեանքին մէջ: Մշակոյթը սահմանուելով կուսակցական շրջանակներու մէջ, կը նուազի անոր արդիւնաւէտութիւնը: Կուսակցութիւնները կրնան իրենց գաղափարները յայտնել մշակոյթի մասին եւ մասնակցիլ անոր կերտումին, պայմանով որ *նախ* ստեղծուի մշակոյթը իբրեւ անկախ միաւոր, ապա անոնք յայտնեն իրենց կարծիքները՝ առանց ձգտելու ձեռք ձգել մասնաւոր սեփականաշնորհումներ.

*Հաւաքական ճիգի պայմանը՝ միակն է, ըստ իս, որ կրնայ արդիւնաւոր ընել այդ միջոցներուն համար արուած աշխատանքը: Դպրոցը, լեզուն, գրականութիւնը եւ գեղարուեստը պէտք է ըլլան իրապէս համազգային, ըսել կ'ուզեմ՝ թէ անոնց ծառայելու համար պէտք է, իւրաքանչիւր վայրի մէջ, իրարու խառնուին ձեռնհաս կամ յուսատու տարրերը, առանց կուսակցական խտրութեան:*

*Բայց ասիկա կարելի է, ի սկզբան մանաւանդ, ա՛յն ատեն միայն՝ երբ կուսակցութիւնները վճռապէս կը հրաժարին կուսակցական տեսակէտ դնելէ եւ կուսակցական տեսութիւն պարզելէ այդ գործերուն մէջ: Ի սկզբա՛ն, որովհետեւ հակառակ չեմ որ վերջէն, երբ իրենք եւ ժողովուրդը պէտք եղած վարժութիւնը ստանան, նոյն հանդէսին կամ սրահին մէջ*

*տարբեր գաղափարներ պաշտպանուին տարբեր կուսակցութեանց անդամներու կողմէ:*

*Կուսակցական գոյնով ազգ. վարժարաններ ունենալէ ետք (Սուրիա, Յունաստան եւ այլուր) զարմանալի չէր որ ունենայինք նաեւ կուսակցական գրական հանդէս եւ կուսակցական գեղարուեստական հաւաքոյթ: Անոնց ոչ մէկուն համար կրնայ ըսուիլ՝ թէ լաւագոյն պիտի չըլլար եւ լաւագոյնս պիտի չծառայէր իր մշակութային նպատակին՝ եթէ խառն եղած ըլլային իր դերակատարներուն պէս իր հանրութիւնն ալ:*

*Կրնայ այս պահանջը անգործնական նկատուիլ այսօր: Երբ, սակայն, կուսակցութիւնները կը գործակցին ուրիշ ամէն մարզի մէջ, ինծի կը թուի թէ կրնան նոյն գործակցութիւնը ունենալ մշակոյթի մարզին մէջ եւս, որ իր զարգացման ներկայ աստիճանովը գոնէ, պէտք է հասարակաց նկատուի մեր գաղութահայ ներկայ խեղճ կեանքին մէջ մանաւանդ:*

*Որովհետեւ Պետութիւնները կրնան մշակոյթին վրայ ձեռք դնել եւ գայն գունաւորել (համայնավար, ֆաշիսթ, նացի), ոչ-պետական կուսակցութիւնները՝ որոնք իրենց երկրէն դուրս կը գործեն, նոյնը չեն կրնար ընել յօգուտ իրենց անմիջական նպատակին՝ որ ազգապահպանումն է օտարութեան մէջ:*

*Ես վստահ եմ որ շատ բան աւելի արդիւնաւոր պիտի ըլլար այստեղ մշակոյթի հարցին մէջ, եթէ գործողները չսեղմուէին կուսակցական շրջանակի մէջ*[48]*:*

## ԻՇԽԱՆԱԿԱՆ ԵՍԸ

Գաղութահայ ղեկավարներուն եսը հասած է անհաւանական մակարդակի: Հանրային գործիչներուն տգիտութիւնը եւ իրենց շնորհուած անձեռնմխելիութիւնը զանոնք դարձուցած են մեծամիտ ու յամառ՝ լիովին պաշտպանուած ամէն տեսակ քննադատութենէ.

*Սքեմը՝ միշտ, բարեկամեցողութիւնը՝ յաճախ, կրօնաւորին եւ աշխարհականին մօտ ձեռնհասութեան գրաւական կը համարուին: Ա՛յնքան քիչուոր են ատկէ աւելին ունեցողները՝ որ այդքանով կը գոհանանք արդէն, մեր դժգոհութիւններն իսկ խեղդելով սա՛ ողբալի մտածման մէջ. «Լաւագոյնները չկան» եւ այդպէս՝ յաւերժացնելով չարիքը:*

*Արդ, տգիտութիւնը մէկ պատճառն է եւ թոյլտուութիւնը միւս պատճառը՝ հանրային գործիչներու «ես»ին ուռենալուն: Եւ երբ այդքան ուռեցած է «ես»ը, այլ եւս կարելի չէ ամենամեղմ դիտողութիւնն իսկ ներկայացնել անոր տիրոջը: Իր մեծամտութեան եւ յամառութեան մէջ՝ ան ոեւէ քննադատութիւն պիտի չընդունի, զայն վիրաւորանք պիտի համարէ իր «ես»ին, իր «ես»ը պիտի գրգռուի եւ խենդութիւններ ու վայրենութիւններ ընել պիտի տայ իրեն*[49]*:*

Եսի կռքապաշտութիւնը մղած է եգիպտահայ իշխանաւորներուն ինքզինքնին նոյնացնելու Համայնքի հետ, առաջնորդելով իշխանական զեղծումի: Ասիկա

կը վնասէ քաղաքացիական դաստիարակութեան եւ դէմ է օրէնքներու ոգիին.

*Արդ, վերջերս որոշակի կը նշմարեմ որ մեր իշխանաւորները – այս բառը շատ մեծ է բայց ուրիշը չունիմ մեր պզտիկ իշխանութեան աւելի ճիշդ կերպով պատշաճող – ինքզինքնին եթէ ոչ Տէրութիւն գէթ Համայնք նկատելու ձգտում մը կը մատնեն…: Ամէնքը այսպէս չեն անշուշտ, եւ Գահիրէի նորընտիր Թաղ. Ժողովի ատենապետը բնաւ այսպէս չէ, անկեղծօրէն կ'ըսեմ ասիկա:*

*Բայց ձգտումը գոյութիւն ունի եւ կը յայտնուի, իշխանաւորին տրուած սահմանին մէջ՝ աւելի կամ պակաս չափով, այդ իշխանութեան կարգ մը անդամներուն մօտ, ըլլան անոնք Թեմականի թէ Հոգաբարձութեան մը անդամ: Ու այժմ դեռ վտանգաւոր չէ ան եւ արդէն շատ վախ չկայ որ հոս մեր գլխուն պզտիկ Հիթլէր մը ելլէ անոնցմէ, բայց երեւոյթը ստեղծող մտայնութիւնը ինքնին վնասակար մտայնութիւն մըն է մեր Համայնքին համար. ան եթ կը թողու՝ փոխանակ յառաջացնելու՝ Համայնքին քաղաքացիական դաստիարակութիւնը եւ, ամէն պարագայի, ան հեռու է համապատասխանելէ մեզ վարող հին եւ նոր օրէնքներու ոգիին:*

*Փաշաներու շրջանէն ասդին, մեր եկած-գացած բազմաթիւ իշխանաւորներուն վրայ ես զգացած կամ շնչած չէի այս շունչը այսքան որոշ կերպով, Գահիրէի մէջ ըլլայ թէ Աղեքսանդրիոյ: Եւ չեմ խօսիր միայն աշխարհական այլ նաեւ եկեղեցական իշխանութեան վրայ, ուր, զարմանալի՜ բան, սանկ պզտիկ հով մը կը փչէ եւ երթալով կը զօրանայ կարծէք, «մենք գիտենք»ի հով մը զոր արդարանալի չեմ գտներ իմ մասիս*[50]:

## ԱՐԵՒՄՏԱՀԱՅԵՐԷՆ

Արեւմտահայերէն լեզուն «ծանր վտանգէ մը կ'անցնի», կը շեշտէ Թէքէեան 1929-ին: Արեւմտահայերէն լեզուն աշխարհի վտանգուած լեզուներէն մէկն է, կը յայտարարէ ԻՒՆԵՍՔՕ 83 տարի ետք՝ 2012-ին:

1929-ին ան վտանգուած էր, որովհետեւ, համաձայն Թէքէեանին,

*Զայն կազմող եւ խօսող երկու մեծ կեդրոններէն՝ Պոլսէն եւ Իզմիրէն, մէկը տկարացած եւ միւսը կորսուած է մեզի համար: Գաղութները չեն կրնար մեր այդ լեզուն իր մաքրութեան մէջ պահել եւ զարգացնել, չունենալով ուսեալ անհատներու բաւական հոծ թիւ մը իրենց մէջ եւ ունենալով, ընդհակառակն, ամէն գաւառէ եկած եւ շրջափոխուելու ատեն չունեցած հայերու ստուար բազմութիւն մը*[51]:

Շուրջ տասը տարի ետք Թէքէեան պիտի շեշտէ նաեւ՝ որ արեւմտահայերէնի վտանգը կու գայ վերէն եւ ոչ թէ վարէն, անոր պատասխանատուները ըլլալով թղթակիցները, խմբագիրները, գրողները, որոնք իրենց գրութիւններուն մէջ հայե-

րէն լեզուն «կը վերածեն ահաւոր լղրճութեան մը»։ Բայց կայ նաեւ ընթերցողին մեղսակցութիւնը, քանի որ անիկա, օտարացած ըլլալով գիրի հանդէպ յուզական կապէ, չի տագնապիր տեսնելով սխալները.

*Լեզուն երկրորդական, նոյն իսկ տասներորդական կը նկատուի հիմա։ Դուք միտքերուն նայեցէ՛ք՝ կ'ըսէ Թղթակիցը, աշխատակիցը, երբեմն խմբագիրը եւ երբեմն մատենագիրն ալ։ Ընթերցողը, եթէ պատահի որ անդրադառնայ սխալներուն, կ'արդարացնէ ըսելով. Այսպէս ըսել ուզած է։ Հազուադէպ բացառութիւններ են անո՛նք՝ որ կը խորհին թէ լեզուն արժէք մը եւ մեծ, մնայուն արժէք մը, ազգային արժէք մըն է ինքնին՝ որ աւելի կ'արժէ քան իրմով յայտնուած գաղափարները, որոնք յայտնուած թէ չէ՝ անցած ու մոռցուած են արդէն։ Շատ գրողներ աւելի մեծ ծառայութիւն մատուցած չեն, մերիններէն շատեր այսօր ուրիշ ծառայութիւն չեն կրնար մատուցանել՝ բայց եթէ իրենց լեզուն մաքուր պահելու ծառայութիւնը։*

*Տպագրական սխալները կ'աւելնան գրողին սխալներուն վրայ եւ խեղճ հայերէն աշխարհաբարը – որ ո՜րքան ազնուացեր էր անցեալ դարուն վերջերն ու ասր սկիզբի տարիները – կը վերածեն ահաւոր լղրճութեան մը։ Հայ տղան զայն կարդալով կը մոռնայ դպրոցի մէջ իր սորված կանոնաւոր հայերէնը եւ զարգացած չափահասը կը զզուի հայ գիրէն։ Մեր ընթերցողները պիտի ըլլան, քիչ առ քիչ, հեգելով ազգային եւ քաղաքական լուր կարդացողները միայն՝ որոնք ուրիշ լեզու եւ ուրիշ բան չեն կրնար կարդալ արդէն*[52]*։*

Որմէ ետք Թէքէեան կը նշէ շաբաթաթերթի մէկ թիւի մը մէջ տեղ գտած լեզուական սխալները։

Արեւմտահայերէնի անկումի պատճառներէն մէկն է հայերէն լեզուի ուսուցիչներուն օտարացումը մատուցուող նիւթէն եւ աշակերտներէն։ Բաւարար չէ ուսուցիչի մը լեզուական իմացութիւնը. ան պէտք է ապրի այդ լեզուով, ապրելով ապրեցնէ աշակերտները եւ ստեղծէ իր եւ աշակերտներուն միջեւ համակեցական մթնոլորտ մը, ուսուցիչ-աշակերտ-լեզուի միջեւ յառաջացնելով փոխներթափանցումի կարելիութիւններ, զորս Թէքէեան մէկ բառով կ'անուանէ «սէր».

*Ա՛հ, եթէ միայն մեր նախակրթարաններուն մէջ հայ լեզուն աւանդուէր զինքը իրապէս ճանչցող ու սիրող ուսուցիչներու միջոցաւ, եւ եթէ այդ ուսուցիչները ուզէին եւ նաեւ կարենային իրենց սէրը փոխանցել աշակերտներուն, ի՜նչ մեծ ծառայութիւն մը մատուցած պիտի ըլլային իրենց հայրենիքին՝ որուն ուրիշ կերպ ծառայել չեն կրնար այստեղ, բացի իրենց պաշտօնը կատարելէ։ Աւելի՛ն. վստահութեան զեղծում է արարքը այն ուսուցիչներուն որոնք լաւ չսորվեցնելով՝ բնականաբար չեն ալ սիրցներ հայերէնը հայ տղաքներուն, եւ չեն սորվեցներ ու չեն սիրցներ անո՛ր համար՝ որ իրենք ալ սորված չե՜ն, չե՜ն սորվիր ու չե՜ն սիրեր զայն բայց կը պաշտօնավարեն։*

*Հետեւա՛նք՝ հազարաւոր հայոց մէջէն, որոնք անցած են Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ ազգային վարժարաններէն, հազիւ մէկ-երկու տասնեակ հոգի կրնայ խօսիլ եւ գրել իր լեզուն քիչ-շատ ճշդութեամբ եւ մաքրութեամբ, սակայն ոչ ոք սիրած է այդ լեզուն այնքան՝ որ*

*անոր ուսումնասիրութեանն ու ուսուցմանը նուիրուի:*

*Եւ այնքանատեն՝ որ տուած չեն այս միակ բարացուցական օրինակը, այնքան ատեն ձախողած պէտք է համարել հայ վարժարանները իրենց նպատակին մէջ այստեղ եւ այլուր քանի որ այդ նպատակը հայրենիքը ինքզինքին համար անշահախնդրօրէն ճանչնալն ու սիրելն է, բա՛ն մը որ անոր խտացումը՝ անոր լեզո՛ւն ճանչնալով եւ սիրելով կարելի է:*

*Եւ չըսի՞ թէ լեզուն գրականութեամբ կը սիրուի եւ կը սիրցուի, ճշմարի՛տ գրականութեամբ...*[53]:

Արեւմտահայերէնի (եւ որեւէ լեզուի) պահպանումի համար կարեւոր նշանակութիւն ունի ճիշդ ու մաքուր բանաւոր խօսքը: Թէքէեան նկատի ունի ոչ թէ անհատի մը խօսքը, այլ ամբողջ ժողովուրդի: Ժողովուրդ մը որ լաւ կը խօսի, գրողները կրնան աւելի լաւ գրել: Անցումը հաւաքական խօսքէն դէպի մասնագիտական գիրը էական նշանակութիւն ունի լեզուի պահպանումի համար.

*- Լեզուն խօսքով չի սիրուիր... կ'ըսէր անգամ մը բարեկամս իր բարկութեանը մէջ, երբ յանկարծ կանգ առաւ, ժպտեցաւ (եւ ոչ ժպտաց) ու մեղմաձայն յարեց.*

*- Խօսքով ալ կը սիրուի, խօսքո՛վ մանաւանդ կը սիրուի: Գիրը խօսքէն վերջը եկած է ու կուգա՛յ մինչեւ հիմա: Պէտք է ժողովուրդ մը արդէն լաւ խօսի, որպէսզի իր գրողները աւելի լաւ գրեն: Եւ ան պէտք է լաւ խօսի՝ կարենալ կարդալու, հասկնալու եւ գնահատելու համար իր լեզուով գրող հեղինակները...:*

*Խօսքով, ուրեմն, Հայերը պէտք է սիրեն հայ լեզուն, բայց ոչ թէ «Հայերէնը կը սիրեմ, հարկա՛ւ կը սիրեմ, շա՜տ կը սիրեմ» խօսքերով, այլ մաքուր, ճիշդ ու ճոխ խօսելով զայն*[54]:

Լեզուն կը վնասուի՝ երբ կը դասաւանդուի ազգասիրական նշանաբաններով, երբ ան կը դառնայ վերադիր պարտադրանք մը ինքնանպատակ ազգասիրութեան համար՝ օտարացած կենդանի փորձառութենէն: Սփիւռքահայութեան համար՝ որ կտրուած է լեզուն պահպանելու եւ շրջանառութեան մէջ դնելու այլ ժողովուրդներու հնարաւորութիւններէն, գրականութեան լայն հասկացողութիւնը (պատմութիւն, բանասիրութիւն, դիպագրութիւն, թատրերգութիւն եւ բանաստեղծութիւն) կը հանդիսանայ այն փորձառութիւնը, որուն միջոցով կրնայ կենդանի պահել արեւմտահայերէնը.

*Լեզուն, մեր հայերէն մեծասքանչ լեզուն, կարելի չէ սորվիլ եւ սորվեցնել, սիրել եւ սիրցնել այսօր ազգասիրաբար, ինքզինքին համար, իբրեւ լեզու միայն: Աւանդական զգացումով մը այսօր ան դեռ կը սորվուի քիչ մը, համեստ քանակով եւ աղքատիկ որակով: Գործնական կեանքի մէջ՝ ան գրեթէ բնաւ չի ծառայեր մեզի. անով ո՛չ առեւտրական նամակ կը գրենք ոչ ալ տեղեկագիր կը կազմենք: Իբրեւ գիտութեան լեզու, ան հազիւ նախակրթարաններու մէջ կը գործածուի, անոնք ուսուցմանը համար. չկայ հայ գիտունի մը ինքնատիպ գործը հայերէն գրուած... միջին-դարէն ասդին: Գրականութիւնն է միայն – պատմութիւնը,*

*բանասիրութիւնը, դիպագրութիւնը, թատերագրութիւնը եւ բանաստեղծութիւնը – որ ինչպէս այլոց՝ մեր ալ լեզուն կը պահէ թարմ, մաքուր եւ գեղեցիկ, եւ այդպէս կը պահէ, այդպիսի լեզուի մը միջոցով, մանաւանդ մեր ժողովուրդը՝ որ զրկուած է ուրիշ միջոցներէ*[55]**:**

Լեզուն կրնայ ազգը պահել գրականութեան միջոցով, կ'ըսէ Թէքէեան: Թուրքիոյ մէջ ժամանակին կային մարմիններ՝ որոնց շնորհիւ շրջանաւարտ աշակերտը կրնար առնչուիլ հայ լեզուին հետ: Այսօր այս մարմիններուն միայն ստուերները կը գտնուին Սփիւռքի մէջ:

Սփիւռքի մէջ դպրոցը կը գտնէ օգնութիւն, իսկ գրականութիւնը՝ ոչ: Առանց գրականութեան չկայ լեզու, առանց լեզուի չկայ ազգ.

*Վարժարանները, տարակոյս չկայ, հիմը կը դնեն հայերէնի գիտութեան եւ սիրոյն: Պէտք է, այո՛, որ հայ տղան թէ՛ սորվի եւ թէ սիրէ իր լեզուն, ա՛յն չափով որ կարելի է եւ որ ընդունի՛նք թէ մեծ չափ մը չէ: Երէկ Թուրքիոյ մէջ ալ՝ դպրոցներու, մանաւանդ նախակրթարաններու վրայ դրուած չէր հայերէնը ամէնուն՝ բաւական սորվեցնելու եւ ոմանց՝ զայն սիրցնելով, աւելի սորվելու փափաքը ներշնչելու պաշտօնը: Այդ պաշտօնը կատարող ուրիշ օրկաններ կային հոն, որոնց ստուերները միայն կ'երեւան՝ հիմա՝ գաղութահայութեան մէջ:*

*Այդ օրկանները, ամէնքն ալ, իրենց բնութեամբ կը ձգտէին դպրոցի մը մէջ իր լեզուն քիչ-չատ սորված հայը մղելու՝ որ դպրոցէն ետք զայն գործածէ ու զարգացնէ հետզհետէ. կարդայ եւ լսէ՝ այդ լեզուով՝ իր հոգին եւ միտքը գոհացնող նիւթեր. անով, վերջապէս, իր ազգութեան հետ մտերմօրէն կապուած մնայ:*

*Ճիշդ է որ Թուրքիոյ մէջ ալ մեր հարուստները չէին օգներ մեր գրականութեան. բայց ստուարաթիւ ժողովուրդը գրեթէ կը լրացնէր պետական եւ անհատական մեկենասութեան պակասը. ատկէ զատ՝ կեանքի պայմանները կը ներէին որ գրողը գրէր առանց վարձքի, ինչ որ կը դիւրացնէր գրականութեան ծաղկումը...:*

*Այսօր, դպրոցը օգնութիւն կը գտնէ բայց ոչ գրականութիւնը: Այս է մեծ պատճառը որուն համար դպրոցը կը ձախողի իր դերը կատարելու, եւ հայերէնի շնորհիւ ազգային պահպանութեան գործը՝ նոյնպէս պիտի ձախողի:*

*Լեզուն ո՛չ թէ թուաբանութեան այլ գրականութեան միջոցով կրնայ Ազգը պահել: Պէտք չէ՞ որ Ազգն ալ լեզուն պահէ գրականութեան միջոցով*[56]**:**

Արեւմտահայերէնի վտանգը սոսկ լեզուի մը վտանգը չէ, այլ վտանգն է ամբողջ դիմագիծի մը, նկարագիրի մը եւ մշակոյթի մը:

## ՀԱՅԸ՝ ԱՆԳԼԵՐԷՆ

1931-ին *Արեւի* խմբագրութիւնը Ամերիկայէն նամակ մը կը ստանայ, ուր կը

յանձնարարուի տպագրել հայու մը յօրինած անգլերէն ոտանաւորը։ Թէքէեան զայրացած է.

*Հայ պատանիի մը իր մայրենի լեզուով չկարենալ գրելուն, չկարենալ երգելուն ցաւն է որ կը հեծէ այս քերթուածին մէջ՝ այնպիսի տաք եւ ինքնաբուխ շեշտերով, որ ան հաւասար կը դառնայ ամէնէն թրթռուն սիրային քերթուածին։ Եւ ինչո՞ւ սիրային պիտի չհամարէինք այս քերթուածը, որ փոխանակ կորսուած սիրականի մը ուղղուելու՝ կ'ուղղուի սիրուած ու բանաստեղծին մէջ կորսուած լեզուի մը*[57]։

Դեռ երկու տարի առաջ Թէքէեան կը բարձրաձայնէր արեւմտահայերէնի վտանգը։ Եւ ահաւասիկ հայեր՝ որոնք հայերէն չեն գրեր, *Արեւ*ի խմբագիրին գրեթէ կը պարտադրեն հրատարակել անգլերէն լեզուով, փոխանակ դիմադրութիւն ցուցաբերելու երեւոյթին նկատմամբ։

Թէքէեանի բողոքը, այսօր, աւելի քան կենդանի է, քանզի ներկայիս ոչ միայն աւելցած են հայերէն գրել չիմացող հայ գրողներու բանակը, այլեւ արեւմտահայերէնը լաւ տիրապետող գրողներ որոշած են գրել *միայն* «օտար» լեզուով՝ յատկապէս անգլերէն, ֆրանսերէն կամ արաբերէն, իբրեւ հայերէնէն *աւելի* տարածուած լեզու, իբրեւ ուժային կեդրոնի լեզու, ուստի, կամայաբար ենթարկըւելով դիւրավառ գրգիռին։ Հմայքը, հռչակը, փայլքը առաջ անցած են իմաստէն։

Հապա եթէ Թէքէեան կանխատեսէր որ շուտով Ամերիկայի մէջ «Հայագիտական» հզօր ու ազդեցիկ կեդրոններ պիտի հիմնուէին՝ ամբողջապէս անգլերէն լեզուով, որոնց դասատուներուն եւ ղեկավարներուն կարեւոր մասը մէկ բառ հայերէն գրելու անկարող պիտի ըլլար, դժուարութեամբ պիտի խօսէր հայերէն, պիտի հրատարակէր հայագիտական ուսումնասիրութիւններ՝ յաճախ անտեսելով հայերէն աղբիւրները եւ ստեղծելով անգլերէն աղբիւրներու շրջանակ մը։ Հայ մը, օրինակ, պիտի հետազօտէր Մովսէս Խորենացի՝ անգլերէն թարգմանութեան հիման վրայ։ Ուրիշ հայ մը պիտի վերլուծէր միջնադարեան հայ երգարուեստը կամ Կոմիտասի երգերը՝ հիմնուելով անգլերէն եւ ֆրանսերէն թարգմանութիւններուն վրայ։ Երբեւէ տեսա՞ծ էք «անգլիագիտական» կեդրոն մը՝ որ Շեքսփիր ուսումնասիրէ ֆրանսերէն թարգմանութեան հիման վրայ (ուրիշ հարց է ուսումնասիրել Շեքսփիրի ֆրանսերէն թարգմանութիւնը՝ իբրեւ թարգմանական արուեստ)։ Եւ այս բոլորը՝ առանց ներքնապէս մտահոգուած ըլլալու լեզուական հարցին նկատմամբ, առանց կրելու ներքին տագնապային հակասութեան զգացում մը։ Կիրարկումէն աւելի այս ներքին մտահոգութեան պակասն է որ վտանգաւոր է։

# ՀԱՅ ՅԵՂԱՓՈԽԱԿԱՆ ՇԱՐԺՈՒՄ

Յեղափոխական ոգին է որ կենդանի կը պահէ ազգը: Հասարակութիւնը անընդհատ պէտք ունի յեղափոխութեան: Յեղափոխական ոգին է որ կ'առաջնորդէ դէպի յեղափոխութիւն: Այս ոգիին շնորհիւ է որ Եգիպտոս ձեռք ձգեց իր անկախութիւնը.

*Ազգերու կեանքին մէջ երբեք մարելու չէ յեղափոխական ոգին:*

*Անով է որ Եգիպտոս իր անկախութիւնը գտաւ. անո՛վ ան կ'աշխատի ներքնապէս ալ կերպարանափոխուիլ՝ թշուառութիւնը բարօրութեան վերածելով, մտքի լոյսը իր զանգուածներուն մէջ տարածելով:*

*Ան պէտք է գործէ յաճախ, ամէն մարզի եւ ամէն ապրիլ ուզող ժողովուրդի, ուստի նաեւ մեր մէջ:*

*Ի՞նչ խօսք որ խաղաղ չէ իր գործունէութեան ո՛չ սկիզբը եւ ոչ ընթացքը: Մէկ կողմէ՝ հինը շատ կարծրացած, ժայռ դարձած ըլլալուն եւ միւս կողմէ նորին պահանջքը սաստկապէս զգացուելուն պատճառաւ՝ ան կը ծագի յանկարծ եւ կը մեծնայ, կը տարածուի հետզհետէ, փոթորիկի մէջ:*

*Իր մարզը քաղաքական չէ միայն, ոչ ալ ընկերային տարամերժօրէն՝ այն իմաստով որով այս վերջին բառը կ'առնենք սովորաբար. բայց ամենէն շատ եւ գրեթէ միշտ ընկերային է նորէն, եթէ նկատի ունենանք որ մարդկային հաւաքական կեանքին բարեփոխման կը ձգտի իւրաքանչիւր պոռթկումը, իւրաքանչիւր յարձակումը յեղափոխական ոգիին, կրօնական ըլլայ այդ կեանքը թէ գեղարուեստական, բարքերու թէ վարչական դրութեան նորոգումին վերաբերի պահանջքը*[58]:

Իսկ ի՞նչ կը ներկայացնէին հայերուն 1890-ականներու իրադարձութիւնները: Յեղափոխութի՞ւն էին անոնք թէ շարժում:

*Հայ յեղափոխութիւնը, հայ մտաւորականութիւնը եւ հայ պուրժուազին* խորագիրով բանախօսութեան մանրամասն եւ խղճամիտ սղագրութիւնը խիստ բացայայտիչ է[59]:

Բանախօսութեան կորիզը կը կազմէ 1890-ականներուն սկսած հայ յեղափոխական շարժումը: Բացի անհատական դէպքերէ, այնտեղ ներգրաւուած մտաւորականութիւնը, պուրժուազին եւ կղերականութիւնը չտեսան թափուող արիւնը, չքննարկեցին աղէտաւոր հետեւանքները եւ չփորձեցին հակազդեցութիւն բանեցնել, մինչեւ կատարուեցաւ մեծ աղէտը:

Ծանօթ է, որ 1890-ականներու հայ մամուլը եւ հասարակութիւնը լեցուած էր «յեղափոխութիւն» բառով եւ հասկացողութեամբ: Ամէն տեղ կը խօսուէր յեղափոխութեան մասին: Հնչակեանութիւնն ու Դաշնակցութիւնը իրենց կը վերագրէին յեղափոխական գործունէութիւնները: Թէքէեան զգոյշ է բառերու ընտրութեան

առումով։ Ան կ՚ըսէ՝ թէ յեղափոխութիւն բացատրութիւնը պէտք է ընդունիլ «ապստամբական շարժումի իմաստով, քանի որ նպատակ ունէր օտար լուծէ ձերբազատումը»[60]։ Յեղափոխութեան եւ ապստամբութեան միջեւ տարբերութիւն կը դնէ։ Պատմականօրէն գիտենք, որ 1890-ականներուն Եւրոպայի արեւելեան կողմը հեղեղուած էր մարքսիսթական «յեղափոխութիւն» բառով՝ որ յաճախ կը ստանար փոփուլիսթական հռետորաբանութիւն մը, եւ այդ իմաստով առաւելութիւն մըն էր «յեղափոխական» ըլլալ։ Ասկէ կու գար հայկական երկու աւանդական կուսակցութիւններուն մարքսիզմը եւ «յեղափոխութիւն»-ը։ Մարքսիսթական յեղափոխութիւնը էթնիք տարրեր պիտի չնախատեսէր՝ առանց երբեք հակաէթնիքական միտումներ հետապնդելու, ինչպէս սխալմամբ կը բնորոշեն հակամարքսիսթները։ Նախընտրելով «ապստամբութիւն» բառը, էթնիքական տարր մը յայտնուած կ՚ըլլայ հարցին մէջ (ճնշուած *ազգերու* ազատագրութիւն, փոխանակ ճնշուած *դասակարգերու* ազատագրութեան), Թէքէեանի պարագային՝ առանց ցեղապաշտական կամ ազգայնապաշտական գոյներ տալու հարցին։

Թէքէեան յեղափոխական շարժումին հիմնական սկիզբը կը նկատէ 1880-ի ատենները, առանց մոռնալու որ անկէ առաջ գոյութիւն ունեցած են կարգ մը խմորումներ։ Շարժումը արդիւնքն էր երկու պատճառներու.

> *Նախ Ռուսիոյ յառաջխաղացքը դէպի Պարսկաստան եւ Թուրքիա իբրեւ ազատարար ճնշուած ցեղերու, ապա, ժամանակ վերջ, զանազան ազգերու ազատագրումը Թրքական լուծէն, պատճառ եղաւ որ Հայութիւնն ալ յուսադրուէր ապագայ եթէ ոչ անկախութեան գէթ ինքնավարութեան երազներով ու հեռապատկերով*[61]։

Յեղափոխութեան ծիրին մէջ, մտաւորականութեան մասին Թէքէեանի կարծիքը կարելի բաժնել երեք փոխկապակցուած շերտերու.

1. Իրենց դատողութիւններուն մէջ բացակայելով քննական մօտեցումը, հայ մտաւորականները նետուեցան արտաքին՝ եւրոպական աջակցութեան վրայ։ Մտաւորականութեան «կը պակսէին բուն մտաւորականի յատկութիւնները, վերլուծելու եւ համադրելու կարողութիւնը», որուն պատճառով ան «խորհեցաւ՝ Եւրոպայէն ներմուծուած դաստիարակութեան ու բրօբականտին ազդեցութեան ալ ներքեւ՝ թէ պետութիւնները հայութեան մասին ալ ճար մը պիտի ընէին ու աջակցէին որ ան գտնէր իր ազգային ձգտումներուն պսակումը»։

2. Եւրոպայէն ներմուծուած դաստիարակութեան եւ բրօբականտին ազդեցութենէն «բղխած մտայնութեան բերմամբ այլ եւս անհանդուրժելի կը դառնային առեւանգումի կամ հարստահարութեան դէպքեր, որոնք նախապէս ալ տեղի կ՚ունենային առանց սակայն մեծ յուզումներ պատճառելու։ Ու յեղափոխական շարժումը սնունդ կը գտնէր նմանօրինակ պատահարներու մէջ»։ Պիտի հասկնալ, որ «բղխած մտայնութեան» կրողները մտաւորականներն են։ Առեւանգումի եւ

հարստահարութեան դէպքերը կամ պատահարները շատոնց գոյութիւն ունեցած են, բայց անոնք հետաքրքրութեան նիւթ դարձան միայն եւրոպական ազդեցութեան պատճառով՝ յեղափոխութեան բնաբանին տակ։ Ուրեմն, եւրոպական ազդեցութիւնը, այս առումով, «լաւ» բան մը պէտք է նկատել։ Բայց Թէքէեանի շարադրութիւնը կը շեշտադրէ «պատահար»-ներուն (առեւանգում եւ հարստահարութիւն) առաջնութիւնը իբրեւ յեղափոխական շարժումին աղբիւր։ Թէեւ բնագիրին մէջ ուղղակի ակնարկում չկայ, բայց դժուար չէ որսալ՝ որ Թէքէեան ըսել կ'ուզէ, թէ մտաւորականութեան նշանաբանները յեղափոխութեան մասին առեւանգումէ եւ հարստահարութենէ անդին չանցան, չբարձրացուցին խորքային հարցեր, օրինակ, եւրոպական ազդեցութեան փոխարէն յենուիլ սեփական գաղափարներու վրայ, դէպքային առանձին պատահարներու փոխարէն կեդրոնանալ մտաւոր ազատագրութեան վրայ, ինչպէս նաեւ խուսափիլ անպատասխանատու ու չծրագրաւորուած գործունէութիւններէ։ Ճիշդ է, անկախութեան կամ ինքնավարութեան «երազներ» ու «հեռապատկերներ» կը գտնուէին յեղափոխականներու մօտ՝ ինչպէս վերը յիշեց Թէքէեան (ուշադրութիւն դարձուր «երազներ» բառի գործածութեան վրայ՝ իր իմաստային պատրանքային ուղղուածութեամբ), բայց շեշտադրումները կը կատարուէին դէպքերու վրայ։ Կարծես յեղափոխութիւն-անկախութիւնը անհրաժեշտ էր առեւանգումներուն եւ հարստահարութիւններուն պատճառով։

3. Մտաւորականութիւնը չմտածեց՝ որ յեղափոխական գործունէութիւնը կրնայ բացասական դեր խաղալ, եթէ անիկա ծրագրաւորուած չըլլայ.

> ***Այն գաղափարը թէ՝ յեղափոխութիւնը դարման մը ըլլալէ աւելի ցաւ ալ կրնար ըլլալ, ոչ ոք ունեցաւ ու հայ մտաւորականութիւնը մասնաւորապէս՝ սխալը գործեց հետզհետէ հոսող արիւնին առջեւ կանգ չառնելու ու չմտածելու որ ամէն բանէ առաջ թիւ պէտք է ունենալ՝ ազատութիւն եւ ապահովութիւն ձեռք բերելու համար***[62]**։**

Այստեղ Թէքէեան նուրբ զգուշաւորութեամբ առաջ կը բերէ յեղափոխութեան ձախողութիւններուն խնդիրը. անիկա «դարման» մը ըլլալէ աւելի «ցաւ» մը եղաւ, իսկ մտաւորականութիւնը չուզեց քննարկել «հոսող արիւն»-ը։

Մտաւորականութենէն ետք, յեղափոխութեան մէջ ներգրաւուած միւսը տարրը հայ պուրժուազին էր։

Հայ պուրժուազին՝ «աշխատող, աւանդապաշտ եւ հայրենասէր», «սկիզբը դէմ չկեցաւ յեղափոխական շարժումին ու նոյն իսկ չափով մը նպաստեց այդ շարժման՝ առանց անդրադառնալու անոր հետեւանքներուն վրայ»։ Յետագային, «երբ հայ պուրժուազին տեսաւ ու հաստատեց այդ շարժումին աղէտաւոր հետեւանքները, ինք իր մէջ քրթմնջեց եւ բան մը չըրաւ հակազդելու նպատակաւ»։

Պուրժուազին, մէկ կողմէն կը քննադատէր յեղափոխութիւնը, միւս կողմէն

ոչինչ կ՚ընէր զարգացնելու համար հայ մշակոյթը, մինչդեռ միայն մշակոյթի միջոցով կարելի էր պատրաստել գիտակից այնպիսի հասարակութիւն մը՝ որ կարող ըլլար ինքնապատրաստուիլ, ինքնակազմակերպուիլ եւ դառնալ հաւաքականութիւն.

*Մինչ մէկ կողմէն ան կը քննադատէր յեղափոխութիւնը, իր պարտքն էր, միւս կողմէն, դրապէս գործել մամուլով, դպրոցով եւ այլ ձեռնարկներով սատարելու համար հայ մշակոյթային զարգացման ու յառաջդիմութեան, ուժ տալով այսպէս հայ մտքին զօրացման, որպէսզի ժողովուրդը գիտակցօրէն պատրաստուի ու իհարկէ իր ազգային ճակատագիրը կերտէ հաւաքական ուժով եւ զոհողութիւններով*[63]:

Յեղափոխութեան ծիրին մէջ Թէքէեան կը յիշէ Պոլսոյ երկու պատրիարքներ։ Մէկը Աշըգեան Պատրիարքն է, որ փորձելով կանխել անխոհեմ շարժումները, Հնչակեաններուն կողմէ 1894-ին ենթարկուած է անյաջող մահափորձի, որմէ ետք ստիպուած է հրաժարիլ։ Միւսը Աշըգեանին յաջորդած Իզմիրլեան Պատրիարքն է, որ թիկունք կանգնած է յեղափոխականներուն եւ 1896-ին աքսորուած Երուսաղէմ.

*Հազիւ հազ հայ առաջնորդ կղերին մէկ մասը ուզեց ազդարարել ժողովուրդին թէ պէտք էր ետ կենալ այդ ուղղութենէն որ վնասակար հետեւանքներ միայն կրնար ունենալ: Արդարեւ Աշըգեան Պատրիարք ջանաց հակազդել հետզհետէ ձեւ ստացող այդ շարժումին, անոր կանխահաս եւ չափազանց վտանգաւոր ըլլալը նախատեսելով: Իր յաջորդը սակայն, Իզմիրլեան Պատրիարք, ինքն ալ մին Ազգ. Սահմանադրութեամբ ոգեւորուած մեր եկեղեցական գործիչներէն, որոնք յեղափոխական շարժման մէջ կը գտնէին անոր լուծումը, ո՛չ խառնուածքը ունէր, ո՛չ ալ պէտքը կը զգար ժողովրդական հոսանքին դէմ ծառանալու: Իզմիրլեանի ներկայութիւնը պատրիարքական աթոռին վրայ, այնպիսի շրջանի մը յորում դեռ մեր ձեռքն էր մեր ճակատագիրը, վճռական եղաւ երբ նկատի առնենք իր պաշտօնական յարաբերութեանց մէջ թողած տպաւորութիւնը Սուլթան Համիտի, Թուրք կառավարութեան եւ Թուրք ժողովուրդին վրայ*[64]:

Պարբերութենէն կ՚երեւի, որ Թէքէեանի նախընտրութիւնը կ՚երթայ Աշըգեանին՝ զգուշաւորին, արիւնոտ հետեւանքներէն խուսափողին։ Միաժամանակ, գրելով որ «դեռ մեր ձեռքն էր մեր ճակատագիրը», ան կարելի կը դարձնէ Իզմիրլեանի ներկայութիւնը։ Բայց «ո՛չ խառնուածքը ունէր, ո՛չ ալ պէտքը կը զգար ժողովրդական հոսանքին դէմ ծառանալու», եւ իր աքսորումով ի չիք կը դառնայ այդ կարելիութիւնը։ Եւ իրապէս, 1896-ին արդէն շատերու համար տեսանելի էին յեղափոխութիւն-ապստամբութեան հետեւանքները։

Յեղափոխութեան վերջին հանգրուանը Թէքէեան կը դիտէ 1908-1915-ին։ 1908-ի Սահմանադրութեան ժամանակ հայ յեղափոխութիւնը «մեզ ֆիզիքապէս

եւ տնտեսապէս տկարացուցած էր արդէն»: Հայ յեղափոխութիւնն էր որ հայերուն տկարացուցած էր եւ ոչ թէ յեղափոխութիւնն էր որ տկարացած էր: 1908-1915-ին հայ յեղափոխականութիւնը ձախողեցաւ իր դերին մէջ երկու գլխաւոր պատճառներով.

1. Ներհայկական պառակտումները եւ բախումները.

[Հայ յեղափոխութիւնը] *իր պատճառած ներքին կռիւներով, վէճերով, այս կամ այն դասակարգին դէմ բացած պայքարներով կը շարունակէր տկարացնել հայ ժողովուրդի դիմադրական կարողութիւնը:*

2.

[Յ]*եղափոխական անունը միշտ կրող կազմակերպութեանց մէջ իր պահպանութեամբը եւ Թուրք կուսակցութիւններու հետ անոնց ունեցած յարաբերութիւններովը պատճառ դարձաւ որ Թուրքերը այն համոզումին գան թէ հայ կազմակերպութեանց մշտական նպատակը կը մնար անկախութեան տիրացումը: Այդ օրէն՝ Իթթիհատը վճռած էր իր ընելիքը եւ երբ համաշխարհային մեծ պատերազմը ծագեցաւ ու ան իր ձեռքերը ազատ զգաց՝ ուզեց հայկական խնդիրը լուծել հայութիւնը բնաջնջելով*[65]:

Կարելի՞ է որ երկու ազգայնական կուսակցութիւններու (ՀՅԴ եւ Իթթիհատ) նպատակները համապատասխանեն իրարու: Երկու կուսակցութիւններ՝ որոնք կը քարոզեն ազատութիւն, ան ալ միեւնոյն հողատարածութեան համար, ի՞նչպէս կրնան փոխհասկացողութեան գալ: Ազգայնականութեան մէջ ազգային *զիջումներ* տեղի չեն կրնար ունենալ, այլ միայն ազգային *առաւելութիւններ*: Երկու ազգային կուսակցութիւններ կրնան մրցիլ իրարու դէմ բայց չեն կրնար տարածութիւններ բաժնել իրարու միջեւ:

Հետաքրքրական է, որ Թէքէեանի համար 1908-ն է որ կը տանի դէպի 1915-ը: 1927-ին արդէն իրեն համար յստակ էր՝ որ 1908-ը այլեւս պէտք չէ նայիլ ազատութիւններու եւ սահմանադրութեան տարի օսմանեան պատմութեան մէջ, թէեւ ինք առաջիններէն էր որ տարուելով Սահմանադրութեան պատրանքէն 1908 Օգոստոսին վերադարձաւ Պոլիս:

«Ու աղէտը պատահեցաւ», կ'ըսէ Թէքէեան:

Ուրիշ յօդուածի մը մէջ Թէքէեան կը խօսի հայ յեղափոխականներու մարտիրոսութեան գաղափարին մասին: Դիտել կու տայ, որ տուեալ մարտիրոսութեան պարագային պատկերը աւելի կարեւոր դարձած է քան գործողութեան արդիւնքը: Մարտիրոսութեան ջատագովները ոչ միայն անձնապէս ուզած են մեռնիլ, այլ գրգռած են իրենց ազգակիցները եւս մեռնելու իրենց հետ՝ առանց նպատակի կամ տեսանելի արդիւնքի, այլ պարզապէս ինքնապատկեր մը ստեղծած ըլլալու համար: Ասիկա վնասակար քայլ մըն է[66]:

Յեղափոխութեան գաղափարախօսութիւնը վերածուած է մարտիրոսութեան, որուն ոչ նպատակը եւ ոչ ելքը ուսումնասիրուած է նախորօք.

*Երբ քիչ մը քննենք՝ պիտի համոզուինք թէ այս քառասուն տարուան «յեղափոխական» կոչուած մեր պայքարը ոչ թէ յաղթելու այլ ըստ էութեան մարտիրոսանալու համար մղուած պայքար մըն է: Ուզած ենք մեր մարտիրոսութիւնը, այսինքն գաղափարի մը համար զոհուելու մեր ընդունակութիւնը ցոյց տալ աշխարհի՝ որպէս զի աշխարհը մեզ ազատէ գերութեան տառապանքէն: Կարելի չէ հակառակը պնդել եւ ըսել՝ յուսացած ենք մենք մեր ուժովը թօթափել Թուրքիոյ լուծը մեր հայրենիքին վրայէն: Մեր «յեղափոխական» կուսակցութեանց վարիչները, գոնէ, ունեցած չեն այդ յոյսը: Բայց գործած են այնպէս՝ որպէս թէ ունեցած ըլլային եւ զայն ներշնչած են ժողովուրդին: Մարտիրոսութեան անսահման սէրն ու վարժութիւնը զոր տուած են անոր՝ կարելի էր տալ միմիայն այդ յոյսն ալ միասին տալով: Դիտելի է որ «մեր հայրենիք»ին, «Թշուառ, անտէր եւ մեր Թշնամեաց ոտնակոխ», որուն շղթաները կոտրել կ'ուզէինք, սահմաննե՛րն անգամ որոշած չէինք մեր մտքին մէջ՝ երբ զայն ազատագրելու համար զէնք էինք առած: Կը գոհանայինք «վեց վիլայէթներ» անորոշ բացատրութեամբ՝ փոյթ չընելով որ այդ վեց վիլայէթները կը պարունակեն ոչ-հայկական մեծատարած հողեր ալ եւ չեն պարունակեր հայկական Կիլիկիան[67]:*

Խնդիրը ոչ թէ մարտիրոսութիւնն է, այլ անոր շահագործումը.

*Դնե՛նք մեր խնդիրը այսպէս. – Կորսնցուցած էինք մարտիրոսութեան վարժութիւնը: Մենէ ոմանք ուզեցին մեզի տալ այդ մասին գործնական դաստիարակութիւն մը: Անոր գործնական արդիւնքը տարբեր եւ աւելի ծանրակշիռ եղաւ քան ինչ որ կ'սպասէին ամէնքը: Բայց դեռ ունինք վարիչներ՝ որոնք գոհ են անոր բարոյական արդիւնքէն եւ կը կարծեն թէ այդ արդիւնքը շահ մըն է որ կը փոխարինէ ֆիզիքական եւ նիւթական արդիւնքին վնասը: Իսկ իբրեւ լուծում, անոնք կը խորհին, յենլով այդ բարոյական շահին վրայ, թէ կարելի է ու պէտք է շարունակել զոհաբեր կռիւը, թէ զայն շարունակելով՝ կրնանք յաղթանակը տանիլ եւ կրնանք մեր անցեալ ու ապագայ մեծ վնասները դարմանել աւելի հեռաւոր ապագայի մը մէջ մեր ձեռք բերելիք մեծ շահով...[68]:*

Թէքէեան համոզուած է՝ որ յեղափոխութեան մը թշնամիներն են քաղքենի դասակարգն ու քաղքենիական ոգին: Քաղքենիական ոգիին պատճառով անյաջողութեան մատնուեցան 1890-ականներու ապստամբական շարժումները՝ որոնք չենք կրնար յեղափոխութիւն անուանուիլ: Քաղքենիական ոգին էր որ ետ մղեց յեղափոխական ոգին, խոչընդոտեց անոր սլացքը եւ դիմադրութիւնը դարձուց կրաւորական.

*Իր* [իմա՝ յեղափոխութեան, Հ.Ա.] *Թշնամիները անոնք չեն միայն որոնց դէմ կը կռուին յեղափոխականները՝ զանոնք զինաթափ ընելու եւ անոնց ներկայացուցած ու*

*պաշտպանած հին բաներուն փոխարէն նորերը հաստատելու համար. իր մեծագոյն թշնամիները անո՛նք են՝ որոնք զինք որդեգրած ըլլալ կը յաւակնին բայց գործի անցնելու համար կը վարանին կը տատանին եւ իրենց խոհեմութեան, զգուշաւորութեան եւ ուրիշ նման առաքինութիւններու յուշածումով գործողները կը ջլատեն:*

*Առհասարակ, քաղքենիական ոգին է՝ որ զայն ամենէն շատ կը հալածէ կամ իր կրաւորական դիմադրութեամբը կ'աշխատի խոչընդոտ հանդիսանալ յեղափոխական ոգիին արշաւին: Եւ քաղքենին, դժբախտաբար, կ'ապրի երբեմն քով քովի յեղափոխականին հետ միեւնոյն անձին մէջ, որմէ ալ յառաջ կուգան, հետեւաբար, յեղափոխութիւններու ամենամեծ ձախողանքները յեղափոխականներո՛ւ երեսէն:*

*Ա՛յն պատճառով որ մեր վերջին ապստամբական խլրտումը – սխալմամբ «յեղափոխական» կոչուած եւ հիմա իսկ իբրեւ «շարժում» յիշուած – վրիպեցաւ, մենք, այդ վրիպումը վերջնականապէս հաստատուելէն ասդին ամէն օր քիչ մը աւելի կարծէք, կ'ուծանանք եւ կը հեռանանք յեղափոխական ոգիէն, փոխանակ զայն թարմացնելու եւ ծառայեցնելու հոն ուր պէտք է[69]:*

## ԱՂԷՏ

Աղէտ, ապա Մեծ Եղեռն, ապա Ցեղասպանութիւն: Ասոնք ենք 1915-ի ողբերգական իրադարձութիւններուն պատմականօրէն յաջորդական անուանումները: Ինչպէս Մարք Նշանեան կը մեկնաբանէ, գլխագիր Աղէտը՝ անսահմանելին, դարձաւ գլխագիր Ցեղասպանութիւն՝ սահմանելի[70]: Սահմանելի՝ ՄԱԿ-ի հինգ կէտերուն միջոցով:

Արդարեւ, անսահմանելիի ոլորտին մէջ միայն կարելի է կարդալ Յակոբ Օշական, Զապէլ Եսայեան եւ Աղէտի միւս գրողները:

Թէքէեան կը շեշտէ՝ որ 1940-ականներուն հայութիւնը Աղէտի վնասուածքին տակ կ'ապրէր տակաւին եւ կը փորձէր չյիշել իրադարձութիւնը.

*Դեռ շատ մօտ ենք այդ թուականին եւ դեռ մէ՛ջն ենք անոր յաջորդող ահաւոր շրջանին՝ կարենալու համար կատարելապէս ըմբռնել անոնց իմաստը: Կ'ապրինք որպէս թէ պատահած չըլլային այդ դէպքերը, հազիւ հիմա տարին անգամ մը զանոնք յիշելով, եւ շատ ալ չուզելով յիշել զանոնք...:*

*Ու անհրաժեշտ է, թերեւս, որ այսպէս ըլլայ: Որպէսզի կարենանք, իբրեւ ժողովուրդ, չընկճուիլ մեզ հարուածող աղէտին ծանրութենէն, պէտք է երկար օրեր մոռնանք զայն, մխիթարուած՝ յոյսի ցանցառ եւ տկար նշոյլներով, եւ միայն երբեմն անդրադառնանք պատահածին..., նորէն աւելի քիչ զգալով անոր մեծութիւնը քան ինչ որ պիտի ընէ դպրոցական տղայ մը, ասկէ յիսուն կամ հարիւր տարի վերջ[71]:*

1915-ը ապրած բանաստեղծներ տասնամեակներ շարունակ ստեղծագործած են Աղէտի արժէքներով՝ վէրք, թախիծ, խորհուրդ եւ բողոք, ինչպէս կը բացայայտէ Պ. Խ. Պ. Վէմեանի *Երիցուկի թերթերը*.

*Քերթողը անցած է Աղէտին մէջէն եւ անոր վէրքերը կը կրէ դեռ իր հոգիին վրայ: Այդ կ'ըսեն իր երգերը, մինչեւ անգամ անո՛նք որոնց նիւթը տարբեր է: Իր թախիծը, խորհուրդն ու բողոքը՝ կա՛մ կուգան ուղղակի Աղէտէն եւ կամ հակազդեցութիւն մըն են անոր դէմ*[72]:

Վահան Թէքէեան կ'ուզէ անսահմանելիին իմաստ մը հաղորդել, անոր տալ հանգրուանում մը: Այս հանգրուանումը ներկայէն դէպի ապագայ շարժող ժամանակն է: Ան կը գրէ՝ թէ Նահատակաց Օրը պէտք է ազգովին տօնենք, պայմանով որ «*մեռելները մեզի չտիրեն* այլ *մենք ողջերս տիրենք մեռելներուն*»[73]:

Ի՞նչ կը նշանակէ: Թէքէեան կը բացատրէ.

*Այսպէս, խորհելով մենք մեզի, մենք ալ պէտք է աւելի շատ խորհինք ներկային քան անցեալին, եւ աւելի շատ ապագային քան ներկային:*

*Յետոյ, խորհելով անցեալին ու ներկային, պէտք է աւելի շատ՝ ապագային նկատումով կամ ապագայի հետ յարաբերութեամբ գործածենք մեր մտածումը նոյնիսկ այդ պահուն, սա՛ յստակ պատճառով՝ որ չենք ուզեր մեր ապագան նման ընել մեր ներկային:*

*Բայց ճիշդ այդ նմանութիւնը չբաղձալնուս, վաղը այսօրէն տարբեր ուզելնուս համար է՝ որ այսօրը պէտք է ճանչնանք իր բացերովն ու իր սխալներովը եւ անոնց լրացումն ու սրբագրութիւնը փնտռենք վաղուան համար:*

*Անցեալը մեզի կ'օգնէ այս աշխատանքը կատարելու, եթէ չափով գայն գործածենք, եթէ անոր դիմենք աւանդութեան եւ վիճակի զօրութիւնը ստանալու համար իրմէ, վճռապէս որոշած՝ գայն չկրկնել երբեք այլ ստեղծել, այլ նոր կեանքի նոր միջոցները հնարել միշտ*[74]:

Ի՞նչ իմաստ ունի Նահատակաց Տօնը նշել՝ եթէ ազգը կը շարունակէ մեռնիլ եւ չենք կրցած դաս առնել անցեալէն.

*Նահատակաց Տօնն ալ հետզհետէ կը դառնայ առիթ մը նոյն սնամէջ, պայմանադրական խօսքերը կրկնելու որոնք կ'ըսուին Ծնունդին, Վարդանանցին եւ Զատկին եւ որոնց անփոփոխելի յանկերգն է «Այս ազգը չի մեռնիր՝ քանի որ... կը մեռնի»*[75]:

Եկեղեցական յուշատօնը մեռածներուն համար է, աշխարհիկը՝ ողջերուն.

*Եկեղեցական եւ աշխարհիկ յուշատօնին միջեւ սա էական տարբերութիւնը կայ, ըստ իս. առաջինը՝ աւելի մեռածին կամ մեռածներուն, երկրորդը՝ աւելի ողջերուն համար է: Ըսել չէ որ պարտաւոր չենք ընել, եւ թէ հաղորդակցիլը հոգիներուն հետ՝ – նահատակներու, հերոսներու կամ պարզապէս արդար, ազնիւ դատի մը ակամայ զոհերու հոգիներուն հետ*

*հաղորդակցիլը – չի բարձրացներ մեր հոգիները։ Ըսել է միայն՝ որ եկեղեցական արարողութիւնը կը ծառայէ կրկնութեան բարիքը թէ՛ լիշուողին եւ թէ լիշողին համար ապահովելու, մինչ աշխարհիկ արարողութիւնը ազատութիւն կուտայ քննելու դէպքերը, նոր մտածում բերելու անոնց քննութեանը մէջ եւ նոր օգուտ մը՝ եթէ կարելի է՝ անկէ քաղելու։ Պայմանո՛վ, անշուշտ, որ ասոր պահանջքը զգալէ զատ՝ ասոր անհրաժեշտ կարողութիւնն ու խղճմտութիւնը ունենան աշխարհիկ տօնը կատարողները*[76]*։*

Հայկական Աղէտը նաեւ առիթ մըն է մեզի զգալու ուրիշներու ողբերգութիւնները։ Համաշխարհային Երկրորդ Պատերազմին արտայայտուած այս միտքը կը միտի համակեցական դիրք բռնել բոլոր զոհուողներուն հանդէպ, նոյնիսկ եթէ մեր Աղէտը գործադրածներու ճամբարէն ըլլան անոնք։ Հայերուն եւ ուրիշներուն վիշտն ու կսկծանքը կը նոյնանան.

*Ձենք կրնար, երբ այսօր կը պահենք սուգը մեր անցեալի մեծ Կորուստին, չանդրադառնալ ուրիշներու օրըստօրէ մեծցող կորուստներուն, անոնց վիշտին եւ կսկծանքին՝ որոնք կը չարունակուին։ Եւ հաւասարապէս թէ՛ մեծ եւ թէ փոքր ազգերուն, անո՛նց որոնցմէ պահանջատէր ենք եւ անո՛նց (ինչպէս Յունաստանը) որոնց երախտապարտ ենք իրենց մեզի ընծայած եղբայրական կարեկցութեան համար, կ՚ուղղենք մեր յուզուած մտածումը, մաղթելով որ շուտով դադրի մայրերու եւ կիներու արցունքը, որ աւելի չբազմանայ որբերու թիւը ամենուրեք եւ աշխարհ գտնէ իր հաստատուն եւ արդար խաղաղութիւնը*[77]*։*

# ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ

## 1. ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ ԻԲՐԵՒ ՀԱՆԳՐՈՒԱՆ

Համաձայն Թէքէեանին, Նոյեմբեր 29-ը հանգրուանային թուական մըն է, քանի որ հայ ազգը ազատեց կորուստէ եւ առաջնորդեց դէպի պատմական նոր դարաշրջան.

*Հայաստանի խորհրդայնացման տարեդարձը պէտք է ընդունիլ իբրեւ Հայ Ազգին վերջնական կորուստէ ազատման տարեդարձը։*

*Եթէ կարելի էր անոր յաջորդող առաջին մէկ երկու տարիներուն դեռ չտեսնել այս ճշմարտութիւնը որովհետեւ իր ընդգրկած Խորհրդային ռէժիմը եւ իր մեծ պաշտպանդաշնակից Խորհրդային Ռուսաստանը դեռ իրենց ծայրայեղութիւններովը միայն ծանօթ էին Արեւմուտքին, անկէ ի վեր չմնաց բարեմիտ Հայ մը որ միեւնոյն ատեն արթնամիտ Հայ մը ըլլար եւ չճանչնար վերի բացորոշ իրականութիւնը։*

*Կրնայինք եւ կրնանք մինչեւ այսօր համամիտ չըլլալ անո՛նց որոնք Խ. Հայաստանը վարող ընկերային-քաղաքական դրութիւնը կը նկատեն միակ իտէալ կերպը մարդերու*

*կառավարութեան: Զենք կրնար ուրանալ, սակայն, որ այդ դրութիւնը, ազգային եւ միջազգային գետնի վրայ, ժողովուրդներու բարօրութեան ու ապահովութեան տեսակէտէն իրագործեց քանի մը մեծ բարիքներ, որոնցմէ ամենէն քիչ օգտուողը մեր Հայաստանը չեղաւ: Ուրի՛շ խնդիր, որ ճիշդ ըմբռնուած եւ ճիշդ գործադրուած ռամկավարութիւնը կուտայ ինքնին, պէտի տայ մեր համոզումով եւ ակնկալութեամբ, նոյն լաւ արդիւնքները՝ առանց հոս անոնց ընկերացող կարգ մը ուրիշ արդիւնքներուն որոնք լաւ չեն, ըստ մեր համոզման դարձեալ*[78]:

Խորհրդային Հայաստանը հայութեան պատմութեան անհրաժեշտ հանգրուանն է, որուն վրայ կարելի է հիմնուիլ մտածելու, զգալու եւ գործելու համար: Այն տարածութիւնն է՝ ուր հայերը մաս կը կազմեն կենդանի մարդկութեան եւ հայը կը շարժի դէպի շրջապատը, մինչդեռ արտասահմանի հայութիւնը անշարժ կը մնայ ինքն իր մէջ: Այս առումով, Հայաստանի հայերը կը շարունակեն Թուրքիոյ հայերուն ընդհատուած ընթացքը.

*Խ. Հայաստանը մեծ առաւելութիւն մը ունի արտասահմանի վրայ. Հայերը հոն կը զգան՝ թէ մտածող ու գործող մարդկութեան մէկ մասն են իրենք:*
*Այս զգացումը ատենօք ունէին Թուրքիոյ Հայերն ու անոնց արտասահմանեան ընձիւղներն ալ կ'ոգեւորուէին անով, անոր շնորհիւ բան մը կ'ընէին ու բան մը կ'արժէին. այսօր ոչինչ կ'ընեն ու ոչինչ կ'արժեն՝ որովհետեւ սուզուած են ու կը տապլտկին իրենք իրենց մէջ, անհատաբար եւ հաւաքաբար*[79]:

Խորհրդային Հայաստանը կեանք է, հոգածութիւն եւ քանակ, ուրիշ հարց՝ թէ անոր ուղղութիւնը պէտք է ուրիշ ըլլար.

*Հոն՝ Հայաստա՜ն, միա՛կ Հայաստանը (չեմ տկարանար կցելու «դժբախտաբար» մը) որ իրաւունք ունի այսպէս կոչուելու եւ կը կոչուի այսպէս ամէնքէն, միակը որ կ'ապրի եւ կ'ապրեցնէ, կը հոգայ եւ կը հոգացուի, կը հաշուէ եւ կը հաշուուի*[80]:

Խորհրդային Հայաստանը պետութիւն մըն է: Եթէ կը գտնուի պետութիւն մը որ իր բանակին, պետական կառոյցներուն համար ընտրած է դրօշակ մը, ուրեմն անիկա բոլոր հայերուն կը պատկանի: Անտեղի է երբ հայութեան հատուած մը կը մերժէ Խորհրդային Հայաստանի դրօշակը եւ կ'որդեգրէ իր սեփականը իբրեւ հայութեան խորհրդանիշ.

*Արդ, դրօշակ մը որ չերեւնար իր անունը կրող երկրին ո՛եւէ մէկ հաստատութեան վրայ, որ չառաջնորդեր անոր բանակը եւ կը գոհանայ դուրսը, օտար իշխանութիւններու երբեմն արգահատալից եւ երբեմն հեգնական անտարբերութեանը ներքեւ իր պարզութիւնը սրահներէ ներս, այդպիսի դրօշակ մը կեղծ դրօշակ մըն է միայն, ինչպէս որ իրականութեան*

*մէջ կեղծարարներ են ամէն անոնք՝ որ կ՚ուզեն իբրեւ ազգային դրօշակ զայն «անցընել», – առնուազն ա՛յնքան կեղծարար որքան արժէքազրկուած (տէմոնէթիզէ) դրամ մը իբրեւ օրուան դրամ քշել ուզողներ*[81]:

## 2. ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ՀԱՅԱՍՏԱՆ ԵՒ ԱԶԳԱՅՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ

1931-ի դրութեամբ, ազգայինի առումով խորհրդային համայնավարութեան մէջ հակասութիւն մը կը գտնէ։ Համայնավարութեան նշանաբանն է ազգասիրութեան դէմ յարձակումը, ազգասիրութիւնը ընդունելով իբրեւ ամբողջավարական կեցութիւն։ Միւս կողմէն, սակայն, նոյն խորհրդային համայնավարութիւնն է որ իր սահմաններուն մէջ ընդունեց, այսօրուայ եզրաբանութեամբ, ազգային պետութիւններու (nation-state) դրութիւնը (Թէքէեանի բառերով՝ «ազգերու ինքնորոշման սկզբունքը», մինչդեռ «ազգային պետութիւն» հասկացողութիւնը՝ որ տակաւին չէր տարածուած Թէքէեանի ժամանակ, աւելի յստակօրէն պիտի արտայայտէր ներկայացուած միտքը)։ Ասիկա նշանաբանի եւ գործադրութեան միջեւ խզում մըն է, որ կը բացայայտէ խորհրդային առաջին շրջանի գաղափարախօսութեան հակասութիւնը.

*Յարձակո՛ւմը կոյր ազգասիրութեան դէմ, ո՛չ կեղծ եւ ոչ ալ մոլի՝ այլ կոյր ազգասիրութեան դէմ, որ աւելի վնասակար է քան միւսները: Այս յարձակումը պէտք է վաղուց սկսած ըլլար լուրջ ու գիտակից կերպով, եւ կ՚ըլլար սկսած՝ եթէ Համայնավարութիւնը գոյութիւն չունենար, ըսել կ՚ուզենք՝ եթէ Հայ Համայնավարները, բուռն ինչպէս ամէն տեղ եւ ինչպէս ամէն նորադարձ, փոխանակ կեղծ, մոլի եւ կոյր ազգասիրութիւնները որոշելու եւ անոնց դէմ պայքարելու, իրենց յարձակման – նոյնպէս կո՛յր – առարկայ ըրած չըլլային ամբողջ ազգասիրութիւնը, լաւագո՛յնը դէշին հետ. ասով կը հետեւէին ընդհանուր սխեմի մը, աւելի ճիշդ՝ կարգախօսի մը, որուն պարտաւոր էր հետեւիլ բովանդակ կուսակցութիւնը իր համաշխարհային բրոբականտին յաջողութեանը համար՝ բայց ոչ հեռու է լրիւ գործադրուելէ հոն ուր ան արդէն իր ձեռքը առած է իշխանութիւնը, ինչպէս Խ. Միութեան մաս կազմող իւրաքանչիւր հանրապետութեան մէջ. ընենք անոր դէմ ուրիշ ամէն քննադատութիւն, եթէ կ՚ուզենք, բայց չիշենք որ ազգերու ինքնորոշման սկզբունքը հոն է որ առաջին անգամ կիրարկուեցաւ առանց արտաքին ճնշման եւ թէ հոն է որ այսօր իւրաքանչիւր ազգ – մէջը ըլլալով հայ ազգը – կ՚ապրի իր սեփական մշակոյթով: Եւ եթէ այս չէ ազգասիրութեան հիմնական ընմբռնումը՝ չենք գիտեր թէ ի՛նչ է եւ ո՛ւր կը գտնուի ան*[82]:

Անմիջապէս նշեմ, որ խօսքը խորհրդային համայնավարութեան մասին է, որ շատ կողմերով կը տարբերէր դասական մարքսիզմի համայնավարութենէն։ Մարքս ազգերու *դէմ* պայքարելու կարգախօսներ չունէր ոչ ալ ազգերը վերացնելու միտում։ Իր քննադատութիւնը իշխանական ուժի եւ դրամագլուխի արդիւնք եղող ազգայինի մասին էր, բան մը որ հանդէս եկած է դրամատիրութեան հետ՝ էական տարբերութիւն ունենալով նախադրամատիրական շրջանի բնական,

փորձառութեան վրայ հիմնուած ազգայինէն[83]:

## 3. ԽՈՐՀՐԴԱՀԱՅ ԳՐԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Խորհրդահայ պետութեան մէջ կը ծաւալուի հայ գրականութիւնը։ 1937-ին Թէքէեան կ'անդրադառնայ այդ գրականութեան։ Կարեւոր է թուականը, քանի որ այդ ժամանակ գագաթնակէտին հասած էր մտաւորականներուն սթալինեան մաքրագործումը։

Յօդուածը կը կառուցէ յաջորդական փուլերով։ Առաջին միտքը կապուած է գրողի ապրուստի եւ գրական գործունէութեան ապահովութեան հետ, զոր կ'երաշխաւորէր խորհրդային պետութիւնը.

*Երջանի՞կ էին Խ. Հայաստանի գրողները: Պետութիւնը կ'ապահովէ՞ր ոչ միայն իրենց գործերուն հրատարակութիւնը այլ եւ իրենց ապրուստը, արձակուրդը, ուսումնասիրութեան միջոցները, ծերութեան տարիները: Հապա այն յարգա՞նքը զոր անոնք կը վայելէին իշխանութիւններէն ու ժողովուրդէն հաւասարապէս: Երբեք հայ գրականութիւնը առարկայ եղած չէր՝ այսքան խնամքի եւ գուրգուրանքի: Եւ ահա թէ ի՛նչու ան կը ծաղկէր ու պիտի շարունակէր ծաղկիլ, վստահապէս...*[84]:

Դժուար չէ որսալ, որ այս տողերուն մէջ Թէքէեան կը հակակշռէ Սփիւռքահայ գրողը, կամ անձնապէս ինքզինքը, խորհրդահայ գրողին՝ ապահովութեան տեսանկիւնէն, ապահովութիւն մը, որ սփիւռքահայ գրողը չունէր այդ ժամանակ, եւ առաւել եւս չունի այսօր։ Թէքէեանի անձնական փորձառութիւնն է որ կը խօսի այս տողերուն մէջէն։

Բայց խորհրդահայ ապահովութիւնը ունէր իր գինը.

*Գիտէինք թէ գրողին գտած այս ապահովութիւնը պայմանաւորուած էր իր գրելու ազատութեան քիչ կամ շատ կաշկանդումովը: Պետութիւնն ըլլալով միակ հրատարակիչը, գրուածքը պէտք է անոր բովէն անցնէր, պէտք է անոր հաճելի ըլլար, պէտք չէ որ դէմ երթար անոր ուղղութեան եւ սկզբունքներուն, պէտք է նոյնիսկ գովէր եւ փառաբանէր զանոնք: Թեթեւ չէր այս պայմանը, փոքր չէր անպատեհութիւնը. բայց, կ'ըսէինք, քանի որ գրողը կ'օգտուի ռէժիմին իրեն ընծայած առաւելութենէն եւ կը տեսնէ, միւս կողմէ, թէ երկիրն ու ժողովուրդն իրօք անոր շնորհիւ կ'ապրին եւ կը բարգաւաճին, ան, իրականութեան մէջ, շատ տարբեր մտածելու չէ իշխանութիւններէն եւ իր գրելու բացարձակ ազատութեան կապտումը շատ ճնշելու չէ իր վրայ: Բացառութիւն էր պարագան Դաւիթ Անանունի, զոր կը յարգէինք եւ կը սիրէինք, որուն երկարատեւ աքսորին եւ լռութեան վրայ թէեւ կը ցաւէինք խորապէս բայց, անկեղծօրէն, չէինք կրնար պահանջել որ ընդդիմադիր գրագէտին իրաւունք տրուի իր ուզածին պէս խօսելու եւ գրելու՝ երկրի մը մէջ որ յեղափոխական տիքթաթիւռով կառավարուող երկիրներու միութեան մը մէկ մասը կը կազմէ*[85]:

Այստեղ երկու գաղափար կ'արտայայտէ։ Առաջինը, եթէ պետութեան նպատակը իրապէս հասարակութեան բարեկեցիկ կեանքի ապահովումն է, ապա ընդունելի է գրողին կողմէ որոշ զիջումներ կատարել։ Երկրորդ գաղափարով Թէքէեան ըսել կ'ուզէ՝ որ կացութիւնը այդպէս չէ, քանի որ «յեղափոխական տիքթաթիւռ»-ով կառավարուող երկիրներուն մէջ ընդդիմութիւն գոյութիւն չի կրնար ունենալ։ Անհատական ընդդիմութիւնը նոյնիսկ անիմաստ է, քանի որ անիկա պիտի ջախջախուի, ինչպէս Դաւիթ Անանունի պարագան։ «Յեղափոխական տիքթաթիւռ»-ը աւելի ուժեղ է քան անհատ ընդդիմադիրը։

Խնդիրը, սակայն, ընդդիմադրութենէն շատ աւելի հեռու կը գտնուի։ Մտաւորականներուն դէմ պաշտօնական ամբաստանութիւնները արդէն ոչ մէկ կապ ունէին զիջումներու եւ պետութիւնը կերտելու ըմբռնողականութեան հետ.

*Ամենադժբախտ բանը այն է՝ որ ինչպէս անցեալ տարի, այս տարի ալ ամբաստանութեան բրոսէտիւռը կը սկսի շատ անբարոյ միջոցով մը. գրողներու միութեան նիստին, անդամներուն իրար իբրեւ նացիոնալիստ-Թրոցկիստ մատնանշումովը ու մատնանշուածներուն «խոստովանելու» հարկադրանքովը*[86]:

Աստիճանաբար Սփիւռքի համար աւելի ստոյգ կը դառնային սթալինեան բռնաճնշումները գրողներուն եւ գրականութեան վրայ։ Թէքէեանի լեզուն կը դառնայ աւելի խիստ։ Մինչ ժամանակին Խորհրդային իշխանութեան վերաբերմունքը գրականութեան նկատմամբ կը համարէր «բարեշրջութիւն», այժմ արդէն զայն կ'որակէ «յոռեշրջութիւն»։ Մինչ ժամանակին գոհ էր գրողներուն տրուած կեանքի եւ ստեղծագործական ապահովութենէն, այժմ արդէն կ'արձանագրէ վտանգը անոնց կեանքին հանդէպ, կը տեսնէ գրական տագնապ մը.

*Երկար ատեն դուրսերը Թափառելէ ետք Հայ Գրականութիւնը վերադարձեր ու ապաստաներ էր իր ծննդավայրը Հայաստան, ուր հակառակ փչող խիստ հովին՝ ան սկսեր էր ուռճանալ թէ՛ բնական եւ թէ արուեստական պայմաններով:*

*Այնքան մեծ էր իր վերագտած բնական պայմաններուն ուժը, որ արուեստական պայմանները չէին յաջողեր զինք այլասերել: Արուեստական պայմաններ էին՝ օրուան իշխանութեան օգնութիւնը գրողին, տուած ներշնչումը գրողին, դրած արգելքը՝ գրողին ազատութեան վրայ: Գրողներու ստուար մեծամասնութիւնը շատ չէր նեղուեր, սակայն, այս խնամակալութենէն, որովհետեւ անկեղծօրէն որդեգրեր էր այդ իշխանութեան սկզբունքները: Գրելու ազատութեան սահմանափակումը, մասնաւորապէս, գրեթէ չէր ճնշեր Խ. Հայաստանի մէջ ապրող հայ գրագէտին վրայ, որ գոհ էր ուրեմն իր վիճակէն՝ մինչեւ երէկ:*

*Այսօր, չեմ կարծեր որ գոհ ըլլան մինչեւ իսկ անո՛նք, որ բարոյական գիտակցութեան իրենց մէջ մէկ խաւարումին հետեւանքով, մատնանշեցին իրենց՝ ընկերները իբրեւ սահմանազանց օրուան իշխանութիւններուն ուշադրութեան: Անոնք կը մտածեն անշուշտ, որ ինչպէս երէկ գնահատուած այդ ընկերները այսօր կը դատապարտուին, այնպէս ալ վաղը*

*կրնայ նոյնը ըլլալ իրենց գործերուն եւ իրենց համար՝ երբ իշխանութեան մէջ ոգիի կամ անձի նոր փոփոխութիւն մը կատարուի:*

*Գալով մեզի, համակերպած էինք, հեռուէն գոնէ, որ տիքթաթիւրով կառավարուող երկրի մը մէջ գրականութիւնն ալ չվայելէ այն ազատութիւնը զոր ռամկավարութեան մէջ կը վայելէ: Համակերպած էինք, մինչեւ անգամ, որ Խ. Հայաստանն ալ, նման Խ. Միութիւնը բաղկացնող միւս երկիրներուն, ունենայ գրականութիւն մը «ձեւով ազգային եւ խորքով միջազգային», – թէեւ կը խոստովանիմ որ պարզ երեւցած այս սահմանումը ինծի կը թուէր աստեղագիտական խնդրէ մը աւելի բարդ եւ կնճռոտ, գրականութեան մէջ ձեւն ու խորքը որոշապէս իրարմէ բաժնելու անկարելիութեան եւ զատել կոչուած մարդոց աւելի եւս անկարելի անկողմնակալութեանը պատճառաւ: Համակերպած էին որ Արարատի շուքին տակ ծաղկող խորհրդային հայ գրականութիւնն ալ, իր տուած արշալոյսի կամ վերջալոյսի նկարագրութեանց մէջ անգամ յարձակումներ պարունակէ նախկին կարգերուն վրայ, գուցէ այդպէսով միջազգայնացնելու համար *խորքը* արշալոյսին եւ վերջալոյսին, որոնք այլապէս չափազանց ազգային՝ հայկական եւ արարատեան ոգի մը պիտի կրէին...:*

*Ասոնց եւ ուրիշ այս կարգի անպատեհութեանց համակերպած էինք, որովհետեւ իբրեւ գրագէտ կամ գրասէր խորհելէ առաջ – կամ խորհելէ անմիջապէս վերջը – իբրեւ հայ կը խորհէինք, եւ իբրեւ հայ՝ կը գտնէինք որ հայ ժողովուրդին փրկութիւնը, այսինքն անոր խաղաղ աշխատիլն ու ամփոփ աճիլն իր հայրենիքին մէկ մասին մէջ, աւելի կարեւոր էր քան իր գրականութեան ազատութիւնը, քան նոյնիսկ իր տեսական կամ իրական ընդհանուր ազատութիւնը: Կը բաւէր որ այդ գրականութիւնն ալ կար եւ կ՚օգնէր հայրենիքին զարգացման, մնացեալին համար ինքզինքնուս իրաւունք չէինք տար խստապահանջ ըլլալու, ա՛յն յոյսով մանաւանդ՝ որ բարեշրջութիւնը անպատճառ պիտի գար լայնացնել ազատութեան սահմանները, որ բարեշրջութիւնը չէր կրնար ուրիշ կերպ գալ:*

*Այսօր անգամ, երբ բարեշրջութիւնը չէ որ եկած է այլ յոռեշրջութիւնը եւ ազատութեան սահմանները ընդարձակուած չեն այլ սեղմուած, այսօր անգամ կը վարանինք, պէտք է վարանինք մենք՝ արտասահմանի հայերս, մեր երէկուան ուղղութենէն շեղելով հուր ժայթքելու ընդդէմ երկրին վարիչներուն, զանոնք ամբաստանելու եւ դատապարտելու այնպէս՝ ինչպէս կ՚ընեն ոմանք այնտեղ, գրողներուն հանդէպ:*

*Կը վարանինք եւ ի վերջոյ ինքզինքնիս կը զսպենք այդ ծայրայեղութեան մէջ իյնալէ՝ բայց ասիկա մեզի չարգիլեր ըսելու՝ թէ ի զո՜ւր քանի մը տասնեակ հայ գրողներ – լաւագոյնները Խ. Հայաստանի հայ գրողներուն – կը հալածուին ազգայնականութեան մեղքով, մարքսիզմի, լէնինիզմի եւ ստալինիզմի դէմ անհաւատարմութեան ամբաստանութիւններով. որովհետեւ՝ ոչ մէկ հայ գրագէտ կրնայ անոնցմէ պակաս ազգայնական ըլլալ եւ որովհետեւ՝ բոլոր *իզմերը*, որքան ալ անոնք տիրապետող ըլլան սա՛ կամ նա պահուն, ուրիշ բան չեն կրնար պահանջել գրագէտին քան ինչ որ *ինքնաբերաբար* կուտայ անոնց, – իր աւելի կամ նուազ խանդավառ համակրութիւնը երբեմն, իր չէզոքութիւնը յաճախ:*

*Որովհետեւ՝ գրականութիւնը աւելի մնայուն արժէքներու վրայ հաստատուած է քան քաղաքականութիւնը եւ այս պատճառաւ ան պէտք է ազատ ըլլայ այնքան մը եւ այնքան ատեն գոնէ՝ որ ան չի պայքարիր օրուան քաղաքական իշխանութեան դէմ եւ չի վնասեր*

*անոր: Առանց այդ ազատութեան՝ անուժ եւ անպէտ է գրականութիւնը, ու չեմ գիտեր ի՛նչու իշխանութիւն մը պիտի օգնէր դէռ անոր, ոեւէ բարիք պիտի սպասէր անկէ՝ իրեն ու իր վարած երկրին համար:*

*Բայց, սեղմումի այս աստիճանը եւ հալածանքի այս բացառիկ երեւոյթը բարեբախտաբար յատուկ չեն, այսօր, Խ. Հայաստանի միայն եւ անկախ չեն, բարեբախտաբար, ուրիշ սեղմումներէ եւ հալածանքներէ՝ որոնք կը տեսնուին ամբողջ Խ. Միութեան մէջ: Ասիկա մեզ կը յուսադրէ խորհելու՝ որ երբ հանդարտի Միութեան հսկայ զանգուածին ներկայ տագնապը, հայ գրականութիւնն ալ պիտի վերագտնէ Խ. Հայաստանի մէջ իր նախկին վիճակը գոնէ...*[87]*:*

1941-ին Թէքէեանի մտահոգութիւնը Խորհրդային Հայաստանի մտաւորականներուն նկատմամբ աւելի կը սրուի։ Միշտ ընդունելով ընթացող Երկրորդ Պատերազմին համար Խորհրդային Միութեան յաղթանակին անհրաժեշտութիւնը, կը դժգոհի տաղանդաւոր մտաւորականներուն լռութիւնէն եւ անյայտ կացութենէն՝ իբրեւ նմոյշ յիշելով Եղիշէ Չարենցի եւ Զապէլ Եսայեանի անունները, եւ կը պահանջէ անոնց վերադարձը։ Յիշենք, որ սթալինեան զտումի եւ Կուլակի քաղաքականութիւնները այդ ժամանակ տակաւին անյայտ էին դուրսի աշխարհին.

*Խնդրագի՛ր Խ. Հայաստանի եւ Խ. Միութեան իշխանութիւններուն ուղղուած՝ ըսելու համար թէ սրտատրոփ կը մաղթենք եւ կը յուսանք ամբողջ Միութեան վերջնական յաղթանակը իր մղած տիտանեան պայքարին մէջ, եւ միաժամանակ կը յիշենք մեր այն եղբայրներն ու քոյրերը որոնցմէ ձայն չկայ տարիներէ ի վեր:*

*Յիշելով՝ կը խնդրենք որ անոնց ներուի եւ անոնք կարենան իրենց երկրին ու իրենց ժողովուրդին մէջ ապրիլ վերստին ուրիշ ամէն մարդու նման, աշխատիլ եւ ստեղծել՝ ոչ թէ ուրիշի նման այլ իրենց սեփական ձիրքին եւ տաղանդին համաձայն:*

*Որովհետեւ, գիտեն ամէնքը ամէն տեղ, Խ. Հայաստանի եւ Խ. Միութեան մէջ նոյնքան լաւ որքան մենք այստեղ՝ թէ տաղանդ ունէին եւ ոմանք մեծ տաղանդ ա՛յն քանի մը տասնեակ մտաւորականները որոնք յանկարծակի լռեցին ասկէ քանի մը տարի առաջ եւ որոնց մասին գերեզմանային լռութիւն մը կը տիրէ, անկէ ի վեր, բովանդակ երկրին, անոր մամուլին եւ, կ'ըսեն նոյն իսկ, ժողովուրդին մէջ...:*

*Եթէ գիտնայինք թէ ի՛նչ է պատճառը որուն համար անոնք ենթարկուած կը մնան՝ այսքան ժամանակէ ի վեր՝ այդ ամենածանր պատիժին, պիտի չմխիթարուէինք, պիտի չհանդարտէինք, անշուշտ պիտի չընդունէինք կատարուած իրողութիւնը, բայց... ի՞նչպէս ըսել՝ գիտակցաբա՛ր պիտի տառապէինք, գիտակցաբա՛ր պիտի սպասէինք մեր ցաւին վերջաւորութեանը: Մինչդեռ հիմա, չգիտնալով թէ ի՛նչու սկսած է եւ մինչեւ ե՛րբ պիտի տեւէ անոնց կրած տանջանքը, կրկնապէս կ'զգանք անոնց վիճակին մեզի տուած կսկծագին անձկութիւնը:*

*Այսօր, սակայն, մենք այլեւս մտահոգուած չենք այդ «ի՛նչու»ով. այսօր, մենք այլեւս*

*չենք զբաղիր պատճառներով, մինչեւ անգամ չենք հարցներ թէ ո՛ւր են եւ ի՛նչպէս կ'ապրին Եղիշէ Չարենցներն ու Զապէլ Եսայեանները. կ'սպասենք միայն՝ որ եթէ դարձած չեն դարձուին անոնք ամենքը, խմբովին, բնականոն կեանքին, գան տեսնեն ու կրեն իրենց ժողովուրդին հետ այն պահուն մանաւանդ՝ ուր այդ ժողովուրդը մաքառելու վրայ է հոգիով եւ մարմինով իր հայրենիքին պաշտպանութեանը համար*[88]:

Հակառակ այս բռնաճնշումներուն եւ անկախ անոնցմէ, Համաշխարհային Երկրորդ Պատերազմի ընթացքին Թէքէեան բազմիցս կը պնդէ Խորհրդային Միութեան յաղթանակին կարեւորութիւնը հայ ժողովուրդին համար.

*Եւ ի՞նչպէս լաւ է՝ որ Հայկական պզտիկ Տէրութիւնը մղէ այսօր իր պայքարը՝ նա՛խ Խ. Միութեան միւս բոլոր ժողովուրդներուն հետ համախումբ եւ բոլորովին նո՛յն հոգիով, եւ յետոյ Խ. Միութեան դաշնակից Պետութեանց հետ նոյն ճակատին վրայ, ցեղերու խառնուրդի մը մէջէն՝ եթէ կ'ուզուի, բայց ամենքին հոգեկան բարձր միութեամբը՝ որ կռիւը շահելու մեծագոյն գրաւականն է*[89]:

## ՀԱՅԱՍՏԱՆ-ՍՓԻՒՌՔ ՅԱՐԱԲԵՐՈՒԹԻՒՆ

1929-ին Թէքէեան կը զանզատի Հայաստան-Սփիւռք յարաբերութիւններէն: Կը դժգոհի՝ որ Խորհրդային Հայաստանի համար Սփիւռքը (գաղութահայութիւնը) կը նոյնանայ դրամի հետ, մինչդեռ Հայաստան կը զլանայ իր գրականութիւնն ու արուեստը ղրկել Սփիւռքին՝ յանուն մշակոյթի եւ ոչ այլ նկատառումներու.

*Եւ դո՛ւք, Խ. Հայաստանի կառավարութի՛ւն, որ միայն կը պահանջէք գաղութահայէն, եւ ա՛յն ալ միայն դրամ, դուք որ կը յայտնէք թէ երկիրը կը վերաշինուի եւ արուեստներն ու գրականութիւնը կը զարգանան հոն, չէ՞ք կրնար գոնէ ղրկել գաղութահայուն այդ արուեստն ու գրականութիւնը որ իրն ալ են, ղրկե՛լ արուեստագէտները՝ եթէ երգող, նուագող, խաղացող կամ վարող են՝ ի հարկէ իրենց արուեստը միայն մեզի տալու համար եւ ո՛չ ուրիշ բան*...[90]:

## ԲԱՐԵԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Թէքէեան եղած է քննադատող մը բարեգործ մեծահարուստներուն.

*Բայց հարուստը կամ ունեւորը որ կրնայ տալ եւ չի տար իր կրցածը, միայն ցաւ մը չէ որ կը պատճառէ ազգին եւ միայն զրկանք մը չէ որ կը հասցնէ անոր ժամին եւ դպրատունին,*

*այլ եւ իր տուած անտարբերութեան գէշ օրինակովը կը թունաւորէ ժողովուրդը*[91]:

Ազգին ու կարօտեալներուն դրամական նպաստ ցուցաբերելը ազգային ու մարդկային պարտականութիւն մըն է՝ թէ՛ հարուստներուն եւ թէ՛ ոչ-հարուստներուն համար, քանի որ գաղութը պետութիւն մը չէ, հետեւաբար չունի պետութեան բնորոշ եկամուտներու լծակները: Եւ քանի որ բարեգործութիւնը պարտք մըն է, բոլորովին անտեղի է գովեստներ շռայլել եւ երախտագիտութիւններ յայտնել նոյնիսկ ամենամեծ գումարներ նուիրողին:

*Այս տողերը գրողը անոնցմէ է՝ որ Հանրային Հաստատութեանց, Հանրային կարօտութիւններու համար տրուած նուէրները վճարուած պարտքեր կը համարեն եւ իբր այդ կը նային նուէրին եւ նուիրատուին վրայ:*

*Այդպիսիները երբեք, հետեւաբար, հիանալու, գովեստներ շռայլելու եւ երախտագիտութիւններ յայտնելու տրամադիր չեն ո՛եւէ գումարի համար որ կը նուիրուի, որքան ալ մեծ ըլլայ այդ գումարը… յարաբերաբար:* […]

*Ամէն տեղ, բայց մեր մէջ է մանաւանդ՝ որ Հանրային Հաստատութեանց նուիրելը կը նշանակէ պարտք հատուցանել, իր պա՛րտքը իր ազգի՛ն հանդէպ: Արդարեւ ուրիշ ազգեր, իբրեւ Տէրութիւն, կը գանձեն, զանազան ուղղակի կամ անուղղակի ձեւերով, իրենց ազգայիններէն եւ նաեւ ոչ-ազգայիններէն. ա՛յն ամէնը որուն պէտք ունին իրենց ամէն կարգի պահանջներուն համար, եւ ատկէ զատ ալ՝ նուէրներ: Մենք եւ մեզի պէսներն են միայն, որ ազգի մը պահանջները ունենալով հանդերձ՝ չեն կրնար սակայն ստիպել իրենց ժողովուրդը որպէսզի հայթայթէ անոնց գոհացումին միջոցները, իւրաքանչիւր անհատ իր կարողութեան համաձայն, ինչպէս Տէրութիւն կազմող ազգերու մէջ: Այս պատճառաւ, բարոյապէս տուրք են մեր բոլոր Հանրային նուէրները եւ մենք պէտք է այս կերպով նայինք անոնց վրայ:*

*Ցաւալի է որ մեր քաղաքացիական դաստիարակութիւնը դեռ այսօր հասած չէ ա՛յն կէտին՝ ուր նուիրատուն եւ նուէրընկալը իրարու նային իբրեւ քոռէքթ, պատուաւոր պարտապաններ եւ առնելիքւորներ: Մեր մէջ, նուիրատուն միշտ շնորհ մը ընել կը կարծէ եւ նուէրընկալ ազգը, յանձին իր փոխանորդներուն կամ ինք զանգուածովին, միշտ կը փղձկի եւ յուզումով կ'ստանայ ու կ'արձանագրէ ամէն մէկ նուէր որ իր ակնկալածէն քիչ մը վեր է, կամ իր ակնկալածն է կամ նոյն իսկ մօտ է իր ակնկալածին, մէկ խօսքով՝ մուրացկանին ձեռքը տրուած մանրուքը չէ ան…*[92]:

Անընդունելի ըմբռնում մըն է, որ եթէ կայ տուող, ուրեմն պէտք է ըլլայ նաեւ տուողին պարտական առնող: Անընդունելի պարտադրանք է, որ առնողը՝ կարօտեալը, ենթակայ մնայ տուողին, մինչ տուողը դառնայ *աւելի* ազգասէր: Դասակարգային արհեստական շերտաւորում մը կը ստեղծուի միեւնոյն գաղութի անդամներուն միջեւ՝ հայրենասէր տուողին եւ պարտական առնողին միջեւ: Թէքէեան կը մերժէ այս դասակարգումը:

*[Տ]ուողը չնորհակալութեան իրաւունք չունի, առնողը չնորհակալութեան պարտք չունի, որովհետեւ տուողն եւ առնողը տարբեր չեն իրարմէ, երկուքն ալ ազգն են եւ ազգին համար է որ կուտան ու կ'առնեն*[93]։

Ազգայնականները միշտ կը ձգտին օտարել դրամը ազգայինէն, որպէսզի վերջինս առերեւութապէս զերծ մնայ նիւթական շահախնդրութիւններէ։ Մինչդեռ գիտենք՝ որ Սփիւռքի վերնախաւը ինչպիսի ուժգնութեամբ առաջ կը տանի դրամական գործօնը՝ պատուելով, փառաբանելով, փայփայելով մեծահարուստները եւ անոնց յատուկ տեղ յատկացնելով ազգային պատումին մէջ։ Քանի մը գաղութներու մէջ նոյնիսկ ոչ-հարուստ հայը տեղ չունի հասարակական կեանքին մէջ՝ բարոյապէս ըլլալով ստորադաս իսկ նիւթապէս անկարող բաւարարելու շրջապատի պարտադիր զեղումները։

Թէքէեան կ'առաջարկէ ազգայինն ու դրամը բացայայտ եղանակով առնչել իրարու, պայմանով որ խնդիրը դրուի հասարակական հարթութեան վրայ։

Հասարակութիւնը, բայց ոչ անհատը, դրամ տալով ազգին, աւելի կը կապուի անոր։ Բայց կարիքը այնպէս պէտք է մէջտեղ հանուի, որ հասարակութիւնը սիրայօժար կատարէ նուիրատուութիւնը, որուն համար անհրաժեշտ է գիտական մօտեցում։ Հաւաքական նպաստով՝ սեփական գրպանէն ելած դրամին միջոցով, ազգը կը մտնէ հասարակութեան միտքին մէջ.

*Դրամով ըլլալիք շատ գործ կայ, Հայաստանի վիրաւոր զինուորին օգնութենէն սկսելով մինչեւ ազգային տեղական հաստատութիւններու բարելաւումը։*

*Պէտք է յիշուին եւ յիշեցուին այդ գործերը՝ որպէսզի ոմանք հաւաքաբար եւ այլք անհատաբար ձեռնարկուին եւ գլուխ հանուին։*

*Գործեր կան որոնք պէտք է հաւաքական ճիգով, ընդհանուրին նիւթական մասնակցութեամբը կատարուին։ Պահանջուած գումարին մեծութիւնը չէ՝ որ այդպէս կը տրամադրէ, այլ անոր բնութիւնը։ Նիւթապէս անկարելի չէ՝ որ համայնքի մը խմբովին տալիք ոեւէ մէկ գումարը ի նպաստ համայնքին ոեւէ մէկ կարօտութեան՝ իր մէջէն ունեւոր անձ մը առանձինն նուիրէ. բարոյապէս՝ ատիկա կարելի չէ ամէն գործի համար։ Անհատական բարեգործութիւնը կրնայ միշտ փոխարինուիլ հաւաքական բարեգործութեամբ. հաւաքական բարեգործութեան տեղ միշտ չի կրնար անցնիլ, կամ պէտք չէ՛ որ անցնի, անհատական բարեգործութիւնը։*

*Ազգային հանգանակութիւնները կը ծառայեն համայնքի մը անդամներուն մէջ ազգային զգացումը վառ պահելու, ազգային գիտակցութիւնը մշակելու։ Եթէ անհրաժեշտ չըլլար անգամ՝ ատեն-ատեն պէտք էր ստեղծել զանոնք, այս նպատակին համար։ Բայց միշտ կան անհրաժեշտ կարիքներ՝ որոնք տեսանելի չեն ամէնուն, բաց ի հեռատես եւ խելացի վարիչէ մը. կարիքը երեւան հանել եւ ժողովուրդը մղել որ* սիրայօժար *օգնէ անոր լրացման, ահա՛ վարիչին կարեւորագոյն գործերէն մէկը։*

*Համայնք մը – մերը անոնցմէ է – կ'ունենայ անդամներ որոնք միմիայն դրամ տալով,*

*գրեթէ, կը պահեն նախ համայնքին եւ ապա ազգին հետ իրենց կապը: Եւ դժգոհ չեն որ կուտան: Գոհ են որ կը յիշուին, որ իրենց ալ կը դիմուի այդ նպատակով: Կը վշտանան եթէ չյիշուին: Կը նշանակէ թէ պէտք է խնամել, չփրցնել եւ միշտ ամուր պահել այդ կապը անոնց մէջ, ու աշխատիլ անով կապելու ուրիշներն ալ, այնպիսինե՛ր որոնք կամաւ կամ դիպուածաւ, իրենց կամ ազգային մարմիններու յանցանքով, նիւթապէս խզուած են համայնքին հետ, միաժամանակ բարոյապէս ալ խզուելով մասամբ կամ ամբողջովին:*

*Չենք ըսեր ամէնուն՝ բայց շատերու համար, երբ դրամը իրենց գրպանէն կ՚ելլէ ազգը կը մտնէ իրենց մտքին մէջ, տեղ կ՚ընէ հոն: Կարծէք դրա՛մը կը գնէ զայն, եւ դրամով գնուած բան մը յարգ կ՚ունենայ անպատճառ, կ՚արժէ որ պահուի: Պէտք է, ուրեմն, որ ազգը՝ այդ ձեւով՝ յաճախ մատուցուի այդպիսիներուն, «գնում»ի համար: Գաղափարը մնալով – մանաւանդ չգործածուելով – կը մաշի կարգ մը միտքերու մէջ, որով պէտք է առիթ եւ միջոց տալ զայն վերանորոգելու՝ անգամ մը զայն ընդունիլ տալէ ետք:*

*Հետեւաբար, հաւաքական նպաստներէն կրկնապէս կը շահի ազգը կամ համայնքը. – կը շահի իր անդամներուն համար: Առաջին նպատակը ձեռք կը բերուի աւելի դիւրաւ քան երկրորդը. այս պատճառով, հանգանակչութիւնը պզտիկ գիտութիւն մըն է՝ զոր պէտք է սորվիլ, միտք եւ սիրտ դնելով անոր կիրարկութեանը ատեն*[94]*:*

## ՈՐԲԵՐ

1920-30-ական թուականներուն, գոնէ առերեւութապէս, հայ գաղութներուն առաջնային մտահոգութիւնը եղած էր որբերը: Կատարուեցան նուիրատուութիւններ, գործի անցան հայկական բարեսիրական միութիւններ, տեղի ունեցան ձեռնարկներ, կազմուեցան յանձնախումբեր, որոնք աշխատանք տարին որբերուն նկատմամբ: Զանքեր գործադրուեցան անոնց խնդիրները լուծելու տարբեր ուղղութիւններով՝ զանոնք տեղացի հայ ընտանիքներու մօտ տեղաւորելով, ուրիշ երկիրներ ու քաղաքներ փոխադրելով, կամ Խորհրդային Հայաստան տեղափոխելով: Եգիպտահայ մամուլը առատօրէն կը տեղեկացնէր ու կը նկարագրէր այս բարեգործական գործողութիւնները, յաճախ փայլեցնելով մեծահարուստ նուիրատուներու ազգասիրական ոգին: Բայց կը գտնուէր գաղթականութեան ուրիշ կողմ մը՝ որուն մասին բնականաբար մամուլը պիտի չխօսէր: Գաղթականներու եւ որբերու կարեւոր զանգուած մը կը մնար անօգնական կամ կը շահագործուէր:

1924-ին Արշակ Ալպօյաճեան բարձրաձայն կը բողոքէր որբերու նկատմամբ գոյութիւն ունեցող անտարբերութեան դէմ՝ *Արեւ*ի մէջ հրատարակած առաջնորդող յօղուածով մը. «Այս ազգը ոչ մէկ գործ թերեւս այսքան գէշ կառավարած չէր որքան խնամածութիւնը այս խեղճ արարածներուն որոնք որբ անունով հանրային օգնութեան կարօտ եղած են», որուն համար մեղանչեց Պոլսոյ Ազգային

Պատրիարքարանը, Ազգային Պատուիրակութիւնը, ՀԲԸՄիութիւնը, Խորհրդային Հայաստանը եւ բոլոր հայութիւնը[95]։

1929-ին Թէքէեան կը գրէ.

*Ֆրանքօ-Հայ երկշաբաթաթերթը Լը Ֆուայէ, իր վերջին թիւին մէջ կը հրատարակէ հարիւր յիսունի չափ հայ որբերու մէկ խմբանկարը, ամէնքն ալ չափահաս (ինչպէս կ՚ըսուի) որբերու, որոնք Ֆրանսայի գաւառներէն մէկուն մէջ, գիւղերը իբրեւ օտար «գործաձեռք» կ՚աշխատին եւ այդ օրը իրարու քով եկեր, միասին ճաշեր ու լուսանկարուեր են՝ կառավարութեան, Նիր Իսթի եւ Հայ ներկայացուցիչներու հետ…*[96]։

«Գործաձեռք» (աշխատուժ) բառը յատուկ վերցնելով չակերտներու մէջ, Թէքէեան հեգնած կ՚ըլլայ անոնց ճակատագիրը։ Ան չի ծանրանար այս կէտին վրայ, բայց որբերու շահագործումը տակաւին ուսումնասիրութեան կարօտ նիւթ մըն է եւ կրնայ բացայայտել հայ վերնախաւին վերաղաս կեցուածքը որբերուն նկատմամբ, որ դրամական նուիրատուութիւններէն անդին չէր անցներ։

Թէքէեան յօդուածին մնացած մասը կը կեդրոնացնէ «գործաձեռք»-էն բխած հետեւանքին վրայ, քանի որ այս եղանակով աշխատանքը ֆրանսացիներուն մօտ կրնայ վտանգել անոնց հայութիւնը։

1920-ականներուն Թէքէեան լրջօրէն կը զբաղուի որբերու հարցով, երբեմն հասնելով յաջողութիւններու, երբեմն բախուելով անտարբերութեան եւ խոչընդոտներու։

Պաշտօնական հանգամանքով՝ իբրեւ Գահիրէի Հայ Որբ Ուսանողաց ֆոնտի (հիմնուած 1923-ին) պատուակալ քարտուղար, 1925-ին իր ստորագրութեամբ ազդարարութիւն մը կը հրապարակուի *Արեւ*ի մէջ՝ ուր կը նշուի, թէ ֆոնտը նպատակ ունի յառաջիկայ տարեշրջանին հինգ նոր սաներ դաստիարակել իբրեւ Պէրպէրեան Վարժարանի գիշերօթիկ ուսանողներ եւ կը ներկայացուի ֆոնտին պայմանները[97]։

Թէքէեան եղած է Կեսարիոյ եւ Շրջակայից Միութեան հիմնադիրը։

Այսպէս, 1925 Սեպտեմբերին *Արեւ*ի մէջ կը ստորագրէ յօդուած մը, ուր կը հաղորդէ ստոյգ տեղեկութիւններ Կեսարիոյ որբերուն անօթի ու մերկ զարհուրելի վիճակին մասին։ Կը գրէ.

*[Հ]արկ կա՞յ անպատճառ սպասելու որ Կ. Պոլսոյ Պատր. Տեղապահ Սրբազանը կատարէ բարեսէրներու մօտ Քաղաքական Ժողովոյ որոշած դիմումը եւ անոնց իւրաքանչիւրին «գթութեանը դիմէ»՝ որպէսզի գթա՛ն անոնք։ Իւրաքանչիւր «բարեսէր ազգային», մասնաւորապէս իւրաքանչիւր կեսարացի ազգային՝ ինքնին պարտականութիւն չի՞ զգար իր ծննդավայրին մէջ կուտակուած այդ հայ մանուկներուն ծայրայեղ թշուառութիւնը սփոփելու*[98]։

Թէքէեան կը խօսի հասարակութենէն բխած համագործակցութեան մասին։ Կ'ուզէ որ մարդիկ ցաւը զգան իբրեւ ներքին համոզում՝ առանց արտաքին գրգիռներու, առանց որ դուրսէն մէկը իրենց գթասրտութիւնը շարժէ։
Կ'առաջարկէ.

*Կեսարացիներու շուտափոյթ խորհրդակցութիւն մը անհրաժեշտ է, շուտով հանգանակութիւն ձեռնարկելու եւ կեսարիա դրամ փոխադրելու համար։ Վստահ եմ թէ Հայկական Սրահը մեզ կը տրամադրուի այդ խորհրդակցութեան համար։ Գործի՛ ուրեմն*[99]*։*

Անսպասելիօրէն այս կոչը արձագանգ կը գտնէ Մանչեսթըրի մէջ։ *Արեւի* խմբագրութիւնը Մանչեսթըրէն կը ստանայ Սեպտեմբեր 29 թուակիր հետեւեալ նամակը.

*Արեւի* 1995 *թիւին մէջ կեսարիոյ անօթի ու մերկ որբերուն ի նպաստ հրատարակուած սրտառուչ կոչը, Պ. Վահան Թէքէեանի ստորագրութեամբ, առիթ տուած է որ Մանչեսթըրի մէջ բնակող հայրենակիցները պարտք զգան անմիջական օգնութիւն հասցնելու համար նախաձեռնարկ ըլլալ, եւ քօմիթէ մը կազմելով հետեւեալ անձերէն՝ Պ. Ս. Տամատեան՝ ատենապետ, Պ. Լեւոն Ճամուզեան՝ ատենադպիր եւ Պ. Արա Օտապաշեան գանձապեհ, ստիպողական հանգանակութիւն մը ձեռնարկել։ Կազմուած քօմիթէն այսօր իսկ պիտի դիմէ տեղւոյս Երեսփոխանական Ժողովին՝ արտօնութիւն ստանալու համար։ Դիմում պիտի կատարուի նաեւ Լոնտոն գտնուող հայրենակիցներու, որպէսզի հոն եւս մասնախումբ մը կազմուի հանգանակութիւն կատարելու համար*[100]*։*

Թէքէեան *Արեւի* խմբագիրը չէր այդ ժամանակ, բայց կը գտնուէր Գահիրէ։ Տպագրութենէն առաջ տեսնելով այդ նամակը, անոր ներքեւ կ'աւելցնէ հետեւեալ պարբերութիւնը[101].

*Ուրախութեամբ հաղորդելով Մանչեսթըրի մէջ սկսած այս շարժումը, կը լսենք թէ հոս եւս մօտերս ձեռնարկ մը պիտի կատարուի նոյն նպատակին համար*[102]*։*

1925 Հոկտեմբեր 17-ին, Հայկական Սրահին մէջ տեղի կ'ունենայ Թէքէեանի առաջարկած կեսարացիներուն հանդիպումը՝ հինգ անձերու ներկայութեամբ։ Հինգ կեսարացի եկած էին օգնութեան մասին խորհրդակցելու։ Թէքէեանի դառնութիւնը աւելի եւս կը բորբոքուի, հեգնական յօդուած մը կը գրէ «Կեսարիոյ որբերը կշտացան եւ հագուեցան» խորագիրով, ուր կը նշէ.

*Մեր գիտցածը սա՛ է, այսօր, որ Գահիրէի կեսարացիները, անցեալ շաբաթ գիշեր հաւատարիմ չերեւցան կեսարացիութեան աւանդութիւններուն։ Այդ աւանդութիւնները, հոս եւ ամենուրեք, աւելի գթասրտութիւն, զոհաբերութիւն եւ գործնական եռանդ են՝ կարծեմ։*

*Կ'երեւայ թէ պէտք էր որ ամչնայի, բայց անձնապէս չամչցայ, կը խոստովանիմ, անցեալ գիշերուան անյաջողութեանս համար: Միայն ամչցայ իբրեւ կեսարացի մը, նոյն իսկ իբրեւ «երկրորդ աստիճանի կեսարացի մը», գործին անյաջողութեանը համար: Եւ անշուշտ ձայն չէի հաներ այլ եւս, եթէ Ս. Կարապետի վանքին մէջ, ուր եղած եմ հինգ ամիս,* 300 *որբեր չյամառէին մնալ յետին չքաւորութեան մէջ՝ խօսք մտիկ չընելով թէ պէտք է կշտանան եւ հագուին*[103]*:*

Գրութեան կ'աւելցնէ Յետ Գրութիւն մը, առաւել եւս ահազանգելու որբերուն ողբերգական վիճակը.

*Նոր եկած թերթերէն կը տեղեկանամ թէ կեսարիոյ թուրք բարեխնամ իշխանութիւնը գրաւած է նաեւ Ս. Կարապետ վանքի վարժարանին շէնքը եւ ազդարարած է որ այսուհետեւ հայերը պէտք է վարձք վճարեն անոր համար՝ եթէ որբերը հոն պիտի պահուին դեռ...:*

*Որբեր, տղա՛քս, բախտ չունիք: Կարելի է որ արդէն գիտէիք ատիկա: Բայց ատկէ զատ, նորութեան հրապոյրն ալ չունիք, այժմէութիւն չէք: Ձեզի խորհուրդ մը. մեռէ՛ք: Թէ՛ ձեզի եւ թէ մեզի համար լաւագոյն է, հաւատացէ՛ք...*[104]*:*

Անհատական նամակներ ուղարկելով կեսարացիներուն, Հոկտեմբեր 24-ին Հայկական Սրահը լեցուած էր կեսարացիներով: Կը հիմնուի Կեսարիոյ Հայրենակցական Միութիւնը, որ կ'ունենայ առժամեայ դիւան մը, Վ. Թէքէեան՝ ատենապետ, Մ. Պէյլէրեան՝ ատենադպիր, ինչպէս նաեւ հինգ անձերէ կազմուած յանձնախումբ մը՝ Հ. Վարդան վրդ. Խաչերեան, Բարսեղ Պալըզճեան, Ստեփան Եսայեան, Բիւզանդ Թէքէեան եւ Բարունակ Ճէմալեան: Համաձայնութիւն կը գոյանայ գործելու որոշեալ կէտերուն շուրջ[105]:

Յանձնախումբի անդամներուն մէջ փոփոխութիւններ տեղի կ'ունենան, հաւանաբար ներքին անհամաձայնութիւններու պատճառով: Կը հրաժարին Բարսեղ Պալըզճեան եւ Ստեփան Եսայեան, որոնց կը փոխարինեն Յակոբ Ալթունեան եւ Տոքթ. Ղ. Արթինեան: Իր առաջին հրապարակումին մէջ յանձնախումբը կը տեղեկացնէ.

*Յանձնախումբը* [...] *Քաղաքական Ժողովէն ստացած է ժապաւինեալ տոմար մը եւ յառաջիկայ երկուշաբթիէն սկսեալ* [իմա՝ 16 Նոյեմբեր 1925-էն, Հ.Ա.] *պիտի ձեռնարկէ իր գործին*[106]*:*

Կեսարիոյ Հայրենակցական Միութեան յանձնախումբը գլուխ կը հանէ յաջող դրամահաւաքի գործունէութիւն մը, յաջորդաբար հանգանակելով 15.300[107], 3150[108], 1797[109], 865[110] եւ 390 եգիպտական դահեկան[111]:

Կեսարիոյ եւ Շրջակայից Հայրենակցական Միութեան ատենադպիր Մ. Պէյլէրեան եւ ատենապետ Վահան Թէքէեան կը հրաւիրեն Կեսարիոյ եւ Շրջակայից

հայրենակիցներուն մասնակցելու Ա. Ընդհանուր Ժողովին, որ տեղի կ՚ունենայ 1926 Ապրիլ 11-ին, Ժողովրդային Սրահին մէջ, քննարկելու օրակարգի վեց կէտեր[112]:

Մայիս 1-ին Կեսարիոյ Հայրենակցական Միութիւնը Ժողովրդային Սրահին մէջ կը գումարէ ընդհանուր ժողով մը, ուր վերջնական վաւերացումը կը կատարուի Միութեան ծրագիր-կանոնագիրին, որմէ ետք կ՚ընտրուի վարչական ժողովը հետեւեալ կազմով. Հ. Վարդան վրդ. Խաչերեան, Բարսեղ Պալըգճեան, Բարունակ Ճէմալեան, Միսաք Լաչինեան, Մանուէլ Պէյլէրեան, Յակոբ Մերտիճեան եւ Յակոբ Գութնուեան[113]:

Թէքէեան արդէն չկայ անոնց մէջ։ 12 տարի ետք ան պիտի գրէր.

*[Կ]ը յիշեմ թէ աջակցեցայ Ծրագրին կազմութեան բայց պաշտօն չունեցայ Հայրենակցականի ո՛չ ընդհ. ժողովոյ դիւանին եւ ոչ ալ վարչութեան մէջ*[114]:

Արդարեւ, Թէքէեանի ջանքերով հիմնուած Միութիւնը շուրջ 15 տարի կը շարունակէ իր աշխոյժ գործունէութիւնը, կարեւոր նպաստներ ուղարկելով կեսարացի որբերուն։

## ԱԶԳԱՅՆԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Փոքր ազգերուն բնորոշ է ազգայնամոլութիւնը եւ ապազգայնութիւնը։ Անոնք երկու հականիշեր են, որոնք յատուկ են հայերուն։ Ազգայնամոլութիւնը կ՚առաջնորդէ դէպի ազգի նեխում, ապազգայնութիւնը՝ դէպի վնասաբեր յորդում.

*Ազգայնամոլը մէկն է որ հիփնոսացած կը նայի միակ կէտի մը վրայ եւ անկէ դուրս ոչինչ կը տեսնէ, ոչինչ այն միւս բոլոր կէտերէն որոնք կը շարժին եւ ի վերջոյ կուգան իր աչքը կը մտնեն: Ապազգայինը կը նայի ամէն տեղ, մինչեւ հեռու, շատ հեռու, միեւնոյն ուշադրութեամբ որ հուսկ ուրեմն հաւասար է անուշադրութեան, եւ անոնց մէջ կը կորսնցնէ ինքզինքն ու իր գտնուած տեղը:*

...

*Ազգայնամոլը կը նմանի ջրամբարի մը, որուն չորս կողմը փակ է: Ոչ մէկ հոսանք ներս կը մտնէ անկէ ու ներսի ջուրը կը նեխի հարկաւ: Ապազգայինը՝ ամէն կողմէ բաց ջրամբարն է, ուր բոլոր հոսանքները կը խուժեն եւ իրար կը խառնուին ու փրփրադէզ յորդելով դուրս կը թափին այնպէս ինչպէս մտած էին՝ առանց յատուկ յատկութեան եւ առանց օգուտի*[115]:

Երկուքն ալ կը տանին դէպի փակուղի ազգի մը զարգացումին համար եւ անկարելի է հանդիպակաց կէտեր գտնել անոնց միջեւ։ Մինչդեռ կայ երրորդը՝

ազգասէրը, որ կը տեսնէ արտաքին աշխարհը՝ ներքին փորձառութեամբ.

*Ազգասէրը, մինչդեռ, կը յիշեցնէ անընդհատ մէկ կողմէն լեցուող եւ միւս կողմէն պարպուող, միշտ թարմացող եւ միշտ ծառայող այն ջրամբարները՝ ուր ջուրը, որ մղուած կուգայ արդէն, բաւական ատեն նախորդին հետ կը մնայ եւ բան մը կ'առնէ անոր յատկութիւններէն, ոչ բոլորովին նոյն եւ ոչ բոլորովին տարբեր կ'ըլլայ սակայն, տեւականութիւնը ոչ այնքան տեսակին՝ որքան պաշտօնին (ֆօնքսիօն) մէջ ըլլալով, լցման եւ հայթայթման պաշտօնին*[116]:

Ազգասիրութեան բացասական կողմը ունի երեք տարբերակ՝ կեղծ, մոլի եւ կոյր: Կոյր ազգասիրութիւնը ամենէն վնասակարն է[117]:

Ի՞նչ է կոյր ազգասիրութիւնը եւ ի՞նչ հետեւանքներ ունի ան.

*Կոյր է այն ազգասիրութիւնը՝ որ կը յաւակնի ուրիշ բանի տեղ անցնիլ, օրինակի համար՝ մէկ կողմէ անհատական կարողութեանց զարգացման եւ միւս կողմէ մարդասիրութեան տեղ, այս բառին լայնագոյն իմաստովը: Բացատրենք մեր միտքը մէկ եւ միւս պարագային մասին:*

*Առաջին պարագայ: Նախ՝ շատերու աչքին ազգասիրութիւնը աւելի է քան ճշմարտութիւնը, աւելի է քան մտաւոր կարողութիւնը: Փոյթ չէ որ մէկը աննկարագիր ըլլայ կամ տխմար կամ ակամայ կոպիտ (կամաւոր կոպտութիւնը հասկնալի է եւ երբեմն անհրաժեշտ) կ'ըսուի. «բայց ազգասէր է» ու յարգանք կ'ընծայուի անոր այդ յատկութեան՝ որպէս թէ ան կարենար մեզի օգտակար ըլլալ երբ ընկերացուած է այդ թերութիւններով*[118]:

Այս արտայայտութիւնները հանրութեան ազգասէր խաւերուն մէջ կը լսուին ու գրուին ամէն օր: Եգիպտահայ այսօրուայ գաղութը լեցուն է նման արտայայտութիւններով.

Ասմունքող կը հրաւիրուի, որ անկատար առոգանութեամբ ու հասկացողութեամբ քանի մը բանաստեղծութիւն կ'արտասանէ: Հոգ չէ, ան հայրենասիրական բանաստեղծութիւններ ասմունքեց՝ ազգասիրական ոգիով:

Ճաշարանային մակարդակով քամանչահար կը հրաւիրուի: Հոգ չէ, ան ազգային երգեր նուագեց:

Անմակարդակ թատերական կամ օփերէթային խումբեր կը հրաւիրուին՝ զուրկ դերասանական ու բեմադրական նուազագոյն կարողութիւններէ: Հոգ չէ, անոնք հայրենաշունչ թատրոններ բեմադրեցին եւ մեզի փոխադրեցին հայրենի աշխարհ:

Ցեղասպանութեան մասին ցած մակարդակով «վաւերագրական» ֆիլմ կ'արտադրուի: Հոգ չէ, ցեղասպանութիւն է:

Եգիպտահայութեան մասին անմակարդակ եւ ականներով լեցուն ֆիլմ կ'արտադրուի: Հոգ չէ, ֆիլմը կը ներկայացնէ հայերուն սատարները եգիպտական

տնտեսութեան եւ մշակոյթին։

Բայց ասիկա միայն գաղութահայ միտում մը չէ։ Վերցնենք 1950-ականներէն սկսած Խորհրդային Հայաստանի երաժշտագիտական գնահատութիւնները։

1962-ին, Ցիցիլիա Բրուտեան Երեւանի մէջ այսպէս կը գնահատէր արժենթինահայ երաժշտահան Ժան Ալմուխեանին.

*Ալմուխեանի ստեղծագործական ոճը ժամանակակից մոդեռն երաժշտության ոճն է, որ երբեմն ոչ մի շփման կէտ չունի ազգային երաժշտության հետ (դոդեկաֆոնիկ գործերը)։ Բայց, բարեբախտաբար, իր շատ գործերում, առաւել բնորոշ ստեղծագործութիւններում, այդ ժամանակակից երաժշտության ոճը միահիւսւում է հայկական երգի ինտոնացիոն դարձուածքների հետ՝ ստեղծելով շատ ինքնատիպ ու հետաքրքրական գործեր*[119]։

Երբ հայ երաժշտահանի մը գործը արդիական է՝ հետաքրքրական չէ, բայց կը բաւէ որ այդ նոյն անհետաքրքրական արդիականութիւնը միանայ ազգայինին հետ (քանի որ երաժշտագիտուհիին համար շատ յստակ են արդիականութեան եւ ազգայինի միջեւ եղած սահմանները), գործը կը դառնայ «շատ ինքնատիպ ու հետաքրքրական»։ Ազգայինը՝ անկախ իր գեղարուեստական-գեղագիտական որակէն, կը նոյնանայ ինքնատպութեան եւ հետաքրքրութեան հետ։

Երաժշտութեան մէջ նոյնիսկ սեռեր (genres) կան որոնք աւելի ազգային են, ինչպէս կ'ըսէ Էդուարդ Միրզոյեան.

*Սիմֆոնիան այն ժանրն է, ուր, իմ կարծիքով, ամենից աւելի խորն են արտացոլուած մեր ժողովրդի պատմութիւնը, նրա ոգին, նրա կեանքն ու բնաւորութիւնը, ազգային մտածողութեան առանձնայատկութիւնները*[120]։

Ուրեմն, Սէմֆոնին աւելի լաւ կը բովանդակէ «ազգային մտածողութեան առանձնայատկութիւնները» քան Սոնաթը, Քոնչերթոն կամ Փրելիւտը։

Իսկ Շուշանիկ Ափոյեանի համար Լեւոն Աստուածատրեանի Սոնատ-բրեւան տկար գործ մըն է, քանի որ անոր մէջ ազգայինը տկար է.

*Նա* [Լեւոն Աստուածատրեան] *երաժշտական լեզուն հարստացրել է ժամանակակից ոճից բխող նոր գծերով, օրինակ, հրաժարուել է մետրիկ նշանակումից (տակտային գիծը դրւում է ըստ ֆրազաւորման)։ Սակայն այս ստեղծագործութիւնն ունի նաեւ էական թերութիւն. դա նրա ազգային թոյլ որոշակիութիւնն է*[121]։

Թէքէեան կը շարունակէ կոյր ազգասիրութեան առաջին պարագայի մեկնաբանութիւնը.

*Յետոյ, ազգասիրութիւնը կարծէք ազատ կը կացուցանէ մեզ գիտնալէ, ճանչնալէ եւ*

*սորվելէ՝ մանաւանդ օտարին վերաբերող բաներն ու օտարը գիտնալ-ճանչնալ-սորվելէ, ինչ որ ուղղակի կապ ունի ազգասիրութեան հետ եւ զոր ընդհակառակն պէտք էր յատուկ խնամքով կատարէինք*[122]:

«Գիտնալ-ճանչնալ-սորվիլ»-ը պիտի հասկնալ իբրեւ ներթափանցում, շփումի միջոցով յառաջացում, շարժում դէպի ճանաչողութիւն եւ իմաստութիւն, այլի ճեղքում ու վերացում։ Երբ կը փորձենք երկաթէ վարագոյր մը իջեցնել ազգայինի եւ օտարի միջեւ՝ իբր ազգայինը մաքուր, անարատ, անբիծ պահպանելու համար, ազգայինը դադրեցուցած կ՚ըլլանք ամէն տեսակ դրական շփումի հնարաւորութենէ։ Ազգայինը *պահպանել*՝ ազգապահպանում կամ հայապահպանում, կը դառնայ աւելի կարեւոր քան ազգայինը *զարգացնել*՝ ազազարգացում կամ հայազարգացում։

Թէքէեան կ՚աւելցնէ.

[Ազգասիրութիւնը] *ազատ կը կացուցանէ, նաեւ, բարձրագոյն զարգացումէ, ա՛յն զարգացումէն որ չունի ուղղակի առնչութիւն մը ազգասիրութեան կամ ազգին ծառայելու նպատակին հետ, որ մտքին եւ հոգիին մեծագոյն կարողութեանց անչահախնդիր նուիրումը կը պահանջէ ոչ թէ մասնագիտութեան մը միայն՝ այլ այսպէս ըսելու համար, ամբողջագիտութեա՛ն՝ որ մասնագիտութեան մը պսակն է եւ չի նշանակեր ամբողջ գիտութիւնները այլ ամբողջութեան գիտութիւնը, ամբողջութեան՝ տիեզե՛րք, մա՛րդ, իրե՛ր եւ դէպքե՛ր իրարու մէջ եւ իրենք իրենց մէջ յարաբերութեանց գիտութիւնը, որ չունի իր յատուկ դասընթացքը եւ որուն ուսանողը, միշտ սկսնակ մնալով հանդերձ, միշտ աւելի կ՚արժէ քան ոեւէ մասնագէտ մը, նոյն իսկ մասնագէտ ազգասէրէ մը աւելի՝ իր ազգին օգտակար ըլլալու տեսակէտով...*[123]:

Արդարեւ, մարդասիրութիւնը կու գայ ազգասիրութենէն առաջ.

*Երկրորդ պարագան, որ է մարդասիրութիւնը ազգասիրութեան տեղ, աւելի դժուար կրնայ բացատրուիլ անո՛նց որոնք համոզուած են թէ ազգասիրութիւնը ամէն բանէ վեր է իբրեւ զգացում եւ անոր կիրառումը կեանքի մէջ՝ ամէնէն վեհ եւ նուիրական արտայայտութիւնն է մարդկային գործունէութեան*[124]:

Մարդը կու գայ ազգէն առաջ։ Մարդն է որ կը կերտէ ազգը եւ ոչ հակառակը։ Մարդ՝ հայ ըլլալէ առաջ, եւ մարդ ըլլալով կը դառնանք աւելի հայ.

*Ժամանակ է, ըստ իս, որ մեր մէջ զարգացնենք աւելի մարդը քան թէ Հայը: Նախ Հայ, միշտ Հայ, միայն Հայ նշանաբանը որ կը թուի մերը եղած ըլլալ գիտակցաբար կամ ոչ, այսօր մեր քայքայումը փութացնելու միայն կը ծառայէ: Պէտք է ընդունինք անոր տեղ Նախ մարդ եւ յետոյ Հայ նշանաբանը:*

...

*Ըսել՝ նախ մարդ, յետոյ Հայ, կը նշանակէ թէ մեր մէջ նախադոյ եւ ներդոյ է Հայը, անմշակ եւ ինքնավնաս Հայ մը Հարկաւ, զոր մշակելու եւ բարձրացնելու Համար է որ, արդէն մեր գործունէութիւնը պէտք է իրեն առաջին նպատակ ունենայ մարդ ընել մեր ազգը եւ ոչ թէ Հայ պահել զայն այնպէս՝ ինչպէս է այսօր իր մտքով, Հոգիով, ու բարքերով*[125]:

Երբ վերջին յեղափոխական շրջանին հայը դրինք մարդէն առաջ եւ հայէն հանեցինք մարդկայինը, արդիւնքը եղաւ աղէտաբեր.

*Ինծի կը թուի թէ սխալեցանք՝ երբ մեր մօտիկ անցեալին մէջ ձեռնարկեցինք Հաւաստել թէ Հայ ենք ու իբրեւ այդ իրաւունքներ պաՀանջեցինք. – Հազիւ սկսած ազգովին մեր մարդկային բարեշրջումը: Գացինք ուղղակի «Հայ» նպատակին՝ «մարդ» նպատակը այրելով ու անցնելով: Եւ զարմանալի չէ որ «Հայ» նպատակը մեզ ետ նետեց՝ ջախջախուած ու վիրաւորուած...*[126]:

Ազգային ոգին անգործունակ է առանց միտքի եւ նկարագիրի: Հայ վարժարանները աշակերտները կը դնեն ապրուստը շահելու ճամբուն մէջ եւ անոնց կը ներշնչեն ազգային ոգի: Ասիկա բաւարար չէ: Առանց միտքի եւ նկարագիրի աշակերտը անկարող կ'ըլլայ յետագային ինքնուրոյն մտածել, զարգանալ եւ բարձրանալ.

*Մեր Հայ վարժարաններն ալ, նման ուրիշ ազգաց վարժարաններուն, չեն ծառայեր միայն գիտութեան որոշ չափ մը եւ ազգային լեզուն ու ազգային պատմութիւնը՝ նոյնպէս որոշ չափով մը՝ սորվեցնելու: Բաւական չէ արդարեւ՝ որ մեր վարժարանները մեր տղաքը դրած ըլլան իրենց ապրուստը շաՀելու ճամբուն մէջ, ինչպէս նաեւ բաւական չէ՝ որ ազգային ոգի ներշնչած ըլլան անոնց: Այս երկուքին Հետ – ապրուստ Հանել եւ ազգային գոյութիւն պաՀել – միաժամանակ եւ զանոնք պսակող, Հայ վարժարանը ունի ուրիշ նպատակ մը՝ որ մտքի եւ նկարագրի մարդիկ Հասցնելն է:*

*Արդի կեանքը, ինչպէս ուրիշ ամէն ազգի նոյնպէս մեր մէջ, անՀարժեշտ կ'ընէ ունենալ այդ մարդիկը, այր եւ կին, կարելի եղած մեծագոյն թուով:*

*Գործնական ոգիով եւ ազգային ոգիով տոգորուած Հայ երիտասարդներ Հանելու են Հայ վարժարանները, բայց ծրագրելու եւ աշխատելու են ա՛յնպէս՝ որ այդ երիտասարդները արժէք տան Մտքին եւ Նկարագրին, իրե՛նք ջանան Մտքով եւ Նկարագրով զարգանալ բարձրանալու, եւ օգնեն այդ ճամբուն մէջ ուրիշներու*[127]:

«Ազգային կրթութիւն» բառերը անիմաստ են՝ եթէ անոնք կապուած չըլլան ոգեղէն ու նիւթական իրականութեան հետ: Չափակշռուած իրականութեան միջոցով կարելի է սերմանել գիտակցութիւն ազգայինի հանդէպ:

*«Ազգային-կրթութիւն» բառերը ինքնին բան մը չեն եթէ անոնց մէջ դրած չըլլանք – ինչպէս դրած չենք մինչեւ հիմա – կշռուած ու չափուած իրականութիւն մը, իրականութի՛ւն ոգւով եւ նիւթով, որ տղոց ընդհանուր զարգացումը ապահովէ եւ այդ զարգացման ընթացքին անոնց տայ հետզհետէ «ազգային»ին գիտակցութիւնը, գիտակից սէ՛րը ազգային գոյութեան:*

*Ինքնախաբէութիւն է գոհանալ Հայերէն լեզուի եւ Հայոց պատմութեան ինքնին համեստ չափով մը տրուած ուսումով, իբրեւ «ազգային կրթութիւն»: Բայց չափը այնքան կարեւոր չէ որքան եղանակը եւ որքան այդ ուսումով հետապնդուած նպատակը որ ո՛չ գծուած եւ ոչ ալ մտածուած է յստակօրէն՝ արտասահմանի մեր բազմաթիւ փոքր, միջնակարգ եւ բարձրագոյն նախակրթարաններու ծրագիրներուն մէջ*[128]*:*

Կարեւոր է, որ Ազգը չշփոթենք Ցեղին հետ։ Անոնք երկու տարբեր հասկացողութիւններ են։ Ցեղը իր տեղը ունի Ազգին մէջ, բայց չի ներկայացներ Ազգին ամբողջականութիւնը։ Ցեղը մարմին է, Ազգը՝ հոգի։ Ազգայնամոլները կը գերագնահատեն Ցեղին դերը, զայն կը վերադասեն Ազգէն՝ հասնելով մինչեւ ֆաշիզմին.

*Քիչ չեղան, նոյն իսկ մեր մէջ, Ցեղը Ազգին հետ շփոթողները: Ցեղը մենք ալ «պաշտելու» վրայ էինք ինչպէս Հիթլէրի աշխարհին մէջ՝ երբ գործերը ուրիշ ուղղութիւն մը ստացան եւ պատերազմն ալ վրայ հասնելով մոլորեալները հրաժարեցան այդ մոլորութենէն:*

*Ցեղը Ազգը չէ: Ցեղը իր տեղը ունի Ազգի մը կազմութեան մէջ, բայց ոչ ամբողջ տեղը: Եւ եթէ ձեզի պատահի որ Ազգ ըսելով Ցեղ հասկնաք, Ազգը պարպած կ'ըլլաք իր հոգեկան հարստութեան մէկ մեծ մասէն, զայն բարոյապէս անդամահատած կ'ըլլաք. աւելի՛ գէշ՝ անոր միտքը կը դնէք սխալ կամ ծուռ հիման մը վրայ եւ ատով պատճառ կ'ըլլաք անոր մամնին ալ կորստեան...:*

*Բոլոր ազգայնամոլները կը մղուին ցեղին դերը գերագնահատելու, բայց գերմանական նացիզմին վերապահուած էր ա՛յնքան բարձր դասել զայն, եւ անոր հետ գերման ցեղը անշուշտ՝ որ կրցաւ իր ամբողջ ժողովուրդը, մէկ շունչ մէկ մարմին, արձակել աշխարհի վրայ, անոր ճանչցնել տալու համար իր գերազանցութիւնը: Պատերազմներու ամենէն կործանաբարը չբացուէր հաւանօրէն՝ եթէ շատ հինէն գոյութիւն ունեցող գերման ցեղին գերազանցութեան այս զգացումը վերջին պատերազմէն ետք յատկապէս գրգռուած եւ տասը տարուան միջոցին Հիթլէրի կողմէ իր գերադրական աստիճանին հասցուած չըլլար...:*

*Արդ, ցեղապաշտութիւնը (*ռասիսմ*) ազգասիրութիւն չէ՝ ինչպէս ցեղը ազգ չէ, ոչ ալ հայրենասիրութիւն՝ որովհետեւ ցեղը իր տարածուելու եւ տիրելու ձգտումով կը հեռանայ հայրենիքէն երբ յաջողի, կը վերադառնայ պարփակուիլ անոր մէջ կամ անոր այն մասին մէջ որ մնացած ըլլայ իրեն՝ երբ ձախողի: Ազգի եւ հայրենիքի սէրերը կը քալեն միասին, բայց ազգի եւ ցեղի, հայրենիքի եւ ցեղի սէրերը՝ եթէ մինչեւ իսկ պահ մը համընթաց երթան, կը զատուին եւ տանին աղէտի, որովհետեւ արուեստական է ցեղային զգացումը եւ չի հաշտուիր բնական զգացումներու հետ:*

*Ցեղը աւելի մարմին, ազգը աւելի հոգի է. աս ալ պատճառ մըն է՝ որ ցեղապաշտութիւնը*

*աւելի յարձակողական, վայրագ եւ կատաղի ըլլայ:*

...

*Ցեղապաշտութիւնը, իր այն ծայրայեղ փուլին մէջ որուն հասած էին Հիթլէրի հետեւորդները ներկայ պատերազմի բացումէն առաջ, ազգասիրութեան եւ հայրենասիրութեան հետ չէ միայն որ մրցման ելած էր մարդոց հոգիներուն մէջ. ան նոյնը ըրած էր ուրիշ մեծ զգացման մը՝ կրօնասիրութեան հետ եւ գայն ալ, թէ՛ իր աճման բնական հետեւանքովը եւ թէ բունի, նսեմացուցած եւ ատով երկրորդ մեծ սխալ մը գործած էր, – պէտք ունեցողները ղրկել կրօնքի նեցուկէն՝ երբ ցեղային գաղափարին նեցուկը պիտի չբաւէր անոնց:*

*Հոգի եւ մարմին...: Պիտի տեսնուի թէ ո՛ր կողմը աւելի եռանդով եւ հաւատքով կռուած եւ ի վերջոյ յաղթած պիտի ըլլայ ներկայ պատերազմին մէջ, ա՞յն՝ որ է՛ն առաջ ցեղի մը մարմնական յատկանիշներուն յենած է եւ անկէ կը քաղէ իր հոգեկան ուժն ալ. թէ ոչ ա՛յն՝ որ իր մէջ հալած զանազան ցեղերու համանոյն հոգիովը կը գործէ եւ անկէ կ՚ստանայ իր ֆիզիքական զօրութիւնն ալ: Բրիտանական գաղթապետութի՞ւնը, Ամերիկեան բազմացեղ հանրապետութի՞ւնը եւ Խորհրդային Միութեան խառնամառն կա՞զմը՝ թէ զտարիւն Գերմանիան պիտի ապացուցանեն՝ իրենց աւելի մեծ կորովով եւ նուիրումով՝ հոգիին կամ մարմնին գերադասութիւնը:*

*Պէտք չկայ սպասելու, այսօր յայտնի է արդէն՝ թէ ինչպէս Մեծն Բրիտանիան նոյնքան եւ աւելի մեծ չափով Խ. Միութիւնը, նախ իրենց դիմադրական եւ վերջէն իրենց յարձակողական ուժը բազմապատկած տեսան այն համեմատութեամբ որով զանազան ցեղեր, ամենքն ալ վառուած ազատութեան եւ ռամկավարութեան նոյն զգացումով, մասնակցեցան եւ կը մասնակցին ահեղ պայքարին*[129]*:*

## ՀԱՅՐԵՆԱՍԻՐՈՒԹԻՒՆ

Հայրենասէր ըլլալու համար անիմաստ է յայտարարել հայրենասիրութիւնը: Հայրենասիրութիւնը նախ եւ առաջ գործողութիւն է, յարումն է տեղին եւ իրին, կառչումն է գաղափարին.

*Հայրենասիրութիւն բառը, դիտած էք հարկաւ, ֆրանսերէնի մէջ է՛ն քիչ գործածուող բառերէն է. մարդիկ տեսակ մը ամօթխածութիւն ունին հոն՝ իրենց ամենէն խորունկ ու բնական զգացումին վրայ խօսելու. պէտք կա՞յ որ աշխարհի առջեւ կամ նոյն իսկ իրարու ըսենք թէ կը սիրենք մեր մայրը. այդպէս է նաեւ հայրենիքին համար. Ֆրանսացին, նոյն իսկ ծայրայեղ-արմատականն ու միջազգայնական-ընկերվարականը, կ՚զգայ զայն բայց չի խօսիր, երբեմն կը ծաղրէ ալ զանոնք որ անճաշակութիւնը կը գործեն քիչ մը շատ յիշեցնելու իրենց հայրենասիրութիւնը. բայց իր ամէն մէկ արարքին պահուն կը յիշէ թէ ինք Ֆրանսացի է եւ իբրեւ Ֆրանսացի՝ կ՚ուզէ որ իր երկրէն մե՛կնած ըլլայ ամենէն ծայրայեղօրէն միջազգայնական կամ հակազգայնական վարդապետութիւնն անգամ...: Տարօրինա՜կ ժողովուրդը, արդարեւ*[130]*:*

Հայրենասիրութիւնը արժէք է՝ իբրեւ այդպիսին, եթէ անոր չաւելնայ ցնորատեսութիւնը, որ կրնայ առաջնորդել ազգային յուսախաբութիւններու.

*Ոմանց համար՝ իրօք հոմանիշներ էին «Հայրենասիրութիւն» եւ «Զերազ», մինչ ուրիշներու համար, մանաւանդ վերջին տարիներս, «Հայրենասիրութիւն»ը կը մնար՝ բայց վրան կ'աւելցուէր «ցնորատեսութիւն» եւ այդ երկուքը միասին, կցուած իրարու, կ'ըլլային 1878-ի Զերազին յատկանիշները. եւ այս՝ անոր համար, որ ինք միայն դեռ կ'ապրէր Ներսէսներու եւ Գրիգոր Օտեաններու սերունդէն, ու մեր չարաչար կրուած կէս դարու յուսախաբութիւններուն դառնութիւնը, յեղափոխականներէն առաջ՝ կրնայինք միմիայն իր վրայ պարպել հիմա, կէս իրաւացի եւ կէս անիրաւ թափով մը...*[131]*:*

Ի՞նչ կարելի է ընել հայութենէն հեռու մնացած անձերը «գէթ միջին հայրենասիրութեամբ եւ միջին օգտակարութեամբ Հայեր դարձնելու» համար.

1. Հրաժարիլ կեղծ հայրենասիրական քարոզչութենէ:

2. Յատուկ ուշադրութիւն դարձնել հաւաքոյթներուն ու ձեռնարկներուն բովանդակութեան վրայ, որպէսզի ներկայացուած թիւերը ըլլան միակցուած, համակցուած, փոխլրացնող, իմաստաւորուած, այլեւ իրենց ներշնչումով ներքին կապ ստեղծեն ունկնդիրներուն հետ, որպէսզի գիտելիքային արժէքը ըլլայ մնայուն ու յարատեւ: Այսինքն, վերացնել կատարողի ինքնօտարացումը եւ ջնջել կատարող-ունկնդիրի օտարացումը:

3. Հրատարակել գիրքեր եւ հանդէսներ՝ որոնք հետաքրքրեն եւ գրաւեն մարդոց:

Ահաւասիկ Թէքէեանի բնագիրը.

*- Նախ, աղուոր հաւաքոյթներ ընել, մինչեւ հիմա կատարուածներէն բոլորովին տարբեր, կարճ, վառվռուն, քիչ մը զուարթ եւ քիչ մը զգայուն հաւաքոյթներ, ուր բոլոր կտորները ընտրուած ըլլան նպատակի մը համար եւ «բռնեն իրար», ուր երգէն, արտասանութենէն եւ բանախօսութենէն միեւնոյն ոգին ելլէ եւ գրաւէ հանդիսատեսը, չունչ մը ստեղծուի եւ մտնէ ունկնդիրին մէջ, չո՛ւնչ մը որ չմարի երբ այդ ունկնդիրը սրահէն կը հեռանայ այլ մնայ եւ գործէ անոր մէջ: Յետոյ կայ... գիրքեր եւ հանդէսներ հրատարակել անոնց ու ամէնուն համար, բայց ասոնք ալ՝ մտածուած եւ պատրաստուած, պիտի ըսեմ՝ ապսպրուած ըլլալու պայմանաւ: Այս հրատարակութիւններուն մէջ տեղ գտնելու չեն, օրինակ, կեղծ հայրենասիրութիւնը եւ իրական վհատութիւնը, որքան ալ գեղեցիկ՝ գեղարուեստական կերպով արտայայտուած ըլլան կամ երեւին թէ արտայայտուած են անոնք՝ որովհետեւ ո՛չ կեղծ ոչ ալ թոյլ զգացումը կրնայ ճշմարիտ գեղեցկութիւն ստեղծել երբեք...: Զանց ընենք ուրիշ միջոցներու յիշատակումը, քանի որ պարապ տեղը ծնօտ կը յոգնեցնենք, մենք կ'ըսենք եւ մենք կը լսենք*[132]*:*

# ԿՐԹՈՒԹԻՒՆ

Դպրոցի եւ կրթութեան առումով Թէքէեան կը հետեւի սովորական ընբռնումներու՝ կարգապահութիւն, քննութիւններ, մրցակցութիւն։ Բայց անոնց մէջ օգտագործած բառեր եւ արտայայտուած միտքեր երբեմն տարբեր ուղղութիւն կրնան տալ այդ վերնագիրներուն։

Օրինակ, դպրոցի մէջ «[մ]իտք մը կազմելէ առաջ պէտք է կամք մը կազմել», կ'ըսէ Թէքէեան, որուն հասնելու համար անհրաժեշտ կը նկատէ կարգապահութիւնը.

***Առանց կարգապահութեան ուսում չկայ.*** *– Դպրոցականին առաջին աշխատութիւնը՝ աշխատիլ սորվիլն է։ Միտք մը կազմելէ առաջ պէտք է կամք մը կազմել։ Այս պատճառաւ՝ տնական ուսումը լաւ չէ, թոյլ ըլլալով։ Մինչդեռ վարժարանը անողոք է եւ գիչերօթիկ վարժարանը, հակառակ իր ուրիշ կարգի անպատեհութիւններուն, աւելի լաւ է այս տեսակէտով, որովհետեւ տղան այնտեղ կ'ենթարկուի աւելի յարատեւ կարգապահութեան, կ'ստիպուի ընկերութեան մը մէջ իր տեղը փնտռել սորվիլ*[133]*։*

Անմիջապէս կարելի է յիշել Նիցչէի «Կամք առ իշխանութիւն» գաղափարը, ուր կամքը իր մէջ կը կրէ գոյաբանական իմաստ եւ կը հանդիսանայ զրգիռը կեանքի, տենչի, ինքնայաղթահարումի՝ առանց ուրիշին վրայ իշխելու միտումով։ Ենթադրուած է որ Թէքէեան այս իմաստով գործածած ըլլայ «կամք» բառը։ Իսկ այս կամքին հասնելու համար անհրաժեշտ է դպրոցական կարգապահութիւն, կը պնդէ Թէքէեան։ Մինչդեռ Նիցչէ հակառակն է որ կը փորձէր մեկնաբանել, այսինքն, կամքը՝ իբրեւ ինքնաճանաչողականութեան ազատ հարթակ, կը վնասուի համակարգային դասակարգումէն։

Օրինակ մը եւս։ Բառը գաղափարին նշանն է, կ'ըսէ Թէքէեան, մօտենալով սեմիոթիքներու մտայղացումին.

***Տարրական գիտելիքներու ուսուցումը ամենակարեւորն է.*** *– Ամէն բան կախում ունի մանկութեան ատեն լաւ գործադրուած քանի մը մէթոտներէ։ Ճիշդ կերպով կարդալ, գրել եւ հաշուել գիտնալը ահագին բան է արդէն։ Մարդոց մեծ մասը այս տարրական ծանօթութիւններէն զուրկ է։ Շատ-շատեր գէշ եւ դժուարաւ կը կարդան, առանց որ բառը իսկոյն իրենց մտքին առջեւ բերէ այն գաղափարը որուն նշանն է։ Թուաբանութիւնը շատ դժուար կամ շատ դիւրին է՝ նայելով թէ ի՛նչպէս սորվեցուած են անոր նախատարրերը։ Նոյնպէս, մէկը որ աղէկ ըմբռնած չէ երկրաչափութեան եւ գրահաշուի առաջին դասերը, հետագային ոչինչ պիտի հասկնայ անոնց ուսումէն*[134]*։*

Թէքէեանի նպատակը չէ նշանը դիտել մարդաբանական եւ հասարակական

հիմքերէ, բաւարարուելով անոր գոյութիւնը տեսնել տարրական գիտելիքի մեթոտական կրթութեան մէջ։

Կրթական կամ որեւէ այլ բնագաւառի մէջ Սփիւռքը չէ ունեցած ապագայի ծրագրաւորում։ Չէ կազմած ծրագիրներ՝ որոնք սփիւռքեան խնդիրները տեսնեն, քննարկեն եւ փորձեն լուծել յետագայ 20-25 տարիներու համար։ Չէ ծրագրած ապագայի նախագիծեր՝ յստակ նշանակէտերով եւ նպատակակէտերով։ Թէքէ-եան այս իմաստը կ'ուզէ արտայայտել՝ շեշտադրութիւնը դնելով կրթական բնագաւառին վրայ.

*Մեր համայնքներէն ոչ մէկը, մինչեւ հիմա, գործած է ապագայի մտահոգութեամբ. ամէնուն ալ աշխատանքին ձգտումը եղած է բաւարարել օրուան պահանջները. ամէն աշխատանք զոր կատարած են անոնց հոգեւոր պետերն ու աշխարհական իշխանութիւնները՝ եղած է ստիպումի մը հետեւանք եւ ոչ թէ հեռաւոր տեսողութեան ու կանխահոգութեան մը արդիւնք։*

*Եգիպտահայ համայնքը բացառութիւն չէր կազմէր այս մասին, որքան ալ օժտուած վարիչներ ատեն-ատեն եկած ըլլան ազգային գործերուն գլուխը, Գահիրէ թէ Աղեքսանդրիա։ Տեղը չէ, ոչ ալ ժամանակը, այդ ձեռնպահութեան պատճառները թուելու. իրականութիւնը այն է՝ որ եգիպտահայ համայնքն ալ, մէկը ամենէն հիներէն եւ զօրաւորներէն բոլոր հայ համայնքներուն, ցարդ խորհած չէ իր ապագային, ըսել կ'ուզեմ՝ գործած չէ հեռահաս ծրագիրով մը*[135]*։*

## ԱՐԵՒԵԼԱՊԱՇՏՈՒԹԻՒՆ

Համաշխարհային Երկրորդ Պատերազմին յատկացուած առաջնորդող յօդուածներուն մէջ Թէքէեան միանշանակօրէն կը պաշտպանէր Ֆրանսան՝ ընդդէմ ֆաշիսթական Գերմանիային։ Երբեք չէր խնայած իր արմատական հակակրանքը ֆաշիսթական Գերմանիային եւ Իտալիային։

Բայց, պաշտպանելով Ֆրանսան, անոր կը հակակշռէր ոչ միայն ֆաշիզմը, այլ տգէտ ու ապերախտ արեւելքցին, պնդելով՝ որ Արեւելքը պարտական է Ֆրանսային ո՛չ միայն Երկրորդ Պատերազմի նիւթական կամ զինուորական օգնութիւններուն համար, այլ նախ եւ առաջ գաղափարներու եւ մտաւոր ազատագրութեան համար.

*Արեւելքցիք շատ տգէտ կամ շատ ապերախտ պիտի ըլլային եթէ չազդուէին Ֆրանսայի սրտին իջած հարուածէն, եթէ պահ մը սարսափահար մնալէ ետք՝ այնուհետեւ ամէն րոպէ կսկծանքով չյիշէին կատարուածը։ Անկէ ուղղակի ստացուած նիւթական կամ զինուորական օգնութիւններու համար չէ, որ Արեւելքը անհունօրէն պարտական է Ֆրանսայի։ Այդ օգնու-*

*թիւնը ան ստացած է այդ երկրէն առանց չատ անգամ անոր գիտութեանը, անոր լեզուէ՛ն ու անոր գիրքերէն, անոր մեծ մարդոց եւ անոր պատմութեան մեծ դէպքերուն օրինակէն: Այդ օգնութիւնը եղած է էական օգնութիւն մը Արեւելքի կարգ մը ժողովուրդներուն համար, քանի որ անոնք ինքզինքնին գտած, իրենց անցեալին արժէքը գնահատած եւ ազատ ու արժանաւոր ապագայ մը ունենալու աշխատած են՝ մեծ մասամբ շնորհիւ Ֆրանսայէն իրենց եկած գաղափարներուն*[136]:

Արեւելապաշտութեան տարրը այստեղ հանդէս կու գայ երկու հանգամանքով.

1. Արեւելքի այդ հսկայ տարածութիւնը կ՚ընդունուի իբրեւ ամբողջատիրական անորոշութիւն մը՝ ինչպէս Էտուարտ Սայիտ յետագային պիտի բացատրէր իր հանրայայտ *Արեւելապաշտութիւն* (Orientalism) հատորին մէջ, մինչդեռ Ֆրանսան կը ներկայանար իբրեւ ճշգրիտ յատկանիշներով զարգացած գոյութիւն մը: Արեւելքը աշխարհագրական կողմնացոյցէ կը վերածուի բացասական արժէքային համակարգի:

2. Այդ անորոշ Արեւելքի դիմագիծը յետամնացութիւնն է, իսկ իր յառաջդիմութեան համար ան պարտական է Ֆրանսային: Այսպէս, անտեսուած կ՚ըլլայ աշխարհագրականօրէն արեւելեան կողմը գտնուող անթիւ ազգերուն սեփական մշակոյթները, որոնք կրնան բոլորովին տարբեր ըլլալ ֆրանսականէն:

Արեւելականութեան գաղափարային նկարագիր մը դրսեւորած է նաեւ նկարագրելով Սպահանը արեւելապաշտութեան բնորոշ հեշտանքի, օրօրանքի եւ տարաշխարհիկութեան բնաբանին մէջ.

*Սպահան, կանխորդուած ծաղիկներով լի մրմունջովը ծառերուն որոնք յամրօրէն կ՚օրօրուին. աւելի կապոյտ քան կը պատմէին ուղեւորները, Սպահան դժուար մերձենալին, դուն զոր միշտ պիտի դիտենք ծարաւցածի աչքերով, դուն հազար հեշտանք. դուն հանգստացուցիչ, դուն Ստուերոտ Ջտեսնուածն ու Անցամաքելին՝ ուր միայն ծարաւի, միայն երջանիկ ըլլալու բաղձանքէն հիւծած կը հասնինք. դուն Սփոփարար՝ որուն համար տառապած ենք*[137]:

Արեւելապաշտութիւնը քիչ մը տարածուած գաղափարախօսութիւն մըն էր այդ շրջանի որոշ հայ գրողներու մօտ: Թէքէեան չփորձեց ճեղքել այդ գաղափարախօսութիւնը:

## ԵՐԻՏԱՍԱՐԴՈՒԹԻՒՆ

Երիտասարդութիւն հասկացողութիւնը յաճախ կը շահագործեն իշխանա-

կան խաւերը, մէկ կողմէն՝ ցոյց տալու համար իրենց մտահոգութիւնը նոր սերունդին նկատմամբ, միւս կողմէն՝ երիտասարդները պահելու վերահսկողութեան տակ։

Յատկապէս վերահսկողութեան հարցին կապակցութեամբ Թէքէեան կը մատնանշէ.

*Մենք անոնցմէ չենք որ կ՚ուզեն երիտասարդութիւնը չափի եւ օրէնքի ենթակայ, կարգ-կանոնի հպատակ, խոհեմ, խելօք եւ չրջահայեաց տեսնել: Ո՛չ միայն բնական չէ ասիկա, այլ եւ փափաքելի ալ չէ: Կեանքը իր այլազանութենէն ու ոգեւորութենէն շատ բան պիտի կորսնցնէր եւ մարդկային յառաջդիմութիւնը պիտի դանդաղէր ու գուցէ պիտի կասէր ալ՝ եթէ երիտասարդութիւնը չի գար, սերունդէ սերունդ, իր անզուսպ եռանդով եւ անհաշիւ խոյանքով. դժուարահաճ, ինքնահաւան ու ամեհի, քանդելու կամ քանդել ուզելու ինչ որ շինուած է իրմէ առաջ եւ անոր տեղ նորը, միշտ աւելի նորը կանգնել կառուցանել փորձելու*[138]**:**

Երիտասարդութիւնը դիմադրութիւն մըն է մեծահասակներու սովորամոլութիւններուն եւ իշխանութեան.

*Ճիշդ այն պատճառաւ որ երիտասարդութիւնը մարդկութեան յաւիտենապէս դժգոհ, նորասէր ու բացարձակապաշտ տարրը կը ներկայացնէ, ան կ՚արգիլէ որ մարդկութիւնը իր հանգիստին ու գոհունակութեան մէջ լճանայ, թոյլ չի տար որ չափահասներուն սովորամոլ միտքն ու հոգին միահեծան իշխեն աշխարհի վրայ, եւ մանաւանդ իր խանդավառ, վեհանձն ու անձնազոհ ոգիովը, ըլլա՛յ իսկ ծայրայեղ, չի՛ ներեր որ պզտիկներն ու տկարները անիրաւուին որովհետեւ այդ կը պահանջէ միւսներուն շահը, ճշմարտութիւնը ծածկուած կը մնայ որովհետեւ այդ պահուն այդպէս օգտակար կը տեսնեն մեծերը, եւ ազատութիւնը – խորհելու, խօսելու, փնտռելու ու գտնելու ազատութի՛ւնը – սանձահարուի ու կապտուի անո՛ր համար որ ան այլեւս գործին չիգար ոմանց*[139]**:**

Ուրեմն, համաձայն Թէքէեանին, «սովորամոլ միտքն ու հոգին» եւ «միահեծան» իշխանութիւնը չափահասներուն արտադրութիւնն է։ Բնական պիտի ըլլար, որ անոնք փորձեն երիտասարդութիւնը մտցնել կարգապահութեան սահմաններուն մէջ, արտադրելու համար *իրենց* հնազանդող սերունդ մը՝ սովորամոլ միտքով ու հոգիով։ Թէեւ, ինչպէս վերը տեսանք, կամքի դրսեւորումին համար Թէքէեան կը կարեւորէր դպրոցական կարգապահութիւնը։

Եգիպտահայութեան պարագային, երիտասարդներուն 90 տոկոսը անտարբեր է ազգային կեանքին։ Թէ՛ հայկական եւ թէ օտար երկրորդական վարժարաններու հայ շրջանաւարտները «բնաւ, բայց բնա՛ւ, ո՛չ հետաքրքրութիւն կը յայտնեն հայ գիրին, խօսքին եւ գործին հանդէպ, ոչ ալ որեւէ չափով կ՚աշխատին անոնց համար։ Իրենց ընդհանուր թիւին ստուար մեծամասնութիւնը, գրեթէ 90 առ 100ը

կը կազմեն անոնք»[140]:

Այս անտարբերութեան պատասխանատուները ոչ թէ իրենք երիտասարդներն են, այլ տեղական վերնախաւը՝ հայկական կազմակերպութիւններուն վարիչները, որոնք չեն տեսներ վէրքը.

*Միայն ազգային իշխանութիւնները չեն՝ որ կրնան եւ պարտաւոր են դարմանել այս վէրքը ու ոչինչ չեն ըներ բնականաբար՝ քանի որ չեն տեսներ զայն: Նոյնքան պատասխանատու են զանազան հանրային հաստատութեանց եւ ձեռնարկներու վարիչները, որոնք անշուշտ կը հաստատեն հանրային գործի մէջ երիտասարդութեան տեղին հետզհետէ մեծցող պարապը: Պէտք պիտի ըլլար, որ ուրիշ ամէն նկատում մէկդի թողած, ամէնքը մտահոգուէին այս խնդրով, մինչ կ'զբաղին բոլոր խնդիրներով – նիւթական եւ «բարոյական» կամ «հմայք»ի խնդիրներ – բացի այս մէկէն որ ամենակարեւորն է:*

*Անոնք կը գոհանան պատահաբար եղած յաւելումէ մը, քանի մը ամիսը կամ նոյն իսկ տարին անգամ մը երիտասարդի մը այս կամ այն գործին մասնակցութենէն՝ զոր հեռու չեն յաջողութիւն մը համարելէ եւ անով հպարտանալէ: Եթէ յիշէին՝ թէ այդ միակ «շահ»ուն փոխարէն զոր ըրած են իրենք, ո՜րքան կորուստ ըրած է ազգը այդ նոյն ժամանակաշրջանին – իր նորահաս երիտասարդներուն իրեն չգալովը, իրեն համար աշխատելու չմղուելովը, – թերեւս նուազ գոհ ըլլային եւ տխրէին ալ...:*

*Կը մտածեմ թէ կ'արժէ, միմիայն այս հարցով զբաղելու համար, եգիպտահայ համաժողով մը գումարել: Համաժողո՛վ որուն միակ նպատակը ըլլայ Երիտասարդութեան շնորհիւ համայնքին փրկութիւնը*[141]:

Այն երիտասարդութիւնը որ անկախ ու ազատ դիտանկիւնէ կը մեկնաբանէ թէ՛ իր շրջապատը եւ թէ ինքն իրեն, կ'ենթարկուի սուր պայքարի, ինչպէս պատահեցաւ երիտասարդական *Զուարթնոց*ի երկրորդ թիւի պարագային, երբ «չափահասներ»-ը փորձեցին խեղդել պարբերականը, նպատակ ունենալով երիտասարդութիւնը գերի պահել իրենց եւ զանոնք ծառայեցնել իրենց նպատակներուն.

*Ահաւասիկ Զուարթնոցի երկրորդ թիւը, որ գերազանց է առաջինէն: Զուարթնոց գրական եւ գեղարուեստական հանդէս մըն է, եւ միմիայն այդ է: Գրականութիւնը, հոն, «դրօշակ մը չէ որ ապրանքը կը ծածկէ», ինչպէս կ'ըսեն ֆրանսացիք: Յետոյ՝ ան երիտասարդ հանդէս մըն է, այսինքն մեծ մասամբ երիտասարդներէ խմբագրուած հանդէս մը, երիտասարդնե՛ր որոնք անկախ եւ ազատ, նո՛ր աչք մը կը պտտցնեն իրենց շուրջն ու իրենց մէջը:*

*Այսքանը բաւական է՝ որպէսզի երիտասարդութիւնը միշտ իրենց գերի պահել եւ իրենց նպատակներուն ծառայեցնել ուզող մարդիկը դժգոհ ըլլան այս հրատարակութենէն եւ ներքնապէս զայն խեղդել փորձելէ ետք՝ հիմա հրապարակաւ ալ սուր ճօճեն այս մանուկին դէմ, – «չխպնելով իրենց մազէն մօրուքէն»... ինչպէս Թուրքերը կ'ըսեն:*

*Արդարացո՞ւմ մը Դաւիթի դէմ Գողիաթի այս «ելոյթ»ին: Ոչ աւելի ոչ պակաս քան անոր...*

*աւելորդ ըլլալը՝ երբ անդին գոյութիւն ունի Հայրենիք ամսագիրը, ա՛ն որ, ճշդիւ, գրականութիւնը դրօշակ մը ըրած է, եւ յաճախ ի՜նչ կարկտան դրօշակ, կուսակցական ապրանքը ծածկելու եւ քշելու համար: Ուստի թո՛ղ անձնասպան ըլլայ, կ՚ըսեն, Զուարթնոցը, ինչպէս ժամանակին եղեր է հերոսաբար Նոր շարժումը՝ յանկարծ կանգ առնելով իր երիտասարդական վազքին մէջ, արհամարհելով հազարաւոր բաժանորդներու եւ ընթերցողներու իրեն ուղղած աղաչանքն ու իր քայլերուն վրայ թափած ոսկեայ քաջալերանքը...*[142]:

## ՀԱՅԸ ՕՏԱՐԻՆ ԱՌՋԵՒ

Հայկական արժանապատուութիւնը վիրաւորած կ՚ըլլանք, երբ կը մեծարենք հայ մը՝ որ օտարներուն առջեւ կը յայտարարէ իր հայ ըլլալը։ Խեղճութեան ցուցադրութիւն մըն է ասիկա։

*Ապագայ* լրագիրը թէյասեղան մը կը կազմակերպէ ի պատիւ Ռուբէն Մամուլեանին, որ միջազգային հարթակով յայտարարած էր իր հայ ինքնութիւնը։ Մամուլեան կ՚արտասանէ շնորհակալական խօսք մը, ուր իր տարակուսանքը կը յայտնէ՝ թէ ինչո՞ւ պիտի զարմանալ երբ ոեւէ հռչակաւոր անձ մը յայտարարէ իր ազգութիւնը.

*Տարօրինակ պիտի ըլլար՝ եթէ ձին ըսէր թէ ինքը թռչուն է կամ ուրիշ կենդանի մը: Այսպէս ալ մեզմէ ոեւէ մէկը, որքան ալ մեծ հռչակի հասած ըլլայ, իր ո՞ր ազգի զաւակ ըլլալը երբ կը յայտարարէ՝ զարմանքի ի՞նչ կայ այդտեղ...*[143]

*Արեւ*ի մէջ արտատպելէ ետք այս հատուածը, Թէքէեան կը յիշէ նմանատիպ դէպք մը Մայքըլ Արլէնի հետ.

*Կը յիշեմ որ նման բաներ մը ըսուեցան, ասկէ առաջ, Մայքըլ Արլէնին ալ, որ, [՞] պահած չէր իր Հայու անունը բայց գրած էր գրքի մը սկիզբը՝ թէ հայ էր ծագումով եւ անունը Տիգրան Գույումճեան էր...: Ի՜նչ ուրախութիւն, ի՜նչ շնորհակալութիւններ իր Բարիզի եւ Նիւ Եորքի ազգակիցներուն կողմէ՝ իրեն ի պատիւ սրուած ճաշասեղաններու շուրջ: Ու կը յիշեմ թէ Մայքըլ Արլէն ալ պատասխանեց այն ատեն՝ թէ չէ ծածկած իր ազգութիւնը... որովհետեւ չէր կրնար զայն ծածկել: Եւ ասիկա ալ հիացումի, շնորհակալութեան նոր պատճառ մը եղաւ շատերուն համար...*[144]:

Թէքէեան կ՚եզրակացնէ.

*Արդ, կը կարծեմ թէ պէտք է վերջ տալ այս ողբալի վերաբերումին՝ որ օտարներու մէջ համբաւ շինած Հայ մը դրուատելու առիթով, կը նուաստացնէ մնացեալ ամբողջ Հայութիւնը,*

*ոտքի տակ կ՚առնէ անգիտակցաբար մեր ազգային արժանապատուութիւնը։*

*Ի՞նչ, Հայեր չնորհաւորե՞ն ուրիշ Հայ մը որովհետեւ օտարներու առջեւ չէ ուրացեր իր Հայ ըլլալը... Բայց ասիկա անգիտակցութենէ աւելի բան մը՝ հոգեբանութի՛ւն մըն է որ կը բաւէ մեզ ներքնապէս, իբրեւ ազգ, քիչ առ քիչ մեռցնելու, որքան ալ միւս կողմէ փառաբանենք ատեն ատեն մեր լեզուն, մեր գրերու գիւտը, մեր Աստուածաշունչի Թարգմանութիւնը, մեր Եկեղեցին եւ ուրիշ այսպէս հնաւանդ հպարտացուցիչ բաներ...*[145]։

Կը փնտռենք «միջազգային» համբաւի հասած հայ մը՝ որ ըսէ «ես հայ եմ»։ Ուրեմն, աւելի ընդունուած է, որ ան այդպէս չըսէ։ Ուրեմն, կրնայ ըլլալ հայ չէ։ Ուրեմն, հայ ըլլալու համար պէտք է «հայ եմ» ըսէ եւ այդպէս ըսելով դառնայ հայ։ Արդեօք ասիկա նուաստացուցիչ չէ՞ համայն հայերուն համար, հայեր՝ որոնք հայ են առանց «հայ եմ» ըսելու, հայ են որովհետեւ այդպէս են, այդպէս է իրենց փորձառութիւնը։ Երբ մուտք կը գործէ «միջազգային»-ի եւ «օտար»-ի հմայքը, հայու մը հայ ըլլալու իրականութիւնը հարցականի տակ կը դրուի, եւ արդ՝ «ես հայ եմ»-ով անոր կը տրուի քաղաքացիական անձնագիր, չմոռնալով յատուկ մեծարանք մատուցանել իր անձին։ Այս ինքնապատկերի յարմարուողականութեան դէմ է որ կը բողոքէ Թէքէեան։

## ԴԵՐԱՍԱՆԱԿԱՆ ԱՆՀԱՄԵՐԱՇԽՈՒԹԻՒՆ

Արուեստի, արուեստագէտներու, հայկական ձեռնարկներու մասին սփիւռքահայ մամուլը կը նշէ առատաձեռն շռայլանքներով, սակաւաթիւ պարագաներու արձանագրելով վատը։ Ընդհանուր տպաւորութիւնն այն է՝ որ սփիւռքահայ արուեստը կ՚ընթանայ անխռով հոսքով. մրցակցութիւնները, կուսակցական նախընտրութիւնները, արուեստագէտներու եւ կատարողական խումբերու միջեւ հակամարտութիւնները բնաւ ներկայացուած չեն։ Ի. դարու սփիւռքահայ մամուլին մէջ նշուած են միայն կուսակցական աթոռներու բուռն պայքարներն ու բախումնային հակադարձութիւնները, որոնց զուգահեռ, բայց անոնցմէ բոլորովին անկախ, արուեստը նկարագրուած է իբրեւ բիւրեղեայ ու յստակ ուղի մը։ Գրեթէ չեն յիշատակուիր արուեստի մենամարտերը, իրարու դէմ լարուած սադրանքները, հայ արուեստագէտ աշխարհի ոչ-համերաշխ համակեցութիւնը։

Այսպէս, դերասաններ Տիկ. Պէաթրիս, Պ. Օ. Վօլթէր եւ Պ. Վ. Երամեան *Արեւ*ի 1929 Նոյեմբեր 25-ի թիւին մէջ կը յայտարարեն իրենց նոր բեմադրութիւնը՝ Սուրէն Պարթեւեանի *Անմահ բոցը* թատերգութիւնը, որ տեղի պիտի ունենայ Նոյեմբեր 30-ին, Գահիրէի Ռամսէս Թատրոնին մէջ[146]։

Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ անանուն դերասան-դերասանուհիներ *Արեւ*ի Նոյեմբեր 27 թիւին մէջ կը յայտարարեն նոյն Սուրէն Պարթեւեանի *Անմահ բոցը*

թատերգութեան բեմադրութիւնը, որ տեղի պիտի ունենայ միւս բեմադրութենէն մէկ օր առաջ՝ Նոյեմբեր 29-ին, միեւնոյն Ռամսէս Թատրոնին մէջ։ Անոնք իրենց յայտարարութեան մէջ կը գրեն.

*Կազմակերպուած ի նշան բողոքի, Գահիրէի եւ Աղեքսանդրիոյ դերասան դերասանուհի սիրողներու կողմէ, ողբացեալ մեծ գրագէտին այս հոյակապ գործը ուրիշներէն եղծանուած ըլլալուն առթիւ։*

*Անձնական հակառակութեան շարժառիթով չէ որ հրապարակ եկած ենք, այլ ի գին ամէն զոհողութեան, որուն ցայտուն ապացոյցն են մեր խիստ ժողովրդական գիները*[147]։

Առանց նշելու անուններ կամ վերագրումներ, մէկ տարի ետք Թէքէեան կը գրէ.

*Կայ սակայն բան մը որ հին ժամանակ ալ գոյութիւն ունէր եւ այժմ աւելի զարգացած է մեր թատրոնին մէջ. ան՝ դերասան դերասանի դէմ նախանձի եւ սխալ հասկցուած շահու հետեւանօք մղած տգեղ պայքարն է, որ առաջ կ՚երթայ մինչեւ հոն՝ ուր վերջին պահուն խաղալ մերժելով ներկայացում մը կը վտանգուի, կամ միեւնոյն օրը յատկապէս նոր ներկայացում մը կը կազմակերպուի նախորօք ծանուցուածին դիմաց*[148]։

Այստեղ Թէքէեան կոտրած կ՚ըլլայ գաղութահայ աւանդոյթը՝ արուեստի անպայմանօրէն համերաշխութիւնը ցուցադրող, երեւան բերելով սփիւռքահայ արուեստագէտներու բոլորովին այլ դիմագիծ մը, որ, տարբեր դրսեւորումներով եւ յաճախ շատ աւելի ուժեղ ազդեցութիւններով, կը գործէ մինչեւ այսօր։

## ԸՆԹԱՑՔ ԵՒ ԱՐԴԻՒՆՔ

Արդիապաշտ-դրամատիրական շրջանի գաղափարախօսութիւններէն (բայց ոչ գաղափարներէն) մէկն է առարկայական արդիւնքին սեւեռումը, ոչ միայն ապրանքի եւ նիւթական շահոյթի արդիւնաւէտութեան առումով, այլեւ մտաւորական։ Այսինքն, մշակութային գնահատութիւնները կը կատարուին հիմնուելով ոչ թէ իրի ներքին բովանդակութեան այլ անոր արձագանգներուն արտադրած տպաւորութիւններուն վրայ։ Մէկ խօսքով՝ մշակոյթի փոխանակային արժէքին վրայ։

Գրելով Առաջին Համաշխարհային Պատերազմի Ֆրանսայի երիտասարդութեան մասին, Թէքէեան դիտել կու տայ, որ անոր գլխաւոր յատկանիշը «կը կայանայ իր ամբողջ կարողութիւնը ու ճիգը տալու, որոնելու եւ գիտնալու մէջ, եւ այնչափ չի՛ հետաքրքրուիր բանի մը արդիւնքով – այսինքն յաջողութեամբ –

որքան ինքը իր էութեան մէջ գտած միջոցներուն լիութեամբն ու կատարելագոր-ծութեամբը»[149]:

Ասիկա յստակ մատնանշում մըն է արժէքային համակարգը փոխադրելու դէպի ընթացքը, ընթացք մը որ կը շարժի ներսէն դէպի դուրս, սպառողականէն դէպի փոխանակային, ենթակայէն դէպի առարկայ:

Այս նոյն թերութիւնը կը վերագրէ հայկական կուսակցութիւններուն, որոնք մտահոգուած են դէպքի կայացումով եւ անոր ուռճացումով, առանց ուշադրու-թիւն դարձնելու կատարուածի ընթացքին եւ հետեւանքին վրայ[150]:

## ԿՈՒՌՔԵՐՈՒ ԿԱԶՄԱՔԱՆԴՈՒՄ

### 1. ԽՐԻՄԵԱՆ ՀԱՅՐԻԿ

Թէքէեան չ'ախորժիր դէմքերու բացարձակումէն: Իսկ հայերուս համար կռոյր ազգայնական բացարձակացումները ամէն տեղ են, որոնք կը խանգարեն կազ-մալուծել անձի մը դիմագիծն ու գործունէութիւնը, շերտաւորել եւ գտնել տրամա-սացութիւններ թէ՛ անձին տարբեր գործունէութիւններուն միջեւ եւ թէ՛ անձին եւ շրջապատին միջեւ:

Թէքէեան տարբեր առիթներով փորձած է կատարել այդ կազմաքանդում-ները՝ մեծ ու փոքր աստիճաններով: Հաւանաբար, այս առումով ամենէն աչքա-ռու պարագան Խրիմեան Հայրիկն է: Թէքէեան կը զանազանէ Խրիմեանը իբրեւ հայրենասէր անձ եւ հանճարեղ խօսող ու գրող, եւ իբրեւ վարչական ու քաղաքա-կան գործիչ:

1937-ին, յիշատակելով զանազան փաստարկներ, ան կ'եզրակացնէ՝ որ հայ ժողովուրդի ճակատագրական այդ պահուն, Խրիմեան չէր յաջողած իբրեւ վարչական գործիչ.

*Կը վերջացնեմ յայտարարելով՝ թէ այս տողերը նպատակի մը կը ծառայեն, Խրիմեանը ճիշդ ճանչցնելու նպատակին: Հայրենասէ՛ր՝ այո՛, մերթ ընդ մերթ հանճարեղ խօսո՛ղ կամ գրո՛ղ, դարձեալ այո՛: Բայց լաւ առաջնո՛րդ, լաւ պատրիա՛րք, լաւ պատուիրա՛կ, լաւ կաթողի-կո՛ս, երբե՛ք: Քառասուն տարի առաջ Պարթեւեան Վաղուան ձայնի մէջ որակեց զայն ըստ արժանւոյն եւ այդ պատճառաւ թշնամութիւն յարոյց իրեն ու թերթին դէմ: Այսօր, քանի որ Խրիմեանի աղիտալի ազդեցութիւնը դեռ կը գործէ մեր մէջ ինծի պարտք համարեցի գրել, փաստերը տալով, թէ այսքան անխորհուրդ մտքով եւ թեթեւ նկարագրով – ուրիշ աւելի ծանր բառեր չգործածելու համար – վարիչի մըն է որ հետեւած է մեր ժողովուրդը իր ազգային ճակատագրին հետապնդման մէջ եւ ի հարկէ տուժած, դառնօրէն տուժած է ատով, – որքան ալ արդար ըլլար Խրիմեանի եւ իր կողմէ այդ ճակատագիրը սրբագրելու համար սնուցած ցանկութեան, ստեղծուած շարժումին խորքը*[151]:

Իսկ ի՞նչ են Թէքէեանի առարկութիւնները։

Առաջինը կուսակրօնութեան հետ կապուած դէպք մըն է.

*Առաջին դէպքը – կը տեսնէք որ մանրավէպ չեմ ըսեր այլեւս – պատմած է եղեր Պայքարի մէջ Պ. Ա. Նազար՝ կուսակրօնութեան ջնջումը ջատագովող յօդուածի մը մէջ, զոր Պայքարէն արտատպեր է Արեւ, Արեւէն արտատպեր է Հ. կոչնակ (բայց այդ դէպքը միայն) Հ. կոչնակէն Ազդակ եւ Ազդակէն ալ մեր պատուական դրացին։ Ան հետեւեալն է.*

*Էջմիածնի Գէորգեան Ճեմարանի – Ընծայարան նոյն ատեն – տեսուչը Կարապետ Եպիսկոպոս կը համոզէ իր շրջանաւարտներէն խումբ մը որ կուսակրօն ըլլան եւ ձեռնադրութենէն օր մը առաջ զանոնք կը ներկայացնէ Խրիմեան Կաթողիկոսին՝ որպէսզի իր հայրապետական օրհնութիւնը տայ անոնց։ Խրիմեան «վերէն վար կը չափէ ընծայացուները» եւ կ՚ըսէ.*

*- Վա՛խ զաւակներս, վա՜խ, ո՞ր սատանան ձեր փորը մտաւ եւ համոզեց որ կուսակրօն ըլլաք։ Մեղք էք, տղա՛քս, գացէ՛ք մէյմէկ աղուոր հայուհի գտէք ու կարգուեցէք...*[152]։

Թէքէեան դէմ չէ վերացնելու կուսակրօնութիւնը։ Ընդհակառակը, ան կը թուի քաջալերել զայն։ Բայց եկեղեցական հիմնարկ մը պաշտօնականացուցած է կուսակրօնութիւնը։ Կուսակրօնութիւնը հիմնարկայնացուած է։ Եթէ կաթողիկոս մը դէմ ըլլայ կուսակրօնութեան, իր պարտականութիւնն է նախ եւ առաջ սկսիլ այս առումով բարեփոխումներ մտցնել, որպէսզի հարցը յանգի համերաշխ լուծումի։ Իր տնօրինութեան տակ կը գտնուի փորձի եւ գործնական քայլի մեքանիզմները։ Ճեմարանի շրջանաւարտները դաստիարակուած են կուսակրօնութեան սկզբունքով եւ յանկարծ այդ նոյն հիմնարկին առաջնորդը կուսակրօնութիւնը կը համարէ սատանայի միջամտութիւն։ Այս քայլը ոչ միայն հեռու է խորքային լուծումներ առաջադրելէ, այլ վնասակար է եկեղեցական կեանքի բնականոն ընթացքին եւ հաւատացեալներու հոգեբանութեան համար։

Անհատական առումով, ենթականերուն վրայ այս վճիռին ունեցած ազդեցութեան մասին կ՚արտայայտուի Թէքէեան.

*Կ՚երեւակայէ՞ք խեղճ ընծայացուներուն եւ, անոնցմէ՛ աւելի, խե՜ղճ տեսուչ եպիսկոպոսին գլուխը, ի լուր կաթողիկոսական «օրհնութեան»։ Տեսուչը, Կարապետ Եպս. Տէր Մկրտիչեան, զոր Էջմիածնի մէջ անձամբ ճանչնալու բախտը ունեցայ վերջէն, հայ բարձրաստիճան եկեղեցականութեան նոր շրջանի ամենէն ծանրախոհ, հմուտ, հաւատալից եւ մաքրական անդամը, կ՚երեւակայեմ թէ ի՛նչպէս գայթակղած ու տառապած է իր շրջանաւարտ սաներուն ուղղեալ այս չըլլալի՜ք բառերէն։ Ինք որ ամիսներով ու տարիներով զանոնք պատրաստած ու վերջէն համոզած էր կուսակրօն եկեղեցականութիւնը ընդունելու՝ որովհետեւ Հայաստանեայց Եկեղեցին այդ կարգը կը պահէր իր նուիրապետութեան մէջ եւ որովհետեւ Էջմիածինը պէտք ունէր իրեն համար զարգացած միաբաններու եւ ժողովուրդին համար՝ անոնցմէ ընտրուած առաջնորդներու ահա յանկարծ կը տեսնէր իր պետին, Հայ Եկեղեցւոյ բարձրագոյն աստիճանաւորին ամենայն թեթեւութեամբ եւ անհոգութեամբ, ճշդագոյն*

*բառերը գործածելու համար՝ ամենայն զէվզէկութեամբ եւ անխղճութեամբ տուած լախտի հարուածը իր գործին ու «սատանայ» անունը իր անձին...։ Պատմութիւնը չի ըսեր՝ թէ այդ ուժ սաները ի՛նչպէս ազդուեցան իրենց եւ ամէնուս Հայրիկին վերոյիշեալ չնաշխարհիկ խրատականէն եւ թէ Կարապետ Եպս. ի՛նչպէս ջանաց եւ յաջողեցաւ հակազդել կաթողիկոսական քայքայիչ խօսքերուն, բայց բնաւ պիտի չզարմանամ եթէ լսեմ՝ որ այդ դասարանին կը պատկանէին յետագային իրենց վեղարը «ջաղացքներու վրայէն նետող» Երուանդ Տէր Մինասեանները, Գառմէնները կամ Արսէն Ղլտճեանները*[153]։

Նման արարքները վտանգաւոր հետեւանքներ կրնան ունենալ թէ՛ եկեղեցիին եւ թէ՛ ենթականերուն համար.

*Հարկ կա՞յ ըսելու թէ այս դաստապարտութեան վճիռը արձակելով ընդդէմ Խրիմեանի, կուսակրօնութեան պաշտպանութիւնը չեմ ըներ այստեղ։ Խրիմեան ինքն իսկ կրնար գայն ջնջելու աշխատիլ, համաձայն իր համոզումներուն եւ կարգ-կանոնի սահմանին մէջ։ Յաջողէր կամ ոչ մեղադրելի պիտի չըլլար՝ եթէ պէտք եղած թաքթով գործած, Եկեղեցին տկարացումէ եւ հօտը գայթակղութենէ պահած ըլլար։*

*Մինչդեռ՝ տեսէ՛ք թէ նոյն իսկ այսքան տարի վերջը ի՛նչ կրնայ ըլլալ իր ընթացքին հետեւութիւնը կուսակրօն եկեղեցականութեան նուիրուած կամ նուիրուելու պատրաստուող երիտասարդներու վրայ. – բաղդատաբար նուազ գէշ պարագային՝ Հայ եկեղեցին զրկել անոնց ծառայութենէն, որուն ան պէտք ունի չափազանց. յոռեգոյն պարագային՝ անոնց տալ կեղծիքի, ծածկաբար մեղանչելու եւ գուցէ ընտանեկան բոյներ աւերելու արտօնութիւնը*[154]։

Թէքէեանի երկրորդ առարկութիւնը կապուած է Փանոս Թէրլէմէզեանի հետ։ Ան կը նկարագրէ դէպքը եւ կու տայ իր աւելի քան հիմնաւոր մեկնաբանութիւնը.

*Ծանօթ նկարիչ Փանոս Թէրլէմէզեան Էջմիածնի ճեմարանը աւարտելուն, առանց իր հայրենակցին՝ կաթողիկոս Խրիմեան «Հայրիկ»ի լուր տալու, Մոսկուա կը մեկնի, հոն նկարչութիւն ուսանելու։ Երբ տարի մը վերջը, արձակուրդին Էջմիածին կը դառնայ ու Խրիմեանի կը ներկայանայ, այս վերջինը «քաղցր կատակով մը» կ՚ըսէ անոր.*

*- Ո՞ւր փախար գացիր, Փանո՛ս, ես մտածեր էի վարդապետ ձեռնադրել քեզ։*

*- Բայց ես պիտի չկամենայի ատիկա, Հայրի՛կ, որովհետեւ առանց կնկան չեմ կարող...» կ՚ըլլայ պէտք եղածէն աւելի համարձակ, զօրանոցային լեզուով պատասխանը երէկուան աշակերտին առ Ամենայն Հայոց Վեհափառ Կաթողիկոսը, – որ նոյն «քաղցրութեամբ» իրեն կ՚ըսէ ահա՛.*

*- Ա՛յ տղայ, դու չգիտե՞ս որ աշխարհական մարդիկ միայն մի կին կ՚ունենան, իսկ վարդապետները տասնից աւելի։*

*Առանց մեկնութեան... դէպքս հրատարակող թերթին կամ թերթերուն կողմէ։*

*Եւ իրաւ ալ, ան կարօտ չէ ոեւէ մեկնութեան, ան մեկնութիւն չի վերցներ...։*

*Պէտք է յայտնեմ, սակայն, թէ հոս յանցաւորը Փանոսն է աւելի՝ քան Խրիմեանը, որքան ալ վերջինը իր անլրջութեան մէկ նոր ապացոյցը տուած ըլլայ իր այդ խօսքով: Բայց, գոնէ, Խրիմեան իր անպատկառ, անբարոյ նախադասութիւնը միայն մէկ հոգիի ըսած է, թէեւ գայն մտածած ըլլալը, արդէն, մահացու մեղք է եկեղեցականի մը, ո՞ւր մնաց կաթողիկոսի մը համար: Փանոս պէտք էր իրեն պահէր գայն, եթէ միայն կը յարգէր Խրիմեանը. ինչպէս կ'ենթադրեմ թէ կը յարգէր: Իսկ հայ խմբագիրները որ հրահանգիչ, գուցէ զուարճալի, յամենայն դէպս «հետաքրքրական» գտնելով պատմութիւնը անոր արձագանգ կ'ըլլան, անշուշտ Հայրիկը պաշտողներ են միւս կողմէ, պաշտողնե՛ր որոնք փոխանակ Նոյի զաւակներուն նման ծածկելու իրենց հայրիկին մերկութիւնը՝ ընդհակառակն գայն կը քաշեն հրապարակին մէջտեղը եւ կ'ուզեն որ ամէն ոք գայն տեսնէ ու ծիծաղի անոր վրայ: Տարօրինա՜կ պաշտում, սէր եւ յարգանք արդարեւ...*[155]:

Թէքէեանի յիշատակած երկու դէպքերը կարելի չէ ընդունիլ իբրեւ առանձին երեւոյթներ: Անոնք տեղի ունեցած են նախ եւ առաջ Խրիմեանի վարչական տկարութեան պատճառով: Խնդիրը շատ աւելի լայն է քան երկու դէպքերը, որոնք պատահաբար կրնային տեղի ունեցած չըլլալ:

Թէքէեան կուռք մը կազմաքանդեց կամ քննականացուց: Բնաւ զարմանալի չէ, որ յօդուածին պատասխանեցին, աւելի ճիշդ՝ Թէքէեանի դէմ յարձակեցան, Ա. Ն. Նազար (*Սիոն*), *Նոր օր*ի խմբագրականը, *Պայքար*ի խմբագրականը, Գ. Ս. Փափազեան (*Պայքար*), Գ. Պարթեւեան (*Պայքար*) եւ նամակագիր մը (*Պայքար*):

Թէքէեան կը պատասխանէ: Անջրպետ մը կայ իրական գործողութիւններուն եւ ներկայացուած պատկերներուն միջեւ: Քարացնելով դէպքերն ու դէմքերը, վնասած կ'ըլլանք ժողովուրդին արթունութիւնն ու ճշմարտախնդրութիւնը: Գաղափարը պէտք է արժեւորուի՝ լաւ թէ վատ, համաձայն իր բովանդակութեան, այլ ոչ թէ արտաքին կանխադրոյթներու.

*Ուրիշ ժողովուրդներու մէջ, ոչ միայն համբաւուած անձերն այլ եւ հաստատութիւնները, հաւաքական մեծ շարժումներն ու զանոնք վարող գաղափարները անընդհատ քննութեան եւ դատաստանի կ'ենթարկուին, բա՛ն մը որմէ կ'օգտուի ժողովուրդը, արթուն եւ ճշմարտախնդիր մնալով միշտ: Մեր մէջ, երբ ա՛յնքան առասպել՝ քանդելի, երբ այնքան մեծ է հակասութիւնը գովուած անձերուն, հաստատութիւններուն եւ գործերուն եւ մեր անոնցմէ ստացած արդիւնքներուն միջեւ, մենք կը թողունք մեր մօտիկ, մեր ճակատագրական անցեալը իր միանգամ ընդմիշտ տեսնուած գոյնովն ու ձեւովը, առանց անոր մէջ լաւը գէշէն, իրաւը սուտէն զատելու մտահոգութեան, առանց պատմութիւնը ճիշդ ճանչնալու եւ ճանչցնելու, մեր ներկան ու ապագան ճշմարտութենէ բղխեցնելու, միա՛յն ճշմարտութեան վրայ կառուցանելու կիրքին: Այսպէս է՝ որ մեր յուսախաբութիւնները՝ մէկ կողմէն, մեր մտքի անշարժութիւնը, անհետաքրքրութիւնը, քննադատութեան ոգիին պակասը՝ միւս կողմէն, կ'ստեղծեն այնպիսի մթնոլորտ մը՝ որուն մէջ մեր ազգային ու կրօնական հաւատքը կը ծուլանայ եւ կը պաղի հետզհետէ, կը պարպուի իր միջուկէն, կը թափի փոշիացած:*

*Այստեղ շատ չեմ կրնար ընդլայնել այս գաղափարը, բայց կ՚ըսեմ թէ մենք կուռքեր պաշտած ենք, կը պաշտենք ու կ՚ուզենք պաշտել միշտ՝ Բարենորոգում, Ազգ. Սահմանադրութիւն, Պերլինի Դաշնագիր, Յեղափոխութիւն, Հնչակեան կուսակցութիւն, Հ. Յ. Դաշնակցութիւն, Անկախ Հայաստան, Խորհրդային Հայաստան իրական կամ խորհրդանշական անուններով՝ որոնց մէջ նաեւ անձերու անուններ՝ Խրիմեան, Վարժապետեան, Իզմիրլեան, Արծրունի, Զերազ, Փորթուգալեան:*

*Արդ, կ՚ընդունիմ որ ատեն մը ոչ միայն յարգելի ու սիրելի, այլ մինչեւ իսկ պաշտելի եղած ըլլան այս գաղափարներն ու անձերը, ատե՛ն մը՝ երբ դեռ յայտնի չէր անոնց արդիւնքը: Ասիկա չի նշանակեր, անշուշտ, որ զանոնք յարգելու եւ սիրելու իսկ չենք այսօր՝ այդ արդիւնքները ձախող կամ ժխտական եղած ըլլալուն պատճառաւ: Ոչ, այդպիսի բան մը ըսող չկայ: Անցեալի մարդոց անձնուիրութիւնն ու կարողութիւնը (բայց մանաւանդ կարողութիւնը՝ միացած անձնուիրութեան) միշտ յարգանք ու սէր կը պարտադրեն մեզի, որքան ալ ձախողած ըլլայ անոնց գործը: Իսկ անցեալի գաղափարները, բոլոր գաղափարները, պէտք է յարգել միմիայն իրենց օգտակարութիւնը նկատի առնելով*[156]*:*

Այս յօդուած-պատասխանին մէջ կը ստիպուի քիչ մը առաջ երթալ Խրիմեանի հարցին առնչութեամբ: «Երկաթեայ շերեփ»-ի պատումը արդիւնքն է տարածաշրջանի խաղացող ուժերուն հանդէպ մեր ունեցած անհասկացողութեան: Ուժային յարաբերութիւններու իրական մրցախաղ մըն էր, որմէ մենք դուրս եկանք պարտուած, բայց հայրենասիրական պատումով «յաղթանակած»:

*Իր հայրենասիրութիւնը, իր ժողովրդասիրութիւնը կասկածի տակ չեն: Ըսի նաեւ, նախկին յօդուածիս մէջ, թէ տեսակ մը հանճար ունէր ան՝ իր մեծ հմայքէն զատ: Իր քաղաքականութիւնը սխալ եւ անհեթեթ քաղաքականութիւն մը եղաւ սակայն: Իր հարստահարութեանց տեղեկագիրները անհաշիւ աքթեր են, ժամանակն ու միջավայրը հաշուի չառնող աքթեր՝ փոթորիկով յղի: Իր հրաժարականը պատրիարքական պաշտօնէն, ներքին եւ արտաքին պատճառներով, անարժան է մեծ մարդու մը համար՝ որ կը տապալուի, երբեք չի հրաժարիր: Իր «Հարիսայի եւ երկաթեայ շերեփի» քարոզը, Պերլինի վեհաժողովէն ետք, քարո՛զ որ այնքան խանդավառած է ու դեռ այսօր կը խանդավառէ մենէ շատերը, գլուխ-գործոց մըն է անգիտակցութեան: Ի՞նչպէս. Թուրքիան, իր պարտութենէն ետք, ընդդէմ Ռուսիոյ կը գտնէ՞ պաշտպանութիւնը միւս բոլոր մեծ պետութիւններուն եւ մեր Պատուիրակութեան նախագահը, Թուրքիոյ Հայոց նախկին պատրիարքը, Թուրքիոյ մայրաքաղաքին մէջ, եկեղեցւոյ բեմէն կոչ կ՚ընէ՞ Հայերուն զինուելու եւ զէնքի ուժով իրենց իրաւունքը – արդա՛ր անշուշտ – պահանջելո՞ւ: Եւ ահա՛, կուսակցութեանց կազմութենէն իսկ առաջ, մեր ապստամբական պատրաստութիւնները գաւառներու մէջ, յետոյ կազմութիւնը կուսակցութիւններուն, անոնց ցոյցերն ու փորձերը եւ, ասո՛նց հետեւանքով, գաւառի եւ Պոլսոյ ջարդերը 95-96ի՝ երբ սկսաւ «Վշտակիր Կաթողիկոս Ամենայն Հայոց», «Վշտակիր Հայրիկ» ստորագրել իր կոնդակներն ու նամակները՝ չեմ գիտեր որի՞ եւ ինչի՞ համար:*

*Թէ «երկաթէ շերեփի» քարոզէն քանի մը տարի վերջը, Պոլսոյ իր մենարանին մէջ,*

*յանձնարարած ըլլայ Մարսէյլ գացող ճամբորդի մը ըսելու իր կողմէն իր Վանի գործակից Փորթուգալեանին՝ որ «թերթը դադրեցնէ, անժամանակ է» (Հէյվըրհիլի Կարօի յօդուածը, Պայքարէն արտատպուած) ցոյց կուտայ իր զղջումը բայց ոչ մէկ բան չի դարմաներ, կը հրաւիրէ մեզ մեր հիացումը չափաւորելու միայն:*

*Քիչ կը կշռեն, իր այս մեծ սխալներուն քով, Հայաստանի մէջ կրթութեան գործին աշխատած, առաջին թերթը հիմնած, սուվելոց նպաստը կազմակերպած, յետոյ «Գերմանիոյ կայսրուհիին վրայ լաւ տպաւորութիւն թողած», Նուպար փաշայի բարենորոգմանց ծրագիրը յանձնարարած (Թուլօրէն) եւ կաթոլիկոսութեանը շրջանին՝ եկեղեցական կալուածներու գրաւման դէմ բողոքած (իրմէ առաջ՝ նոյն բողոքը եւ ընդդիմութիւնը կատարուած էր դպրոցներու փակման դէմ) ըլլալու արժանիքները: Ատոնք պիտի ընէր միջին կարողութեամբ ուրիշ եկեղեցական առաջնորդ մըն ալ: Ասոնց համար կրնայ իր օրին սիրուիլ, պաշտուիլ ալ մէկը՝ եթէ Խրիմեանի պէս հմայք ու հանճարի նշոյլներ ունենայ մանաւանդ. չի կրնար, իբրեւ մեծ մարդ, պաշտուիլ մահէն երեսուն տարի վերջը դեռ*[157]:

Հինգ տարի ետք՝ 1942-ին, Թէքէեան պիտի բարձրացնէր ուրիշ խնդիր մը, ցոյց տալու համար Խրիմեանի քաղաքական անհետեւողականութիւնը:

Այսպէս, 1942 Փետրուարին Արշակ Ալպօյաճեան *Արեւ*ի մէջ կը հրապարակէ Խրիմեանի 1895 Մարտ 20-ին Նոր Նախիջեւանէն ղրկած նամակը Նուպար փաշային: Նամակը կը վերյիշէ 17 տարի առաջ կատարուած դէպք մը՝ կապուած 1878-ի Պեռլինի վեհաժողովին հետ: Խրիմեան կը յիշեցնէ Նուպար փաշային, թէ իբրեւ վեհաժողովի պատգամաւոր, ինք անձամբ Ներսէս Պատրիարքին կողմէ Նուպարին ներկայացուցած էր Յիշատակագիր մը, որ նախատեսուած էր ներկայացնել Պեռլինի Վեհաժողովին: Խրիմեանին յանձնարարուած էր ստանալ Նուպարի դիւանագիտական կարծիքը: Նուպար Յիշատակագիրը կը գտնէ անյարմար եւ չափազանցուած եւ կը կազմէ չափաւորեալ տարբերակ մը, որպէսզի հնարաւոր դարձնէ հայոց խնդիրը: Այս չափաւորեալ Յիշատակագիրը կը մերժէ պատրիարքը՝ իր գլխաւոր խորհրդական Գրիգոր Օտեանի ճնշումին տակ: Խրիմեան սաստիկ վիշտ կը զգայ այս որոշումին պատճառով եւ կը գրէ, որ եթէ Նուպարի տարբերակը ներկայացուած ըլլար, «61րդ յօդուածը այնպէս թոյլ, անորոշ կերպով չէր արձանագրուէր, այլ աւելի զօրաւոր, վճռական ու գործնական»[158]:

Թէքէեան լուրջ հարցադրումներ ունի: Խրիմեան ինչո՞ւ ասիկա կը յիշէր 17 տարի ետք եւ, եթէ համոզուած էր Նուպարի չափաւորութեան վրայ, ինչո՞ւ այլ կարեւոր առիթներու չէր փորձած օգտուիլ անոր դիւանագիտական հասողութենէն: Թէքէեան ասիկա կը համարէ քաղաքական անհետեւողականութիւն.

*Թէ ինչո՛ւ Խրիմեան Հայրիկ* 1895*ին Նոր Նախիջեւանէն, ուր կը գտնուէր քանի մը օրուան համար իր դէպի Ս. Բեդրսպուրկ (եթէ չեմ սխալիր) ուղեւորութեան ընթացքին, ուղղած է Նուպար փաշայի այն նամակը որմէ մէջբերում մը ըրած էր Պ. Ա. Ալպօյաճեան իր շաբաթ*

*օրուան գրութեան մէջ, հարցում մըն է որուն պատասխանը չեմ կրնար գտնել:*

*Խղճահարութիւնը բաւական չէ բացատրելու համար իր այդ քայլը: Մանաւանդ որ, ինչպէս կը գրէ, ինք ո՛եւէ պատասխանատուութիւն ունեցած չէ Նուպարը մէկ կողմ դնելու որոշման մէջ, ընդհակառակն՝ կողմնակից եղած է որ անոր ծրագիրը որդեգրուի եւ գործին հետապնդումը անոր խնամքին յանձնուի:*

*Պիտի չփնտռեմ, հետեւաբար, Հայրիկի նամակին բացատրութիւնը, այլ, ատոր հետ առնչութեամբ, պիտի անդրադառնամ, վերստին, ուրիշ կէտի մը:*

*Նամակին թուակա՛նն է՝* 1895*, որ գիս կը հարկադրէ այդ անդրադարձումին:*

*Այդ թուականին տեղի ունեցան Թրքական Հայաստանի եւ փոքր Ասիոյ միւս գրեթէ բոլոր հայաբնակ քաղաքներուն եւ գիւղերուն մէջ Սուլթան Համիտի կազմակերպած հայկական կոտորածները:*

*Սահմանակից գաւառներէն Հայեր կը փախչէին եւ կը հասնէին Կովկաս: «Փախի տարին» էր, ուր «Պուտ'մ կաթ» կ'աղերսէին մանուկները իրենց սովահար մայրերուն վիզէն կախուած՝ ինչպէս Ահարոնեան կը գրէր, կամ որուն յորձանքին մէջ «Մէրն զմանուկը մոռցաւ», ինչպէս կ'ըսէր աղէտահար ժողովուրդը եւ ինչպէս քանի մը տարի վերջը Թուրքիայէն գաղտնաբար Շիրակի ղրկած իր մէկ պատկերին խորագիր պիտի ընէր Ռուբէն Զարդարեան:*

*Խրիմեան յուզուած, ընկճուած է անշուշտ: Այդ օրերէն սկսեալ ան պիտի աւելցնէ իր «Հայրիկ» անունին վրայ «վշտակիր» բառը, զոր վերջէն ուրիշներ ալ պիտի գործածեն, նոր ջարդերէ ետք որոնք պիտի չպակսին...:*

*Եւ հոս, հարցը կը ծագի ահա որ հետեւեալն է:*

*Եթէ Խրիմեան,* 1878*ին արդէն, կողմնակից էր Նուպարի աւելի չափաւոր ծրագրին եւ եթէ Պատրիարքարանի յամառութեան կը վերագրէր* 61*րդ յօդուածին «այնպէս թոյլ, անորոշ կերպով» արձանագրութիւնը, ուրեմն ինչո՛ւ,* 1878*էն ետք, անգամ մըն ալ խորհուրդ չհարցուց Նուպարի՝ ըլլա՛յ իր համբաւաւոր «երկաթեայ շերեփ»ի քարոզը խօսելու կամ ըլլայ իր Վանի երկրորդ առաջնորդութեան շրջանի գործունէութիւնը ունենալու համար:*

*Գիտենք որ այդ քարոզը, այդ գործունէութիւնը եւ իր Պոլիս դարձէն վերջ մինչեւ կաթողիկոս ընտրուիլն ու մեկնիլը իր ունեցած զանազան արտայայտութիւնները դեր մը կատարեցին մեր յեղափոխական գործին ծագման եւ տարածման մէջ. ի՞նչ լոյսով էր, եւրոպական դիւանագիտութենէն՝ զոր ճանչցած էր* 1878*ին՝ ի՞նչ ակնկալութիւններու հիման վրայ էր, որ քաջալերեց այդ գործը, որուն ուղղակի հետեւանքն եղան* 1895-96*ի կոտորածները:*

*Կասկածի տակ չէ իր հայրենասիրութիւնը, բայց հոս անգամ մը եւս կը տեսնուի, ըստ իս, Խրիմեանի քաղաքական մտածողութեան մէկ մեծ թերութիւնը՝ որ ուրիշ բան չէ, բայց եթէ իր անկապակցութիւնը*[159]*:*

## 2. ՊՕՂՈՍ ՆՈՒՊԱՐ ՓԱՇԱ

Պօղոս Նուպար փաշայի «գթասրտութեան», «դրամական առատաձեռնութեան» եւ «մեծ ազգասիրութեան» մասին Թէքէեանի կարծիքը չի կրնար աւելի

դրական ըլլալ.

*Փաշան գթասիրտ էր, ուրեմն, եւ այս մասին պնդելու պէտք չկայ, քանի որ մէջտեղն են իր գործերը, իր հարիւր-հազարաւոր ոսկիներու հասնող առատաձեռնութիւնները հայ ազգին համար, որոնք կը յայտնեն միեւնոյն ատեն իր ջերմ եւ մեծ ազգասիրութիւնը*[160]:

Բայց իր ազգասիրութիւնը ամբողջական չէր: Թէքէեան ուզած է Պօղոս Նուպարը տեսնել գթասրտութենէն անդին, իբրեւ անձ մը՝ որ ներքնակա-նացուցած ըլլար իր ազգութիւնը, հետեւաբար, միջազգային ատեաններու մէջ խնդրարկուի փոխարէն ներկայանար իբրեւ պահանջատէր.

*Ջերմ, մեծ եւ իրական անշուշտ, «բայց տեսակ մըն» էր այդ ազգասիրութիւնը՝ որուն ոչինչ կրնայինք մեղադրել բայց կ՚զգայինք թէ ան չէ բոլորովին ինչ որ պէտք է ըլլայ վճռական րոպէի մը իր ազգը ներկայացնող, անոր դատը պաշտպանող եւ անոր համար արդարութիւն խլելու աշխատող պետի մը ազգասիրութիւնը: Երկար ժամանակ, չէի կրցած բացատրել թէ ի՛նչ է անոր պակսածը՝ երբ օր մը կարծեցի վերջապէս գտած ըլլալ բացատրութիւնը գիս մտահոգող հարցին. – Մեր Նախագահը, բաւական չճանչնալով իր ազգը, աւելի դուրսէն կը սիրէր զայն քան ներսէն, եւ իր ազգասիրութիւնը շատ կը նմանէր գթասրտութեան: Այս պատճառաւ իր ձայնը որ յաճախ ուժեղ կը հնչէր իր ազգակիցներուն մէջ, կը նուազէր օտարին առջեւ, պահանջատէրի մը չեշտին տեղ՝ կ՚առնէր խնդրարկուի մը չեշտերը...:*

*Պիտի չուզէի որ այս դատաստանը աւելի ծանր կարծուի եւ ըստ այնմ մեկնուի քան ինչ որ է իրօք: Նպատակս է հասկցնել՝ թէ կրնար մեր դատը անպատճառ ուրիշ արդիւնք ունենալ եթէ Ազգ. Պատուիրակութեան գլուխը գտնուէր, օրինակ, «աւելի՛ հայ» Նորատունկեան մը կամ Մասեհեան խան մը, որոնք պիտի կարծուէր թէ աւելի՛ մեծ դիւանագիտական կարողու-թիւններ ալ ունէին: Այդ համոզումը չունիմ բնաւ, – ինչ որ գիս չարգիլեր ըսելու թէ իր ազգին համար անհաշիւ կերպով աշխատող ու դրամ վատնող, զօրաւոր խելքի եւ կամքի տէր եղող մեր Նախագահը որ կրնար նաեւ եւրոպացիի մը հետ եւրոպացիի պէս խօսիլ ու տպաւորել զայն (այս մասին ան բարձր էր՝ յիշած միւս երկու անուններէս) այնպիսի հայ մը չէր ինչպէս Վենիզէլոս Յոյն մըն էր, Քըրզըն՝ Անգլիացի մը եւ Բուանգառէ՝ (Քլէմանսօ չըսելու համար) Ֆրանսացի մը: Թէեւ ան չկամենար բարձր կամ հեռու ցուցնել ինքզինքը իր ազգէն. Թէեւ գուլթի հետ հիացում ալ ունենար իր ազգին համար, – բայց միշտ ճիգ մըն էր որ կ՚ընէր, կարծէք, անոր հետ նոյնանալու, ճի՛գ մը որ երկուքին միջեւ պզտիկ բաց մը կը թողու միշտ, աննշան՝ երբ խնդիրը իրմէ անոր տալու վրայ էր (իր խելքը, իր աշխատութիւնը, իր դրամը՝ որոնք շատ դիւրաւ կ՚անցնէին այդ բացին վրայէն) բայց կարեւոր՝ երբ խնդիրը կուգար ինքը անկէ առնելու, – ա՛յն ազգային գիտակցութիւնն ու ազգային հաւատքը որոնք ելեկտրական հոսանքի մը պէս կ՚անցնին մետաղէն եւ չեն անցնիր՝ ամենաթեթեւ ընդհատումի մը պատճառաւ*[161]:

# ԿՈՄԻՏԱՍ ՎԱՐԴԱՊԵՏ

Պոլսոյ մէջ ներկայ գտնուելով Կոմիտաս Վարդապետի թէ՛ դասախօութեան՝ ուր իր խօսքը կ'ընդմիջէր մեներգներով, եւ թէ՛ երկու հարիւր հոգիէ բաղկացած Գուսան երգչախումբի երգահանդէսին, Թէքէեանի վրայ առաւել ազդեցութիւն թողած է մեներգը.

*Օ՜հ, իր խօսի՜ն ու իր երգե՜րը մանաւանդ: Կը խոստովանիմ՝ որ վերջին իր կազմակերպած ու ղեկավարած երկու հարիւր հոգինոց երգչախումբը, որ զմայլելի էր, իմ վրաս չթողուց այն տպաւորութիւնը զոր այդ առաջին հանդիպումին ատեն կրեցի իր ձայնէն: Ձայնը ոչինչ ունէր արտասովոր, բայց այնքան հոգի, այնքան արուեստ կար մէջը՝ որ չունչդ կը խեղդէր կոկորդիդ մէջ, միայն ականջով չէ՝ այլ բոլոր զգայարանքներովդ հետեւիլ կուտար իրեն, հրճուանք կը պարգեւէր՝ նոյնիսկ երբ տխուր էր եղանակը, էութեանդ ամենէն խորունկ եւ ազնիւ մասը կը յագեցնէր եւ կ'անօթեցնէր միանգամայն: Այդքան զօրաւոր, մաքուր եւ գիտակից յուզում՝ արուեստը երբէք չէ տուած ինծի: Պատճառը՝ երգերուն հայկականութիւնը չէր միայն, մեր հողին վրայ գտնուելու, անոր հովը չնչածի, անոր լեռն ու արտը տեսածի պէս ըլլալու, մեզի եղբայր ու քոյր մարդկանց աշխատանքին, սիրոյն ու զուարճութեանը հետ հաղորդակցելու զգայութիւնը չէր միայն, հապա՝ մեծ արուեստագէտի մը հոգիէն ատոնց անցած ըլլալն եւ անցնելով հիմա ուղղակի ինծի գալը*[162]:

Թէքէեան կը խոստովանի՝ որ նախընտրութիւնը անձնական է: Ասիկա բնաւ չի խանգարեր, որ ան դիտէր Կոմիտասը իբրեւ ամբողջական երաժիշտ՝ որ կը տիրապետէր երաժշտութեան զանազան ճիւղերու, ինչպէս ցոյց կու տայ իր բանախօսութեան սղագրութիւններէն մէկը.

*Կոմիտաս՝ ամբողջական երաժիշտը՝ մեծատաղանդ ստեղծագործող, գիտուն երգահան, երգիչ եւ խմբավար՝ հայ ժողովուրդէն առնելով՝ բիւրեղացած, բազմիցս գեղեցկացած, արուեստի ծիրանիին մէջ փաթթուած, նորաստեղծուա՛ծ՝ վերընծայեց հայ ժողովուրդին հայ երգը: Հայ ժողովուրդը հարստացած զգաց յանկարծ ինքզինքը ու հպարտ երգովը որ իրն էր եղած, հարազատօրէն իրը, եւ որուն անծանօթ կը մնար սակայն հայութեան մեծամասնութիւնը, մանաւանդ քաղաքաբնակ հայութիւնը*[163]:

Թէքէեան խօսքի եւ երաժշտութեան միջեւ ներքին բախումներ գտնելու կողմնակից չէ: Բայց առաջ կը քաշէ երաժշտահանական երգային ստեղծագործութեան հարցը, ուր կրնայ տիրող ըլլալ կա՛մ խօսքը եւ կամ երաժշտութիւնը, աւելցնելով՝ որ ասիկա չի կրնար վերաբերիլ Կոմիտաս Վարդապետի հաւաքած հայ երգերուն.

[Բանաստեղծ-երգահան արուեստագէտներու] *մէջ՝ զարգացած եւ արուեստի հասցուած քերթողական ու երաժշտական կարողութիւններէն մին կամ միւսը կրնայ տիրապետող ըլլալ, ոչ միայն կրնայ՝ այլ եղած է յաճախ, գրեթէ միշտ*[164]։

Բայց Կոմիտասի երգերուն սկզբնաղբիւրները «պարզ մարդոց եւ ոչ թէ բանաստեղծ-երգահան արուեստագէտներու» ստեղծագործութիւններ են.

*Կը մտածեմ, արդարեւ, թէ բոլոր ժողովրդական, յետոյ աշուղներու, թրուպատուրներու եւ հին այէտներու երգերուն նման՝ Կոմիտասի հաւաքած հայ երգերն ալ ծնած են խօսք եւ եղանակ միասին, մէկ հոգիի կողմէ՝ երբ մեներգ մըն է, նորէն մէկ կամ մէկէ աւելի անձերու կողմէ՝ երբ խմբերգ է ան: Այս պատճառաւ ալ, ուրեմն, անոնց մէջ խօսքն ու եղանակը չեն կրնար զատուիլ իրարմէ. եթէ մէկը գեղեցիկ է միւսն ալ է անպայման, ըստ որում զանոնք արտադրող հոգին լեցուած էր՝ այդ պահուն՝ բանաստեղծական յուզումով*[165]:

## ԵԿԵՂԵՑԻ ԵՒ ՀԱՒԱՏՔ

Թէքէեան հաւատացեալ մը չէ եղած, որ կ'երեւի Երուանդ Օտեանի մասին գրութենէն.

*Թէեւ ջերմ սիրահար, ընթերցող եւ ուսումնասիրող Ս. Գիրքի, ան* [իմա՝ Երուանդ Օտեան, Հ.Ա.] *բացարձակապէս անհաւատ էր: Ի՜նչ լաւ պիտի ըլլար, սակայն, որ հոն գտնէինք մենք իրար եւ Արփիարն ալ միասին՝ խնդալով պատմէինք այս աշխարհի մէջ մեր տեսած խնդալիք բաները: Յաւիտենականութիւնը շատ պիտի չըլլար ատոր համար...*[166]:

Ասիկա չի նշանակեր մերժել այն դերը՝ որ եկեղեցին կրնայ խաղալ մարդոց կեանքին մէջ.

*Ամբողջ Աւագ Շաբաթը, այսպէս, շաբաթ մըն է՝ որ տղոց, կանանց, ծերերու ինչպէս եւ չափահաս այրերէ շատերուն (գիւղերու մէջ մանաւանդ) հոգին ու միտքը, աչքը, ականջն ու ռնգունքը կը լեցնէ ամբողջովին, տղոց մէջ աւանդութեան ջահը կը վառէ արուեստին բոցով եւ միւսներուն մէջ՝ կեանքին դառնութեանը քով քաղցրութիւն, կարծրութեանը քով կակղութիւն կը ծորէ բաւական՝ որպէսզի իրարու հանդուրժելի եւ Աստուծոյ հաճելի ըլլան քիչ մը, որքան որ ընդունակ են ըլլալու...*[167]:

Իսկ ի՞նչ բան է հաւատքը, եթէ ոչ սէր.

*Սէրը իրարու եւ Սէրը Արարիչին համար*[168]:

Սիրոյ նման պարզագոյն հասկացողութիւն մը, արդարեւ, պէտք ունի զայն տարածող մարդոց.

*Կ՚ուզեմ ըսել միայն՝ թէ Քրիստոս ալ պէտք ունեցաւ աշակերտներու՝ որպէսզի կարենայ բաշխել մարդկութեան ինչ որ բերած էր անոր համար եւ ինչ որ կը թուէր թէ շատ դիւրա՜ւ տարածելի, դիւրա՜ւ որդեգրելի բան մըն էր՝ Սէրը իրարու եւ Սէրը Արարիչին համար*[169]:

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՎԵՐՆԱԽԱՒ

Թէքէեան չէր խնայեր եկեղեցականները՝ երբ պէտք էր։

Եկեղեցականութիւնը մարդկային տարեգրութիւն է՝ կեանքի համոզմունք եւ մտածողութիւն։ Բայց շատ եկեղեցականներ այս ասպարէզը կ՚ընտրեն իբրեւ աշխատանքի միջոց, որ եկեղեցականութիւնը կը պարպէ իր բովանդակութենէն.

*Եկեղեցականներ, հիմա, քանի կ՚երթայ աւելի մեծ թիւով, կը համարեն եկեղեցին իբրեւ տեղ մը եւ իբրեւ գործ մը ուր կը մնան այնչափ ատեն որչափ լաւագոյնը չկայ իրենց համար, ուր՝ իրենց գտնուած ատենն ալ՝ պէտք չէ որ ինքզինքնին չափազանց կաշկանդուած զգան, եւ ուր, եթէ չեն կրնար աշխարհականի պէս ապրիլ բոլորովին՝ կրնան աշխարհականի պէս խորհիլ եւ խօսիլ գոնէ: Մինչեւ որ՝ այս տրամադրութիւնը օր մըն ալ կը մղէ այսպիսին կա՛մ ինքնիրեն դուրս ելլելու եկեղեցիէն որուն հետ իր կեանքը անլուծելի կերպով կապած էր սակայն, կա՛մ իր ընթացքը անոր հանդէպ ազատութեան այնպիսի աստիճանի մը հասցնելու՝ որ դեռ հոն մնացող իր ընկերակիցները այդ «անառակ»ը այլեւս վտանգաւոր կը համարեն իրենց համար ու երկար վարանումներէ, չկամութիւններէ ետքը միայն՝ վախով եւ զգուշութեամբ կը հրաւիրեն որ պարզապէս դուրս ելլէ հոնկէ, առանց ուրիշ ձեւակերպութեան, առանց գէթ բարոյական պատիժով մը զայն խարանելու յաչս այն հօտին որուն հովիւներէն մէկն էր ան մինչեւ երէկ՝ իրենց հետ միասին: Ու մարդը, իր փիլոնէն կամ վեղարէն թեթեւցած, նոյն հօտին մէջն է նորէն, անոր իբրեւ անմեղ մէկ անդամը, որուն հետ ամէնքը կը յարաբերին ո՛չ դող զգալով ոչ խորշանք, եւ զոր իր աստիճանակիցները կը պսակեն ալ ամուսնական սուրբ պսակով (երբ երեսուն տարի իբրեւ կուսակրօն ապրելէ ետք՝ արքեպիսկոպոսութեան մէջ ան կը թողու կարգը ու կարգուիլ կ՚ուզէ), թողունք անոր հետ նստիլ-ելլելը, սեղանակցիլը (հիմա կերակուրի սեղան), խորհրդակցիլն ու գործակցիլը…*[170]:

«Հաւատքէ պարպուող եկեղեցին» խորագիրով Թէքէեան նկատի ունի, որ եկեղեցին հաւատքէ կը պարպուի ոչ թէ հաւատացեալներու նուազումին պատճառով, այլ նոյն այդ հաւատքը ենթադրաբար տարածող եկեղեցական վերնախաւին կողմէ։

Վերջապէս, քանի որ գաղութային համակարգին մէջ եկեղեցական պետերուն

տուած ենք աշխարհիկ պարտականութիւններ՝ իբրեւ պետական կառավարութեան փոխանորդներ, անոնց համար բաւական չեն «աստուածաբանական հմտութիւնը եւ մաքուր վարքուբարքը», այլ անհրաժեշտ են շատ աւելի բարձր վարչական կարողութիւններ։ Սփիւռքի եկեղեցիներուն պետերը կը փոխարինեն պետական կառավարութեան.

*Մենք ստիպուած ենք մեր եկեղեցական պետերէն սպասելու ա՛յն ինչ որ իրենց սեփական կառավարութիւնը ունեցող ազգերու մէջ կ՚սպասուի աշխարհականներէ։ Զանազան պաշտօններու վրայ գտնուող կամ անպաշտօն մէկէ աւելի աշխարհականներու դերը մենք տուած ենք, կը կրկնենք՝ ի հարկէ ստիպեալ, մեր եկեղեցական պետերուն։*

*Այս պատճառաւ, անոնց հանդէպ պահանջկոտ ըլլալու իրաւունքը թէ՛ ունինք եւ թէ չունինք։*

*Ունինք, որովհետեւ նուիրապետութեան աստիճաններուն վրայ հետզհետէ բարձրացող եկեղեցական մը գիտէ՛ կամ պէտք է գիտնայ՝ թէ մեր մէջ միայն աստուածաբանական հմտութիւնը եւ մաքուր վարքուբարքը բաւական չեն լաւ եպիսկոպոս մը, ո՛ւր մնաց լաւ պատրիարք մը կամ կաթողիկոս մը ըլլալու։ Ուրի՛շ կարողութիւններ պէտք են, բաց ի նաեւ վարչական որոշ կարողութենէ մը զոր ամէն բարձր պաշտօնեայ պէտք է ունենայ կարենալ կառավարելու համար իր ստորադասեալներն ու այն գործը որ յանձնուած է իրեն։*

*Եկեղեցական պետ մը – առաջնորդ, պատրիարք կամ կաթողիկոս – քաղաքական գործ կը կատարէ մեր մէջ, անշուշտ այս բառին ամենանեղ իմաստովը, եւ առաւելապէս ներքին քան արտաքին քաղաքական գործ, որ նուազ կարեւոր չէ այդ պատճառաւ՝ երբ նկատի առնուին մեր վիճակն ու մեր պահանջները, դժուարութիւնները որոնց մէջ կը տապլտկինք եւ ստեղծագործող անհրաժեշտ աշխատանքը որ պէտք է կատարուի այդ դժուարութեանց յաղթելու եւ իբրեւ համայնք կարենալ մեր դիրքը պահելու համար այն ոչ-հայ երկիրներուն մէջ ուր կ՚ապրինք*[171]*։*

Օրինակ, 1860-1895-ին եւ 1908-1914-ին, Ազգային Սահմանադրութեան շրջանակներուն մէջ բարձրաստիճան եկեղեցականութիւնը արդիւնաւոր եղաւ այն պարագային, երբ կրցաւ համագործակցիլ լուսամիտ աշխարհականներուն հետ.

*Ազգ. Սահմանադրութիւնը հիմնուեցաւ, 1860ի մտաւորական երիտասարդութեան կողմէ, նոյնքան եկեղեցական վարիչներու որքան ամիրաներու կամայականութեան դէմ, անոնց երկուքին միացեալ կամայականութեանը դէմ, որ կ՚արհամարհէր ժողովուրդին կարծիքն ու շահը՝ արհեստապետութեանց անուս բայց հասուն պետերուն եւ նորահաս մտաւորականութեան եռանդուն վարիչներուն կողմէ յայտնուած ու պաշտպանուած։ Եւ բարձրաստիճան եկեղեցականութիւնը այն չափով կրցաւ Ազգ. Սահմանադրութեան շրջանակին մէջ արդիւնաւոր դեր մը կատարել մինչեւ 1895 եւ վերջէն՝ 1908էն 1914, որ չափով որ համաձայնօրէն գործեց աշխարհական լուսամիտ տարրերուն հետ, իր հեղինակութիւնը պահելով եթէ ոչ իր մտաւորական բարձրութեամբը միշտ՝ գէթ իր բացարձակ պարկեշտութեամբը, իր օրինա-*

*պահութեամբը եւ տրուած ճիշդ խորհուրդներէն օգտուելու իր փութկոտութեամբը*[172]։

Թէքէեան կը բարձրացնէ գաղութահայութեան աշխարհիկացումի հարցը։ Անյարմար կը դատէ՝ որ համայնքի գործերու առաջնորդը ըլլայ եկեղեցական մը, քանի որ անիկա, ելլելով իր կրթութեան բնոյթէն, անկարող է վերահաս ըլլալ գաղութի աշխարհիկ պահանջքներուն.

*Իբրեւ ընդհանուր նկատողութիւն, պէտք է ըսենք թէ ցաւալի է, արդէն, որ հայ համայնքները ստիպուած են եկեղեցական մը ունենալ որպէս իրենց բոլոր գործերուն վերին հսկիչ. ցաւալի է երկու պատճառով. առաջին՝ որովհետեւ շատ սահմանափակ թուով, հազիւ հիմա քանի մը տասնեակ ազգայիններու մէջէն պէտք է ընտրել այդ բարձր պաշտօնին վարիչը. երկրորդ՝ որովհետեւ եկեղեցական մը, իր ստացած մասնայատուկ կրթութեամբ եւ իր ապրած կեանքով, նուազ յարմար է համայնքի մը մեծ մասամբ աշխարհական գործերը ըմբռնելու եւ վարելու՝ քան նոյնքան խելք եւ խղճմտանք ունեցող ուրիշ հայ մը՝ որ աշխարհական է։ Միայն մէկ առաւելութիւն ունի եկեղեցականը աշխարհականին վրայ. իր կրօնական հանգամանքին ներշնչած պատկառանքը եւ անոր իրեն տուած հեղինակութիւնը, բանե՛ր որոնք հետզհետէ նուազ յաճախ հիմա կը գոյանան կամ կ՚ստացուին առանձին, եթէ չկան իրենց քով մտաւորական եւ բարոյական լուրջ յատկութիւններ։ Աքեմը կը զօրացնէ, այսօր, այդ յատկութիւններու տուած հեղինակութիւնը, բայց զայն չի տար ինքնիրեն՝ գոնէ ո՛չ-շատ-տգէտներու եւ ոչ-շատ-միամիտներու աչքին*[173]։

Գահիրէի պարագային, 1942-ին գաղութին կ՚առաջնորդէ Առաջնորդական Փոխանորդը, որ կը գործէ մենատիրական եւ հակաժողովրդավարական սկզբունքներով՝ շրջանցելով սահմանադրութեամբ վաւերացուած օրէնքին սահմանները.

*Հանրային կամ ըսենք մեր լեզուով ազգային գործերը քանի մը հոգիի եւ աւելի քիչ՝ մէ՛կ հոգիի, այսինքն առաջնորդի մը կամ առաջն. տեղապահի մը, առաջն. փոխանորդի մը սեփականութիւնը չեն։*

*Այո՛, ոչ ոք կ՚ըսէ թէ այսպէս է։ Նոյն իսկ մեր ներքին կազմակերպութիւնը դրուած է այնպիսի հիմերու վրայ՝ որ ո՛չ փոքրատիրութեան եւ ո՛չ ալ մենատիրութեան հետ ո՛եւէ կապ ունի այդ կազմակերպութիւնը։ Ան ռամկավարական է ոգիով եւ սահմանադրական՝ ձեւով։ Ի՞նչպէս կրնան, հետեւաբար, քանի մը հոգի կամ մէկ հոգի «ի վերուստ» իրենց տրուած շնորհով մը վարել ուզել ազգային գործերը՝ փոխանակ օրէնքով սահմանուած միջոցները կիրարկելու։*

*Այս դիտողութիւնը չի վերաբերիր Գահիրէի Թեմին գործադիր իշխանութեան՝ անո՛ր Քաղ. Ժողովին. աւելի՛ – եւ որքան ալ անհաւատալի թուի ասիկա – ան կ՚երթայ Առաջն. Փոխանորդին, որ թէ՛ իբրեւ Թեմական Ժողովի նախագահ եւ թէ իր առօրեայ գործունէութեան մէջ, ձգտում մը ունի ինքնագլուխ կերպով կամ ոչ-ժողովականներու խորհուրդը*

*Հարցնելով ուղղութիւն եւ ընթացք տալու գործերուն։*

*Եկեղեցական պետը, ո՛վ որ ալ ըլլայ եւ ի՛նչ տիտղոս ալ ունենայ, չունի այդ իրաւունքը օրինապէս եւ քիչ անգամ ունի ատոր կարողութիւնը՝ դժբախտաբար*[174]։

Բայց եւ այնպէս, իրականութիւնը ունի իր պարտադրանքը։ Եթէ անկարելի է Սփիւռքի աշխարհիկացումը, գոնէ կարելի է գոյութիւն ունեցածը ենթարկել օրէնքին, Առաջնորդական Փոխանորդին վերադարձնել իր դերակատարութիւնը իբրեւ հսկիչ եւ ոչ թէ վարիչ, օրէնքի յուշարար եւ ոչ թէ օրէնքի սեփականատէր.

*Սակայն առնելով մեր իրականութիւնը այնպէս ինչպէս որ է, այսինքն ընդունելով որ եկեղեցական մը անխուսափելիօրէն պիտի նախագահէ մեր բոլոր ժողովներուն եւ իբր նախագահ չափով մը «պիտի ազդէ» անոնց որոշումներուն վրայ. որ պիտի վարէ նաեւ, իբրեւ Առաջնորդարանի մնայուն եւ ամենաբարձր պաշտօնեան, հոն կատարուող ընթացիկ գործերը. որ, ատոնցմէ զատ, պիտի ներկայացնէ համայնքը երկրին իշխանութիւններուն եւ բոլոր օտար պաշտօնական եւ անպաշտօն անձերուն առջեւ, – մենք պէտք է հոգ տանինք՝ որ այդ իրականութիւնը դառնայ օրէնքի սահմաններուն մէջ, որպէսզի գործերը նուազ տուժեն անձին անբաւականութենէն եւ այդ անբաւականութեան հետ միասին՝ իր մենատիրութեան «անհաւատալի» – կը կրկնեմ – ձգտումէն։*

…

*Առաջնորդ մը կամ իր փոխանորդը լուրջ պարտականութիւն մը ունի, որ միւս ամենքէն առաջ կ'անցնի եւ ամենէն ճշգրիտն ու անառարկելին է իր պարտականութիւններուն, – ժողովներու նախագահելու պարտականութիւնը՝ որ թեթեւ կամ անուանական պաշտօն մը չէ՝ եթէ ուշադրութեամբ գործադրուի։*

*Նախագահը ժողովին վարիչը չէ այլ անոր հսկիչը։ Յուշարարն է օրէնքին եւ յուշարարն անցեալին, այն բոլոր իրողութեանց որոնք գոյութիւն ունին կամ պատահած են այս համայնքին մէջ կամ այլուր եւ կապ ունին օրուան խնդիրներուն հետ*[175]։

## ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԲԱՐԵԿԱՐԳՈՒԹԻՒՆ

Տարիներէ ի վեր կը խօսուի հայ եկեղեցիի բարեկարգութեան մասին, իբրեւ բարեկարգութիւն հասկնալով, «միամտօրէն, թէ պէտք է արարողութիւնները կարճեցնել, լեզուն աշխարհաբարի վերածել, քահանայից վիճակը բարելաւել, ամուսնական օրէնքները պարզել եւ այլ այսպիսի *օգտակար*, *գործնական* բարենորոգումներ մտցնել Հայ Եկեղեցիի կազմակերպութեան մէջ»[176]։ Այս բոլորը անիմաստ են, քանի որ կապուած են առարկայականացուած գործօններու, չափագրուած սահմանագիծերու եւ հաշուարկելի ազդակներու հետ, մինչդեռ մարդը՝ իր հաւատքով եւ ենթակայական գոյութեամբ նկատի չէ առնուած։

Եկեղեցական թերութիւնը «կազմակերպական թուլացում մը չէ այլ ոգիի թուլացում մը, չքացում մը գրեթէ՝ որ կը կրծէ կը քանդէ Հայաստանեայց Եկեղեցին, թէ կայ հաւատքի պակա՛ս մը ու կրօնքի դերին սխալ ըմբռնո՛ւմ մը միանգամայն եկեղեցականութեան մէջ ճարակած եւ անկէ իջնելով՝ հայ հաւատաւոր ժողովուրդին մէջ տարածուած սա՛ անճոռնի ու չորցնող ըմբռնումը, թէ կրօնքը եղած է միմիայն մարդոց աշխարհիկ կեանքի պահանջներուն համար, թէ վարդապետը բեմէն եւ քահանան տուներու մէջ պէտք է պարկեշտ, պաղասէր, ընտանեսէր եւ՝ լաւագոյն պարագային՝ հայրենասէր ըլլալ սորվեցնեն ժողովուրդին»[177]։

Եկեղեցին կորսնցուցած է ինք իր մէջ արժեւորելու կարողութիւնը, արժէքային համակարգը փոխանակ իր մէջ փնտռելու, կը ստանայ իրմէ անդին գտնուող գրգիռներէ եւ *իր* ներքին պղծումները չբուժած կ՚ուզէ միջամտել *ուրիշ*ի աշխարհիկ կեանքին։

«[Ե]կեղեցականութեան մէջ ճարակած եւ անկէ իջնելով» արտայայտութիւնը պիտի նշանակէ, որ այս թիւր ըմբռնումը սերմանուած է վերէն՝ եկեղեցականներուն կողմէ, եւ տարածուած ժողովուրդին մէջ։ Ժողովուրդը թիւրիմացութեան մէջ է, քանի որ վերէն կատարուած է ազդելու, վերահսկելու եւ ամբոխավարելու գործընթացքը։

Թէքէեան նոյնիսկ այդ վերին կու տայ բնութագրութիւններ՝ «բարձրաստիճան ներկայացուցիչներ» կամ «մեր եկեղեցական բարձր իշխանութիւնը», որոնք հեգնանք մը կը պարունակեն իրենց մէջ։

*Քանի որ մեր եկեղեցականութիւնը, իր բարձրաստիճան ներկայացուցիչներովը մանաւանդ, ասիկա չըմբռներ, եւ չըմբռներ թէ Սատանան իր մէջն է մտած ու Աստուածը օգնութեան չի կանչեր զայն վանելու համար, այլ կը դիմէ աշխարհիկ, տկար, անբաւարար միջոցներու. քանի որ մեր ժողովուրդն ալ հետզհետէ այն կարծիքը կը կազմէ թէ Հայ Եկեղեցին հնութեան մեզի աւանդած մէկ գանձն է միայն զոր պէտք է պահել իր ճարտարապետութեան, իր երգեցողութեան, իր գրականութեան գեղեցկութեանը համար, որպէսզի մանաւանդ օտարներու աչքին անով կարենանք պարծենալ քանի որ բուն հաւատքը, կրօնական, աստուածային զգացումը երթալով կը պարպուի Եկեղեցիէն ու ոչ ոք զայն հոն վերադարձնելու վրայ կը խորհի, – ես կ՚ըսեմ թէ աւելորդ է ուրիշ պատճառ փնտռել եւ զարմանալ կրօնաւորներու մէջ կարգը ձգող կամ կարգը անարժանօրէն պահող անձերու, եւ ժողովուրդին մէջ՝ հոգիի խաթարումը յայտնող բազմաթիւ երեւոյթներու վրայ։ Մեր եկեղեցական բարձր իշխանութիւնը կրնա՞յ, ի վիճակի՞ է հաւատոյ բոռբականտը մղելու մեր մէջ, ինչպէս կը մղեն կաթոլիկ եւ բողոքական եկեղեցիները այնքան արդիւնաւոր կերպով։ Եթէ այո, ժամանակ չկայ կորսնցնելու, թո՛ղ շուտով գործի սկսի։ Եթէ ոչ՝ թո՛ղ մեզ հանգիստ ձգէ ու թո՛ղ սպասէ միայն որ մեռնինք վերջնականապէս՝ մեզ թաղելու համար…*[178]։

Այսինքն, եկեղեցին իր արժէքը կը ստանայ դուրսէն՝ իբրեւ հնութեան գանձ,

ճարտարապետութիւն, երաժշտութիւն, գրականութիւն եւ օտարներուն հրամցուելիք պարծանքի իր, որով ան կը կորսնցնէ իր ներքին արժէքը՝ հաւատքը։ Այս բնաբանին մէջ հաւատքը զուտ ինքնակեդրոն ու եսական գերարժէք մը չի կրնար ըլլալ, այլ համակեցական ամբողջ համոզում մը։

## ԳԻՐ, ԽՕՍՔ ԵՒ ՊԱՏԿԵՐ

Քաղաքակիրթ աշխարհի հիմքը գիրն է, դիտել կու տայ Թէքէեան։ Ժամանակակից աշխարհի մէջ խօսքը (ճառախօսութիւնը) կը սկսի գրաւել գիրին տեղը եւ պատկերը՝ խօսքին տեղը։ Գիրի դերակատարութեան նուազումով, Ի. դարը չի կրնար յառաջդիմութեան դար մը ըլլալ.

*Քաղաքակրթութեան գերազանց գործիքը գիրն է անշուշտ: Խօսքին մէջ՝ դեռ վայրենի մարդը կայ: Եւ, ինչ կ՚ուզէք ըսէք, ճառախօսի մը շրթունքէն կախուած ամբոխ մը շատ աւելի նախնական է, աւելի մօտ է քարայրաբնակ մարդուն՝ քան թէ գիրքի, հանդէսի կամ լրագրի մը վրայ հակած, անոր պարունակութիւնը իւրացնել ճգնող մարդը եւ քան թէ՝ բնականաբար՝ ռատիօի, տիսքի կամ ֆիլմի մը խօսքերը հանգստօրէն, արագ-արագ, կէս լսելով կամ կէս հասկնալով միայն գոհացող ունկնդիրը:*

*Դիտել, խօսիլ, գրել, այս եղած է, կ՚ենթադրեմ, մարդկային մտքին ընդլայնման ընթացքը: Այս պատճառաւ, վախ կայ թէ քանի որ այսօր, քիչ առ քիչ, գիրին տեղը կը գրաւէ խօսքը եւ խօսքին տեղը պատկերը (պատկերը՝ նաեւ գիրին տեղը, տեսէք պատկերազարդ թերթերը), այս դարը յառաջդիմութեան դար մը չէ, ո՛չ բարոյական եւ ոչ իսկ մտաւորական յառաջդիմութեան դար մը...*[179]*:*

Աւելի քան 2000 տարի առաջ, սոփեստ հասկացողութեան (կը համապատասխանէ Թէքէեանի ճառախօսութեան) յատկացուած երկխօսութիւնը այսպէս կ՚եզրակացնէր Պղատոն.

*Այդ անունով կոչւում է [զրուցակցին] հակասութեան մէջ գցող երեսպաշտ կարծիքնմանակումը, որը տեսիլներ ծնող պատկերաւոր արուեստի մասն է, ոչ թէ աստուածային է, այլ մարդկային, եւ մեր փաստարկներում սահմանուեց որպէս ստեղծագործութեան աճպարարական մաս. նա, ով կ՚ասի, որ իսկական սոփեստն այս միս ու արիւնից է, ըստ իս, միանգամայն ճշմարիտ կը վարուի*[180]*:*

Ուրեմն, սոփեստութիւնը (Թէքէեանի ճառախօսութիւնը) կը հանդիսանայ նմանակում, տեսիլք, պատկերաւոր արուեստ, աճպարարութիւն, ոչ-աստուածային արտայայտութիւն։

Եթէ հին Յունաստանի մէջ պատկերն ու նմանակումը բնորոշ էին սոփեստներուն, Ի. դարուն անոնք պատկանեցան ամբողջ դրամատիրական աշխարհի հասարակութեան, զոր Կի Տըպոր 1967-ին պիտի անուանէր՝ «Հանդիսանքի հասարակութիւն» (Société du spectacle).

*Կեանքի բոլոր ոլորտներէն անջատուած պատկերները կը միաձուլուին ընդհանուր հոսանքի մը մէջ, ուր այդ կեանքին միասնութիւնը այլեւս կարելի չէ վերականգնել: Իրականութեան մասնատուած տեսարանները իրենք իրենց կը վերախմբաւորեն նոր միասնութեան մը մէջ՝ իբրեւ անջատ կեղծ աշխարհ մը, որուն կարելի է միայն դիտել: Աշխարհի պատկերներուն մասնագիտացումը կը զարգանայ ինքնավար դարձած պատկերներու աշխարհի մը, ուր նոյնիսկ խաբեբաները կը խաբուին: Հանդիսանքը կը հանդիսանայ կեանքի ճշգրիտ հակաշրջումը, անկենդաններու ինքնավար շարժում մը*[181]:

Մասնատուածութեան մասին կը գրէ Տըպոր, իսկ ընկալումի մասնատուածութեան մասին («ռատիօի, տիսքի կամ ֆիլմի մը խօսքերը հանգստօրէն, արագ-արագ, կէս լսելով կամ կէս հասկնալով միայն գոհացող ունկնդիրը») կ՚ակնարկէ Թէքէեան:

Տըպորի *Հանդիսանքի հասարակութիւն* հատորը կը մեկնաբանէ ներկայ հասարակութեան քայքայումին պատճառները, Թէքէեան եւս կը մատնանշէ նոյն հասարակութեան անհաւանական յառաջդիմութեան պատճառները: Երկուքին, ինչպէս նաեւ Պղատոնին հիմքը պատկերն է, այն պատկերը՝ որուն ֆեթիշականացումը կը յառաջացնէ տուեալ խումբի մը (Ե. դար Ք.Ա.) կամ ամբողջ աշխարհի մտաւոր կարողութեան (Ի. դար) անկումը:

## ԲԱՐՈՅԱԿԱՆՈՒԹԻՒՆ

Անդրադարձին դրդապատճառը Էտվարտ Վէսթէրմարքի *Բարոյական գաղափարներու ծագումը եւ զարգացումը* երկհատորեակն է (Edvard Westermarck, *The Origin and Development of the Moral Ideas*, 2 Volumes, London: MacMillan, 1906)[182]:

Բարոյականութեան Վէսթէրմարքի դրոյթները ամբողջապէս կը յարմարին Թէքէեանի մտածումներուն: Իր սեփական համոզումները կրկնապատկելու համար է որ Թէքէեան կը դիմէ Վէսթէրմարքին: Այս դրոյթներուն գլխաւորներէն մէկը այն է՝ որ բարոյականութիւնը կարելի չէ պարտադրել դուրսէն, քանզի անիկա գոյութիւն ունի ամէն գիտակից ու լայնախոհ անձի մէջ եւ այս ենթակայական բարոյականութիւնն է որ կ՚արգիլէ մարդոց հետեւիլ քմայքներու եւ «անբարոյական» հակումներու.

*Բարոյական պարտականութիւններու գալով, հեղինակը* [իմա՝ Վէսթէրմարք, Հ.Ա.] *չընդունիր թէ կան դուրսէն հրամայուած այդպիսի պարտականութիւններ: Հետեւինք, կ'ըսէ, մեր գիտակցութեան, առանց պատրանքներ սնուցանելու այդ պատուիրանքներուն ճշմարտութեանը մասին: Եւ անոնց որ իրեն կ'առարկեն թէ ատիկա պիտի նշանակէր մեր քմահաճոյքներուն հետեւիլ՝ ան կը պատասխանէ նախ. «Բարոյագիտական ենթակայապաշտութիւնը չարտօներ որ իւրաքանչիւր ոք իր հակումներուն հետեւի...: Մեր բարոյական գիտակցութիւնը մաս կը կազմէ մեր մտաւորական կազմութեան՝ զոր չենք կրնար մեր ուզածին պէս փոխել: Բան մը կ'ընունինք կամ կը մերժենք՝ որովհետեւ չենք կրնար ուրիշ կերպ ընել: Ինչպէս որ չենք կրնար ցաւ չզգալ երբ կրակը մեզ կ'այրէ, այնպէս ալ ինչո՞ւ նուազ պիտի հնազանդէինք բարոյական օրէնքին՝ ան մեր յատուկ բնութեան մաս կազմելուն համար*[183]:

Բաց աստի, Բարոյականութիւնը վճռական ճշմարտութիւններ պէտք չէ պարունակէ, գիտակից մարդու մէջ գտնուող բարին ընդունակ է պայքարելու աշխարհի դէմ.

*Մեզի հաճելի թուեցաւ, պարտադիր բարոյականի այն անձուկ ըմբռնումին դէմ զոր ոմանք տարածել կը ջանան մեր մէջ՝ զայն բխեցնելով նոյնքան նեղ եւ փոքր ըմբռնուած կրօնքէ մը, մեզի հաճելի թուեցաւ, կ'ըսենք, մտքի չղթաները կոտրող այս տեսութիւնը ներկայացնել հոս մեր ընթերցողներուն՝ համոզուա՛ծ թէ տկար միտքերն անգամ առանց կապանքի կրնան զօրանալ...*[184]:

Կը հասկնանք, որ կրօնքը պէտք չունի հրամաններ արձակող եւ օրէնքներ սահմանող պարտադրանքներու. ամէն մարդ կրնայ հետեւիլ կրօնքին ու հասկնալ եւ բարոյականացնել զայն՝ համաձայն իր գիտակցութեան: Ընդհակառակը, կրօնքին մէջ դնելով վերադիր պարտադրանքներ ու բացարձակ ճշմարտութիւններ, կորսուած կ'ըլլայ ներսէն բխող իմաստներու հնարաւորութիւնները:

## ՀԲԸՄ

Թէքէեան մասնաւոր պարագաներու անհրաժեշտ դատած է քննադատել Բարեգործականը:

Պատերազմի տարիներն էին: 1940 Փետրուար 2 թիւին մէջ, Ամերիկայի *Պայքար*ը կը բարձրացնէր ՀԲԸՄ-ի կեդրոնը Փարիզէն Ամերիկա փոխադրելու հարցը, Ամերիկան աւելի յարմար համարելով Փարիզէն:

Թէքէեան կը գրէ.

*Կեդրոնը պէտք է փոխադրուի Ամերիկա, կ՚ըսէր Պայքար, «որքան քաղաքական-ելմտական նոյնքան կազմակերպական-վարչային նկատումներով», զորս հետեւեալ կերպով կը բացատրէր.*

*«Աշխարհի մէջ չկայ Տէրութիւն մը որ պիտի չուզէր այսօր իր «նեղ օրեր»ու ելմտական-տնտեսական պահեստի ապահովութիւնը կեդրոնացնել Ամերիկայի մէջ եւ վստահիլ անոր հաստատութիւններուն ու անոր քաղաքական դիրքին:»*

*Այս արտաքին ապահովութեան նկատումն է, իր դրամագլուխներուն համար, ըստ Պայքարի*: *Կայ նաեւ, միշտ պաշտօնակցին տեսակէտով, «այսպէս ասած» ներքին ապահովութեան տեսակէտը՝ զոր կը բացատրէ հետեւեալ կերպով.*

*«Ամերիկայի Բարեգործականը արդիւնաբերող եղած է միշտ, հանած է հսկայ գումարներ, կրնայ ընել ասկէ ետքն ալ, մինչդեռ Բարիզի կեդրոնը իր խոշոր ու ծախսալից մեքենականութիւնը պարտաւորուած էր սահմանափակել վարչային գործին մէջ միայն»*[185]:

Թէքէեան համաձայն չէ այս փոխադրութեան։ Կը նախընտրէ՝ որ փոխադրութեան փոխարէն աւելցնեն մասնաճիւղերուն իրաւասութիւնները, ինչպէս նաեւ կարեւորութիւն տան մշակութային գործունէութեան.

*Իրապէս, Ամերիկայի մէջ երեւան եկած այս կեդրոնի փոխադրութեան պահանջը պէտք է մտածել տայ այլ եւս Բարեգործականի բոլոր բարեկամներուն, թէ իր ծրագիր-կանոնագիրը կը կարօտի աւելի լուրջ բարեփոխութեան մը քան ինչ որ կատարուեցաւ վերջերս, բարեփոխութի՛ւն որուն հիմը ըլլալու է՝ մէկ կողմէ՝ Շրջ. Յանձնաժողովներու իրաւասութիւններուն ընդարձակումը իրենց գոյացուցած հասոյթներուն գործածութեանը մասին, եւ միւս կողմէ՝ պարտադրութիւնը թէ՛ կեդրոնին եւ թէ Շրջ. Յանձնաժողովներուն համար, լայնօրէն մշակութային գործ կատարելու անպատճառ, բա՛ն մը որ խելացի կերպով կատարուելով՝ պիտի ծառայէր նոյնքան Ազգին որքան Բարեգործականի շահուն:*

*Այս միջոցով՝ անհրաժեշտ պիտի չըլլար կեդրոնին Ամերիկա փոխադրութիւնը եւ նոր ու աւելի լայն իրաւասութիւններով օժտուած Շրջ. Յանձնաժողով մը պիտի կրնար նոյն ոգեւորութիւնն ստեղծել կամ վերստեղծել Բարեգործականի շուրջ եւ քաղել այն նոյն օգուտները որոնց կ՚ակնարկէ Պայքար*[186]:

Կարեւոր է Թէքէեանի «լայնօրէն մշակութային»-ի շեշտադրութիւնը, երբ Բարեգործականի փոխադրութեան համար ներկայացուած ամբողջ փաստարկումներուն հիմքը ինկած է դրամը։ Դրամէն դէպի մշակոյթ անցում մը պէտք է տեղի ունենայ։

Ուրիշ յօդուածի մը մէջ, Թէքէեան քննադատաբար կը մօտենայ ՀԲԸՄ-ի պաշտօնաթերթ *Միութիւն*ի 1940 Յունուար-Փետրուար թիւին մէջ արտայայտուած միտքերուն՝ կապուած ազգապահպանումի (այսօրուայ բառապաշարով՝ հայապահպանումի) ծրագիրին հետ.

*«Ազգապահպանման ծրագիր» խորագիրով գրութիւնը ընդվզեցուցիչ է իբրեւ Բարեգործականի վերին մարմինին մտայնութեա՞ն ըսեմ թէ հոգացողութեան արտայայտութիւնը:*

*Ա՜յնքան թեթեւ, ա՜յնքան թեթեւ են հոն տրուած պատասխանները «Ազգապահպանումի Յանձնաժողով»ին պատրաստած ծրագրին, որ կը խորհիմ թէ անոնք չեն ցոլացներ մտայնութիւնը կեդր. Վարչ. Ժողովին – որ, ինչ ալ ըլլայ, աւելի լուրջ միտքեր կը պարունակէ – բայց կը յայտնեն հոգացողութեան պակասը նոյն Ժողովին՝ որ, գիտնալով հանդերձ այդ պատասխանները ինքն իր կողմէ տուողին թեթեւամտութիւնն ու թեթեւասրտութիւնը, այդ կարեւոր հոգը թողած է անոր*[187]*:*

Ծրագիրը աւելի հիմնուած է ցանկութիւններու վրայ քան գործնական քայլերու եւ որոշումներու առաջարկութեան.

*Ուրեմն, «Միութեանս Ընդհ. Ժողովին կողմէ արտայայտուած ցանկութեան համաձայն (խմբագրին գրիչը առաջ չերթար որոշում ըսելու), կեդր. Վարչ. Ժողովը կազմեց նախ եւ առաջ աժամանակեայ Յանձնախումբ մը, որուն պաշտօն տուաւ հարցը ուսումնասիրել, եւ յետոյ ընտրեց Ազգապահպանումի Յանձնաժողով մը (մնայո՞ւն արդեօք՝ քանի որ միւսը աժամանակեայ էր) նախորդին եզրակացութեանց հիմերուն վրայ գործնական ծրագիր մը պատրաստելու համար:»*

*Պ. Ա. Ջօպանեանը իրեն ատենապետ եւ Պ. Գ. Կիրակոսեանը ատենադպիր ունեցող այդ Յանձնաժողովը «անցեալ տարի – կ'ըսէ յօդուածը, զանց ընելով ըսել թէ տարւոյն ո՞ր ամիսին – ներկայացուց իր պատրաստած ծրագիրը, որուն որդեգրումը եւ գործադրութիւնը դժբախտաբար առկախուեցան պատերազմին պատճառաւ:»*

*Բացատրուած չէ թէ պատերազմը ի՛նչու, ի՛նչ պատճառներով (եւ ոչ անորոշ պատճառաւ միայն) առկախած է ծրագրին մինչեւ իսկ որդեգրումը եւ մինչեւ իսկ գէթ անոր կարգ մը մասերուն գործադրութիւնը:*

*«Այդ ծրագիրը – կը շարունակէ գրութիւնը – որ կը բաղկանայ 20 յօդուածներէ, կ'ընդգրկէ ազգապահպանումի կարեւոր մարզերը, որոնցմէ ոմանք յոյժ թելադրական են, ոմանք Միութեան մարզէն դուրս կը գտնուին, կամ առհասարակ կախում ունին նիւթական միջոցներէ:»*

*Բան մը հասկցա՞ք այս կլոր, սահուն եւ լպրծուն գնահատականէն՝ որ կ'ուզէ միեւնոյն ատեն խուսափողական ըլլալ եւ ատոր համար ալ անշուշտ, կը դառնայ անիմաստութեան պարապ ծրար մը*[188]*:*

Զարդարանքով ու կեղծիքով է որ Բարեգործականը ինքզինք կը ներկայացնէ *Միութիւն*ի սոյն յօդուածին ընդմէջէն.

*Փոխանորդ-խմբագիրը այնուհետեւ կը յիշէ, խառն ի խուռն, հայ լեզուի պահպանման նպատակով «նոր վարժարաններ եւ հայերէնի դասընթացքներ հաստատելու», «տոհմային հին աւանդութեանց, նկարագեղ սովորութեանց եւ հայկական բնիկ տարազներու պահ-*

*պանման համար ձեռնարկներ ընելու», «Լիբանանի մէջ հայ աղջկանց երկրորդական վարժարան մը հիմնելու», «Սէվրի Էքօլ Նորմալ Սիւբէրիէօրին կամ նմանօրինակ վարժարանի մը մէջ քանի մը ուսանողուհիներ պահելու» եւ «նախակրթարաններու յատուկ՝ բարեկրթութեան դասագիրք մը պատրաստելու» առաջարկները, – եւ կը պատասխանէ՝ թէ «վերոգրեալ ձեռնարկներէն ոմանք արդէն գործադրուած են, ինչպէս Պէյրութի մէջ հաստատումը (?) Հայ Աղջկանց Բարձր. Նախակրթարանի մը (Դարուհի Յակոբեան), մասնագէտ ուսուցչուհիներու պատրաստութիւնը Նուպարեան եւ Յակոբեան ուսանողական հիմնադրամներու շնորհիւ..., բարեկրթութեան գրքոյկի մը հրատարակութիւնը...: Նոյնպէս, շուրջ 150 հայ վարժարաններու հովանաւորումը եւ հայերէնի դասընթացքներու դրութեան կիրարկումը...: Վերջապէս կան թելադրութիւններ ալ, անշուշտ շատ նպատակայարմար, ինչպէս՝ ընտանիքներու մէջ պարտաւորիչ դարձնել հայերէնի գործածութիւնը կամ տոհմային հին աւանդութեանց պահպանումը, զոր գործնականին մէջ հարց է թէ Հ. Բ. Ը. Միութիւնը ի՞նչ միջոցներով կրնայ իրականացնել»*[189]:

Բարեգործականի կեդրոնը կը փոխադրուի Ամերիկա: Ասիկա մեծ սխալ մը կը նկատէ Թէքէեան, քանի որ առաջնահերթութիւնը պիտի ըլլայ դրամի արտադրութիւնը.

*Բայց անոր Ամերիկա, – այսինքն տե՛ղ մը որ այնքան հեռու է իր «բարիքի արտադրութեան» դաշտէն – փոխադրութիւնը սխալ մը եղաւ զոր դժուար պիտի կրնայ դարմանել Ամերիկան, ինչ որ ալ ըլլայ իր բարիկամեցողութիւնը: Ան ձեռնարկած է, ինչպէս կը տեսնուի մեր այսօրուան հայկական կեանքի բաժնին մէջ արտատպուած լուրէն, ուժ տալ «դրամի արտադրութեան»՝ հոն Ամերիկայի մէջ:*

*Այս տողերը նպատակ ունին հասկցնելու թէ չի բաւեր դրամին մտածել, պէտք է միաժամանակ գործը նորոգել, իր համապատասխան միջոցներով*[190]:

Թէքէեան կը քննադատէ՝ որ շուրջ տասը տարի է որ Բարեգործականը «ազգային մեծ պահանջներու առջեւ եւ բացառիկ կերպով ծանր ժամանակի մը մէջ, ոչինչ կ՚ընէ», իբր հետեւանք այն ինքնագոհութեան ոգիին՝ «որ գրեթէ տասը տարիէ ի վեր սկսած էր տիրել եւ երթալով շեշտուած էր Միութեան Կեդրոնին մէջ».

*[Ն]երկայիս Միութեան դերը երկու մասէ կը բաղկանայ. առաջին՝ հնար եղածին չափ դրամ ձեռք բերել եւ փոխադրել հոն ուր պէտք է, եւ երկրորդ՝ վառ պահել համազգային օգնութեան ոգին գաղութներու մէջ: Կ՚աւելցնէինք՝ թէ Բարեգործականը այսօր չի կատարեր, դժբախտաբար, երկրորդ մասը իր սոյն դերին:*

*Կարելի չէ ասոր հակառակը պնդել, որքան ալ մէկը տոգորուած ըլլայ ընդդիմախօսելու եւ Միութիւնը արդարացնելու բուռն փափաքով: Առաջին անգամն է որ կազմութենէն ի վեր – ասիկա կրնամ հաւաստել առանց վարանումի՝ քանի որ ատկէ ի վեր անընդհատ կը*

*Հետեւիմ իր գործունէութեան, զայն կ՚արձանագրեմ, կը մեկնաբանեմ կամ կը քննադատեմ – որ ան, ազգային մեծ պահանջներու առջեւ եւ բացառիկ կերպով ծանր ժամանակի մը մէջ, ոչինչ կ՚ընէ առ հասարակ հայ ժողովուրդին եւ մասնաւորապէս իր անդամներուն ու համակիրներուն եղբայրական զգացումը արծարծելու եւ զանոնք զոհաբերութեան մղելու համար յօգուտ ամենուրեք՝ մօտ եւ հեռու՝ այդ օգնութեան կարօտ հայերուն: Իր դրամա-գլուխին եւ անդամավճարներուն կանոնաւոր հասոյթները արդէն պակսած, չաշխատիր, նաեւ, այդ պակասը գէթ մասամբ լրացնել նոր հանգանակութիւններով այն երկիրներուն մէջ ուր կարելի է, եւ այս պատճառաւ կը թերանայ իր դերին առաջին մասն ալ հարկ եղածին պէս կատարելու, այն է՝ «հնար եղածին չափ շատ դրամ ձեռք բերելու եւ փոխադրելու» հո՛ն ուր այդ պէտքը կայ:*

*Նոր չեն այս ակամայ հրաժարումին կամ ձեռնթափութեան պատճառները: Անոնք կուգան ինքնագոհութեան այն ոգիէն որ գրեթէ տասը տարիէ ի վեր սկսած էր տիրել եւ երթալով չեչտուած էր Միութեան կեդրոնին մէջ: Ամէն թելադրութիւն որ կ՚ըլլար, ամէն փորձ որ կը կատարուէր նոյն իսկ ամենամօտիկ բարեկամ շրջանակներէ այդ կեդրոնը իր «եսգիտեմճիութենէն» – գռեհիկ բայց ճշգրիտ բառ մը գործածելով – դուրս հանելու համար, կը հանդիպէր դժգոհանքի, կը նկատուէր թշնամանք եւ, կրկնուելով, յառաջ կը բերէր… դիւանագիտական յարաբերութիւններու խզում: Երբ կ՚առաջարկուէր (հոս այս սիւնակին մէջ) որ Միութիւնը իր բազմաթիւ մասնաճիւղերուն միջոցաւ օգնէ հայ գիրքի ծաւալման գործին, պատասխանը՝ մէկ տող, կուգար Միութիւնի մէջ. «Ոմանք մինչեւ իսկ կ՚ուզեն որ Հ. Բ. Ը. Մ.ը գրավաճառութիւն ընէ:» Երբ, երկար պահանջներէ եւ խոստումներէ ետք, կեդրոնը կը յայտարարէր թէ Միութիւնը ինք պիտի ընէ պէտք եղածը հայ ժողովրդին մտաւորական զարգացման եւս նպաստելու համար (որ իր ծրագրին մէջ է՝ իբրեւ նպատակ), ու կոչեր կ՚ուղղուէին գրական գործեր հրատարակելու համար, ժողովուրդը կամ անոր այն մասը որուն կարծիքը կը ներգործէ մնացեալին վրայ, պահ մը կը յուսադրուէր, կ՚սպասէր արդիւն-քին բայց երկար սպասումէ վերջ հուսկ ուրեմն կ՚զգար իր խաբուած ըլլալը եւ կա՛մ հակառա-կորդ կամ այլեւս անտարբեր կը դառնար Միութեան հանդէպ: Նուազագոյն արդիւնքով – եւ երբեմն առանց արդիւնքի՝ խօսքով միայն – մեծագոյն ռէքլամը ընել ինքզինքին, ա՛յս կը թուէր ըլլալ Միութեան կեդրոնին վերջին ատենուան քաղաքականութիւնը, որուն կ՚ընկերա-նար ամէն բան ըսելու երեւոյթին տակ՝ ամէն բան հանրութենէն ծածկելու նոր ուղղութիւն մը, որ նախորդ կեդր. Վարչութիւններու եւ մասնաւորապէս Պօղոս Նուպար փաշայի հաստա-տած ուղղութեան ներհակն էր ամբողջովին:*

*Այս պատճառները կը բաւեն ինքնին՝ բացատրելու համար թէ ի՛նչու եւ ի՛նչպէս Միու-թիւնը մտած է քունի մէջ, չի գործեր այն պահուն ուր ամենէն աւելի պէտք կայ իր գործունէութեան, եւ չի գործեր որովհետեւ իր տեղական վարիչներն ալ, անոր ուրիշ բարե-կամներուն նման, թուլցած են հիմա եւ չեն կրնար իրենց հին եռանդը գտնելով նոր գործ կատարել:*

*Ասոր ամենէն ցայտուն ապացոյցը կը տեսնենք այստեղ՝ Եգիպտոսի մէջ*[191]*:*

Բարեգործականը չըներ իրմէ սպասուածը.

*Զոր իրականութիւնը մեզի կ՚ըսէ դժբախտաբար՝ թէ Բարեգործականը չըներ, ներկայիս, ինչ որ կ՚ըսպասուէր որ ընէ:*

*Ուրիշ խնդիր է՝ թէ ան կրնա՞յ սպասուածը ընել:*

*Դարձեալ, ուրիշ խնդիր է՝ թէ ի՛նչ պատճառներով անիկա կարող չէ այդ ակնկալութիւնը գոհացնելու*[192]:

# ԱՆԹԻԼԻԱՍ

1940-ի դրութեամբ Թէքէեան Անթիլիասի կաթողիկոսութիւնը անուանած է «հակաթոռ», զայն հակադրելով Էջմիածինի հետ.

*Մեծ անակնկալի մը առջեւ կը գտնուինք:*

*Ամենայն Հայոց Հայրապետութեան Տեղակալ Գէորգ Արքեպս. Փետր. 22ին կը հեռագրէ Երուսաղէմի Ս. Պատրիարքին՝ յայտնելով թէ Էջմիածինը կը փափաքի մասնակցիլ Կիլիկիոյ Կաթողիկոսի ընտրութեան եւ խնդրելով որ Պատրիարքը ազդեցութիւն ի գործ դնէ յետաձգել տալու համար այդ ընտրութիւնը մինչեւ յառաջիկայ Յունիս 30»:*

...

*Խնդիրը երկու կողմ ունի մեզի համար, առաջինը՝ եկեղեցական-ազգային եւ երկրորդը՝ քաղաքական, որոնք երկուքն ալ նոյնքան ծանրակշիռ են:*

*Ըմբռնելու համար անոր եկեղեցական-ազգային տեսակէտով ներկայացուցած գերազանց կարեւորութիւնը, պէտք է յիշել՝ որ Էջմիածնի եւ Կիլիկիոյ կաթողիկոսութիւնները ոեւէ պաշտօնական կապակցութիւն կամ նոյն իսկ յարաբերութիւն չունին իրարու հետ, թէ մէկը Ամենայն Հայոց Հայրապետութիւնն է եւ միւսը՝ Կիլիկիոյ Հայոց, թէ Սիսի Աթոռը «ըստ օրինի» ուրիշ բան չէ բայց եթէ Հակաթոռ մը, եւ թէ Էջմիածինը, մասնակցելով Կիլիկիոյ Կաթողիկոսին ընտրութեան գործին, ոչ թէ միայն օրինապէս ճանչցած եւ ընդունած կ՚ըլլայ զայն – ինչ որ ձեւակերպութիւն մըն է կամ լոկ վաւերացումը վաղուց գոյութիւն ունեցող իրաց վիճակի մը՝ որմէ վնաս չէն կրեր Եկեղեցին եւ Ազգը – այլ ընդունած կ՚ըլլայ անոր իր վրայ գերակայութիւնը* [193]:

1941-ին կը տեսնէր Անթիլիասի կուսակցականացումը: Ան կը քննադատէր կուսակցութիւնը, որ կը փորձէր Անթիլիասի գլուխը նստեցնել տկար եկեղեցական մը, կը բաւէ որ իր քաղաքական միտումները համապասխանէին իրեն.

*Մենք պարտաւոր ենք այս մասին վերստին գրելու:*

*Ոչ թէ այն պատճառաւ որ մեր դրացի դաշնակցական օրկանին մէջ Խ. Հայաստանի գործերուն մասնագէտ վաղեմի խմբագիրը թեւերը սոթթեց եւ չորս յօդուածով իրերը ներկայացուց իր ուզածին պէս, այլ որովհետեւ անդին Լիբանանի եւ Սուրիոյ մէջ չափազանց*

*անբաղձալի կացութիւն մը ստեղծուած է այս պահուս՝ որ կ՚սպառնայ հետզհետէ աւելի գէշնալ եթէ պատասխանատուները չզգան որ իրենց սանձարձակ գործունէութիւնը կը դիտուի հեռուէն եւ պիտի սանձուի ան:*

*Պիտի սանձուի՝ ինչպէս սանձուած է ուրիշ ժամանակներ եւ ուրիշ տեղեր:*

*Թէ ի՛նչ յետին-միտքեր կային եւ ի՛նչ գաղտնի պատրաստութիւններ կատարուած էին ծանօթ խմբակին կողմէ կիլիկիոյ կաթողիկոսական ընտրութեան գործին մէջ, կարելի է ըմբռնել բայց կարելի չէ ամբողջ պարզել. աղմուկը զոր փրցուցին եւ տակնուվրայութիւնը զոր հանել կ՚աշխատին այդ պատրաստութեանց հեղինակները մինչեւ անգամ հո՛ս եւ ա՛յս միջոցին, անոնց ի դերեւ հանուելուն հետեւանօք, կը հասկցնեն թէ մարդիկը ի՛նչ յոյսեր կը սնուցանէին ներկայ խառնաշփոթ առիթէն օգտուելու եւ գործ մը յաջողցնելու համար եւ թէ ի՛նչքան ծանր եղած է իրենց յուսախաբութիւնը երբ կիլիկիոյ Միաբանութիւնը, արթննալով վերջին պահուն, չէ ուզած կամովին երկարել իր վիզը եւ շղթայ մը անցընել տալ անոր, որքան ալ ոսկեզօծ ըլլար ան...:*

*«Մարդիկը յուսացեր» էին, այո՛, որ շնորհիւ իրենց կանխորօք ձեռք առած թմրեցուցիչ միջոցներուն եւ շնորհիւ մանաւանդ ներկայ դէպքերուն, պիտի կրնային «թղթատունէն նամակ մը անցընելու պէս» Հարաւային Ամերիկայէն Անթիլիաս բերել եւ կիլիկիոյ կաթողիկոսական գահին վրայ նստեցնել ամէն կերպով ճղճիմ եկեղեցական մը, որուն միակ շնորհն էր իրենց կողմէն եւ իրենց ի նպաստ բղաւած ըլլալը Դուրեանի սպանութեան եւ էջմիածնի վերջին կաթողիկոսին մահուան պարագաներուն մէջ. ընե՛լ զայն կիլիկիոյ կաթողիկոս, մասնակցութեամբը նոյն իսկ էջմիածնի Աթոռին ներկայացուցիչներուն, եւ ապա զայն ծառացնել էջմիածնի, ծառացնել նաեւ Խ. Հայաստանի դէմ՝ գլուխը անցած, որպէս թէ, ամբողջ գաղութահայութեան եւ ըսելով թէ երկրի ժողովուրդն ալ նոյն կամքը պիտի յայտնէր եթէ ազատ ըլլար արտայայտուելու...:*

*Ուրիշ խօսքով, քանի մը տարիէ ի վեր յղացուած, ասդին-անդին ըսուած եւ երբեմն իսկ արտասահմանի կարգ մը եկեղեցականներու կողմէ հաճոյքով ըսուած խօլական ծրագրին գործադրութիւնն էր որ ջուրը կ՚իյնար, գէթ առժամապէս, Միաբանութեան ներկայ ելոյթովը:*

*Հասկնալու համար թէ Գարեգին Արքեպս. Խաչատուրեանը ընտրելով ի՛նչ մտքեր ունէին դաշնակցական երեսփոխանները՝ որոնք այդ ընտրութեան հրահանգը ստացած էին իրենց կեդրոնէն, եւ թէ իրականին մէջ ո՛րու դէմ է որ զայն կ՚ուզէին ընտրել, կը բաւէ կարդալ տեղւոյս օրկանին վերոյիշեալ չորս խմբագրականները ուր կան այսպիսի խօսքեր.*

*«Այս աշխարհին վերջին միամիտն իսկ գիտէ, որ քուէներու գունաւորումին մէջ մաս ունի այն իշխանութիւնը, որ քուէտուն էջմիածնէն ղրկեց Անթիլիաս:*

*«Մեր խօսքը կրօնական իշխանութեան մասին չէ, այլ աշխարհիկ: Իրականին մէջ բուն դերակատարը այս վերջինն է. Երեւա՛նն է – չըսելու համար Մոսկուան – որ պատուիրակներ կը ղրկէ Անթիլիաս՝ Գարեգին արքեպ.ը դատապարտելու եւ անոր տեղ իր ընտրեալը դնելու համար:»*

*Այսպէս, ուրեմն, կը խոստովանի մեր հեղինակաւոր գրողը՝ թէ վերոյիշեալ Գարեգին Արքեպս.ը ընտրել ուզող կուսակցութիւնը, եթէ ոչ առաջ գէթ հիմա կը պայքարի Երեւանի*

*«աշխարհիկ» իշխանութեան դէմ, – «չըսելու համար Մոսկուայի»:*

*Քանի որ «այս աշխարհին վերջին միամիտն իսկ գիտէ, որ քուէներու գունաւորումին մէջ մաս ունի այն իշխանութիւնը, որ քուէտուն էջմիածնէն ղրկեց Անթիլիաս», կը հետեւի թէ Դաշնակցութիւնը, որ հեռի է «այս աշխարհի վերջին միամիտն» ըլլալէ, գիտէր թէ այդպէս պիտի ըլլար եւ գիտնալով հանդերձ՝ որոշապէս գործել ուզեց այդ իշխանութեան դէմ, անոր դէմ դիրք բռնած եկեղեցական մը կաթողիկոս ընտրելով, այսօր Կիլիկիո՛յ եւ վաղը՝ Ընդհանրակա՛ն Կաթողիկոս*[194]*:*

# ՔՆՆԱԴԱՏՈՒԹԻՒՆ

Ուղիղ թիրախաւորումները եւ հանրային գործերու քննադատութիւնները վտանգաւոր դաշտեր են։ Փոխարէնը ընդունուած են ազգային հարցերու առնչութեամբ ընդհանուր վերացական ու հռետորաբանական քննադատութիւնները՝ ուր կարծէք մասնաւոր պատասխանատուներ չեն գտնուիր եւ քննադատութիւնը ուղղուած է անորոշ զանգուածի մը։

Թէքէեան ուղղակի քննադատութեան ենթարկած է Գալուստեան Ազգային Վարժարանի տնօրէնը[195], դպրոցի հոգաբարձութիւնը[196], Գահիրէի Առաջնորդական Փոխանորդը[197], եւ ուրիշներ։ Բաց աստի, իր քննադատութիւններուն մէջ մեծ տեղ կը գրաւեն հանրային հարցերը՝ իրենց այլազան երեսներով։ Բայց ոչ ոք կարեւոր տուած է այս քննադատութիւններուն, զանոնք դարձնելով ոչ-քննադատութիւններ.

*Ժողովուրդի մը կամ համայնքի մը կեանքին ամենէն վտանգաւոր շրջանը ըստ իս այն է՝ ուր քննադատեալները կրնան կարեւորութիւն չտալ քննադատութեան, կառավարութիւն ըլլան թէ ազգ. իշխանութիւն, գրագէտ ըլլան թէ քաղաքագէտ:*

*Ոչ մէկը, որ կը գործէ հանրութեան համար, զերծ կը մնայ քննադատութենէ՝ եթէ այդ հանրութիւնը կենսունակութիւն ունի: Բոլոր քննադատութիւնները ուղիղ չեն ըլլար հարկաւ, բայց հարիւր անգամ լաւագոյն է, ժողովուրդի մը համար, սխալ քննադատութիւնը ոչ-քննադատութենէ: Ոչ-քննադատութիւնը նշան է կա՛մ բռնապետութեան (օրուան բառով՝ տիկթաթորութիւն) եւ կամ անտարբերութեան, բարոյական մահացութեան:*

*Այս վերջինին նմանող, անոր առաջնորդող վիճակ մըն է ա՛յն՝ ուր քննադատութեան հանդէպ քննադատեալները «չլսողաց կ'ըլլան», ո՛չ իրենց սխալը կ'ուղղեն եւ ոչ ալ քննադատին սխալը՝ եթէ կը կարծեն թէ ան կը սխալի, – որովհետեւ «չեն քաշուիր» հանրային կարծիքէն որուն եթէ ոչ գոյութեան գոնէ զօրութեան չեն հաւատար...:*

*Մեր համայնքը, իբրեւ ազգային իշխանութիւն, այս ախտով վարակուած է հիմա, ա՛խտ զոր իր մէջէն ոմանք քաղաքագիտութիւն կամ առնուազն մեծ վարպետութիւն մը համարել կը թուին եւ որ, եթէ մինչեւ իսկ կ'սպաննէ հանրային ոգին՝ զիրենք կը փրկէ եւ խաղա-*

*ղութեան մէջ կ՚ապրեցնէ, ու այս պատճառաւ ախտ մը չէ այլ բարիք մը հարկաւ...*[198]*:*

Ուրեմն, ոչ-քննադատութիւնը կրնայ գործել երեք պարագաներու.

1. Բռնատիրական վարչակարգերու պարագային։
2. Անտարբերութեան պարագային։
3. Քննադատութիւնը կրնայ գրուիլ ու հրապարակուիլ, բայց անոր նկատմամբ տածուիլ կատարեալ անտարբերութիւն, որ, միեւնոյնն է, քննադատութիւնը կը դարձնէ ոչ-քննադատութիւն։

Թէքէեան ինքզինք կը տեսնէ երրորդ կէտին մէջ։ Երրորդ կէտը 1940-ականներուն կարելի էր եգիպտահայութեան մէջ։ Այսօր՝ ԻԱ. դարուն, եգիպտահայութեան համար գործադրելի է առաջին կէտը։ Հանրային քննադատը, երբ յայտնուի եւ ունենայ արտայայտուելու տարածութիւն, անմիջապէս կը ջախջախուի ղեկավարներուն կողմէ կամ յաւերժ կը մեկուսացուի գաղութէն։ Լուրջ հարցերու մասին ուղիղ եւ ոչ-ուղիղ քննադատութիւնները կտրականապէս ու վերջնականապէս արգիլուած են։

Գաղութահայ քննադատութիւնը պէտք է ուղղուած ըլլայ հանրային հարցերուն եւ առաջ մղէ նոր խնդիրներ։ Ցաւօք, յատկապէս Եգիպտոսի մէջ, ան յաճախ կը դառնայ փցուն, տգեղ եւ սպառիչ.

*Ոմանք կը կարծեն թէ ազգային կեանքի մէջ քննադատութիւնը յոռետեսութեան նշան է:*

*Այսպիսիները կը նկատեն նաեւ որ քննադատութիւնը խնդիր կը յարուցանէ եւ լաւագոյն է խուսափիլ նոր խնդիրներէ եւ թաղել հին խնդիրները քան թէ քննադատել նոյն իսկ արդարացի կերպով եւ յուզել հրապարակը:*

*Ըստ իս սխալ են այս երկու կարծիքներն ալ եւ անոնք որ ազգին բարիքը կ՚ուզեն պէտք է դժգոհ ըլլան այն ատեն միայն՝ երբ քննադատութիւնը կը դադրի հանրային գործի վերաբերմամբ եւ ամէն խնդիր կը մարի մեր մէջ:*

*Եթէ քննադատութիւնը ճիշդ չէ եղած ու չըլլար միշտ, եթէ գաղութահայութեան մէջ ընդհանրապէս ու հոս Եգիպտոսի մէջ մասնաւորապէս՝ յարուցուած խնդիրները շատ անգամ եղած են փցուն, տգեղ եւ սպառիչ, յանցանքը ո՛չ քննադատութեան եւ ոչ ալ խնդիր կամ վէճ բառով հասկցուած գաղափարին եւ գործինն է՝ այլ զանոնք գէշ կղացողներուն եւ երբեմն գէշ ընդունողներուն միայն:*

*Քննադատութիւն եւ խնդիր ըսելով կը հասկնամ հրապարակային քննադատութիւնն եւ հրապարակ ելած, հանրութեան սեփականութիւնը դարձած խնդիրները: Այլապէս, երբ անոնք ժողովի մը ծոցին մէջ պահուած կը մնան, յաճախ շատ բան կը կորսնցնեն իրենց արդիւնաւորութենէն, ինչ որ չի նշանակեր անշուշտ՝ թէ ամէն հարց պէտք է ամէն ատեն ամէն մարդու կողմէ քննուի ու լուծուի*[199]*:*

Քննադատութեան հետ սերտօրէն կապուած են հանրային վէճերն ու վիճա-

բանութիւնները։ Վէճերը կրնան տեղի ունենալ երեք կերպով.

1. Բխին ժողովուրդէն եւ հասնին ժողովականներուն։

2. Արտայայտուին մամուլին կողմէ՝ որ միջին դիրք կը գրաւէ ժողովուրդին եւ ժողովականներուն միջեւ։

3. Բխին ժողովականներէն եւ հասնին ժողովուրդին.

*Նոյնքան ազգային հաստատութեանց որքան ժողովուրդին շահուն համար, սակայն, փափաքելի է որ վէճեր գոյութիւն ունենան այդ հաստատութեանց վերաբերմամբ, ըստ որում հաստատութիւնները ժողովուրդին համար ու ժողովուրդով են, եւ այն օրը ուր ժողովուրդը ա՛լ պիտի չխօսէր անոնց վրայ, այն օրը պիտի ըլլար դժբախտ օր մը, պիտի ըլլար անոնց անկման սկիզբին օրը։*

*Ժողովականնե՛ր միշտ կրնան գտնուիլ, աղէկ կամ գէշ, աւելի կամ նուազ հարազատօրէն ժողովուրդին կամքը ներկայացնող մէկ քանի անձե՛ր՝ որոնք կրնան խղճմտօրէն աշխատիլ նաեւ, հոգ տանիլ իրենց ստանձնած գործերը լաւ կատարելու։ Ինչ որ պիտի պակսէր հետզհետէ եւ պիտի չգտնուէր այլ եւս, ազգային զգացմամբ ու եռանդով լեցուն զանգուա՛ծն է, այն պարագային ուր իր վարիչները աշխատած եւ յաջողած ըլլան անոր հետաքրքրութիւնը, եթէ կ'ուզէք անոր վիճասիրութի՛ւնը մարել։*

*Վէճը մեր մէջ իմաստը ունի քիչ մը կռիւի եւ քիչ մը բամբասանքի, անհիմն զրոյցներու վրայ ստեղծուած ամբաստանութիւններու։ Անիկա այդպէս ալ եղած է յաճախ, մինչդեռ զարգացած ժողովուրդներու մէջ անոր նշանակութիւնն է՝ նախ կարծիքներու եւ տեսակէտներու դէմ յանդիմանութիւնը եւ յետոյ՝ հանրային կայուն, լճացած կեանքի մը մէջտեղ, զայն կենդանացնելու ձգտող նոր գործի մը կամ նոր գործելակերպի մը առաջարկը։*

*Վէճը կրնայ ծնիլ երեք տարբեր ձեւով. առաջին՝ ժողովուրդի մէջ, եւ հասնիլ մամուլին ու ժողովներուն. երկրորդ՝ մամուլին մէջ, եւ մէկ կողմէ ժողովուրդին մէջ տարածուիլ ու միւս կողմէ ժողովները զգաղեցնել. երրորդ՝ ժողովներու մէջ երեւան գալ եւ մամուլին ու զանգուածներու սեփականութիւնը դառնալ։ Այս երեք պարագաներուն մէջ ալ մամուլը կը կատարէ էական դեր մը, էակա՛ն՝ թէ վէճին լուծման եւ թէ վիճող կողմերուն բարի յարաբերութեանցը տեսակէտով*[200]*։*

## ՔՆՆԱԽՕՍԱԿԱՆ

Թէքէեան *Արեւ*ի մէջ ստորագրած է ոչ մեծ քանակութեամբ թատերական, երաժշտական, նկարչական եւ հայկական ձեռնարկներու քննախօսականներ։

Արդիապաշտ (modernist) շրջանը հունի մէջ էր։ Հեղինակ եւ ստեղծագործութիւն հասկացողութիւնները կը գտնուէին ըմբռնումներուն գագաթնակէտը։ Յատկապէս երաժշտութեան պարագային, կատարողները պէտք է «հարազատ» ըլլային հեղինակին՝ կատարելով անոր գրաւոր ցանկութիւնները։ Գրաւորութիւնը

ստացած էր բացարձակութիւն եւ անձեռնմխելիութիւն, անտեսելով որ անկարելի է վերարտադրել ուրիշ դարաշրջաններու, ուրիշ մտայնութիւններու, ուրիշ ազգութիւններու մտածողութեան ճշգրտութիւնը։ Թէքէեան չի հակամտեր այս ուղղութեան։ Գնահատելով Նուարդ Տամատեանի դաշնակի մենանուագը, կը գրէ.

*[Դ]ատելով իւրաքանչիւր կտորի գործադրութեան իր տուած բոլորանուէր ուշադրութենէն, իր ուղղահայեացՙ պիտի ըսէիՙ սուզումէն անոր մէջ, կը կարծեմ թէ ան երկարօրէն ջանացած է ու այդ պահուն կը ջանայ տակաւինՙ ըլլալ հլու թարգմանը հեղինակին, թափանցողը անոր ամենափոքր դիտաւորութիւններուն, առանց ինքնիրմէ բան մը աւելցնելու անոնց վրայ կամ բան մը անոնցմէ մէկ կողմ ձգելու*[201]։

Հեղինակին թարգմանը ըլլալը ինքնին արժէք մըն էր արդիապաշտ երաժըշտական կատարողականութեան համար։

Նուազ չափով ասիկա շեշտուած է նաեւ արդիապաշտ թատերական բնագաւառին մէջ։ *Գէշ հովիները* բեմադրութեան համար կը գրէ.

*Պ. Օ. Վոլթէռ խաղաց Ժան Ռուլը. իր քոնբոզիսիօնին մէջ աւելի շեշտած է կարեկիցՙ քան կռուող մարդը։ Այս չէ հեղինակին դիտաւորութիւնը*[202]։

Քննադատած է թատերական բնագիրները փոխելու հայկական սովորութիւնը.

*«Բրօֆէսէօր»ի մը (ռուս) հեղինակութիւնը ըլլալուն համարՙ երկիւղած ուշադրութեամբ հետեւեցանք թատերախաղին ընթացքին։ Բրօֆէսէօ՞րՙ թերեւս, բայց գեղարուեստագէ՞տՙ ոչ շատ, – պայմանաւ անշուշտ որ մեր տեսածը իր գրչէն ելածը ըլլայ, առանց սրկէ նրկէ յապաւումներուՙ որոնք այնքան սովորական են հայ բեմին համար*[203]։

Թէքէեանի բացառիկութիւնը քննախօսական ճիւղին մէջ, արդարեւ, պիտի փնտռել այլուր։

Օրինակ, քննախօսելով Շահան Պէրպէրեանի երգահանդէսը, առաջ կը մղէ ոչ այնքան նոր հարցըՙ թէ արուեստներուն մէջ երաժշտութիւնն է որ ամէնէն աւելի սիրտերը կը թեւածէ խմբովին։ Յիշենք Շոփենհաուերի տեսութիւնըՙ թէ բոլոր արուեստները կը ձգտին երաժշտութեան կացութեան.

*Արդարեւ, սրահին մէջ հաւաքուած* 600*ի չափ հայերու բազմութիւնը զգաց, այդ գիշեր, թէ հայ երգը, հայ արուեստագէտներէ դաշնաւորուած կամ ստեղծուած եւ հայ գեղագէտ ուսուցչէ մը հայ երիտասարդուհիներու եւ երիտասարդներու հոգւոյն մէջ ներփչուած* (insufflé), *ունէրՙ իր աննման գեղեցկութեան հետՙ աննմանօրէն զարթուցիչ եւ զօդիչ ուժ*

*մը, սիրտերը խմբովին թեւածել տուող այն ուժը որ արուեստին եւ արուեստներու մէջ՝ երաժշտութեանն է ամէնէն աւելի*[204]:

Այս գաղափարը արտայայտած է այնպիսի գրական գեղագիտութեամբ եւ բանաստեղծական ասեղնագործութեամբ, որ ուշադրութիւնը կը շեղի երաժշտութեան գերադաս կացութենէն դէպի գրականը՝ Թէքէեանի տողերուն ընդմէջէն: Երաժշտութի՞ւնն է մեկնաբանուողը (արտաքին կացութիւն՝ երգահանդէս) թէ գրականութիւնը (ներքին կացութիւն՝ գրութիւնն ինքն իր մէջ): Ասիկա երաժըշտութեան *մասին* մեկնաբանութի՞ւն մըն է արդեօք, թէ գրական հնարաւորութիւններու բացայայտում: Առ նուազն, ներքին բախում մըն է երկուքին միջեւ:

Թէքէեան կը սիրէր դիմել բառային իմաստներու վերագունաւորումներու: Աշոտ Զօրեանի նկարչական ցուցահանդէսին առիթով կը քննականացնէ ձեւն ու բովանդակութիւնը, ձեւին վերագրելով «տոկունութիւն» հասկացողութիւնը, բովանդակութեան՝ «ճկունութիւն».

*Իսկ եթէ ուզէինք նկարչական քննադատի դերին մէջ մտնել անպատճառ. եթէ, կանգ չառնելով այդ դերին համար մեր անվարժութեան՝ փորձէինք սակայն անոր լեզուն գործածել. եթէ պարզապէս մեր տպաւորութիւնը չբացայայտէինք, – պիտի ըսէինք որ Զօրեանի մէջ «տոկունութիւնը» (ձեւ եւ գոյն) որ իր հիմնական յատկութիւններէն է՝ երբեմն կ՚ստացուի ի վնաս ճկունութեան, նո՛յնքան դիմանկարներու որքան բնանկարներու մէջ, թէեւ այս վերջիններուն մէջ ան կը թուի աւելի մեծ ազատութիւն մը վայելել*[205]:

Միայն բանաստեղծական ոգիով գրող մըն է որ կրնայ այսպէս նկարագրել ջութակահար Ֆիլիբ Աղազարեանի նուագահանդէսը.

*Գալով նախասիրութիւններուս, յայտագրէն եւ գործադրութենէն, կը փնտռեմ ու չեմ գտներ գրեթէ: Եթէ ընեմ բացառութիւն մը Մոցարդի ռօնտօին համար՝ որ թեւեր ունէր (թիթեռնիկի կամ չերեփուկի), պէտք է ըսեմ նաեւ թէ երբեմն կայծեր կը հանէին սմբակները Շաքոնին, թէ առաջին կտորը՝ լա Ֆօլիան նուաճուած էր արուեստագէտէն ինչպէս դժուարազուսպ նժոյգ մը, թէ արեւելեան ոգին կը հոսէր – հեղինակներուն ու նուագողին միջոցաւ – ռուս, սպանիացի եւ հրեայ նուագահաններու գործերէն, թէ ասոնց մէջ՝ է. Պլօքի Նիկունը հայու զգացումներ կը թարգմանէր կարծէք, մինչ իրեն՝ Աղազարեանի Հայկական մէլոտին, խորհրդապահօրէն արձագանգ տուող ժողովրդական երգի մը եղանակին, եւ Օրօրը, ինքնատիպ բոլորովին, – որ ի սկզբան արագ ու աշխոյժ է՝ ինչպէս մօր մը սիրազեղ շաղփաղփանքը ուղղուած քնանալ չուզող իր զաւկին եւ հետզհետէ կը մեղմանայ նուրբ արապէսքներու մէջ ոլորուելով, – ցոյց կուտան այդ երկու կտորները Աղազարեանի, ինչպէս եւ իր ըրած առանձին ջութակի առանձնումը Մազասի կտորին, թէ ի՛նչ զգայուն նուագահան մըն է ան՝ ըլլալէ ետք կատարելատիպ նուագիչ մը զգացմամբ եւ թէքնիքի տիրապետութեամբ*[206]:

Կ'ըսէի, այստեղ ամբողջութեամբ Թէքէեանն է, ջութակահարը ըլլալով լոկ առնչութեան կէտը։

Նոյնպէս, Զօրեանի մասին մեկնաբանութիւնը՝ իր գրական ամբողջ յագեցւածութեամբ.

*Կիպրոսի եւ Լիբանանի տեսարանները, մասնաւորապէս, յաճախ իրեն առիթ տուած են առանց ցնցումի՝ քաղցրութեամբ արտայայտելու զինք լեցնող բանաստեղծական զգացումը, մինչ եգիպտական տեսարանները տխրութեան եւ Սուրիոյ մէկ քանի կրօնական յիշակերտները ի յայտ կը բերեն համակերպութեան, պիտի ըսէինք ճակատագրապաշտութեան խորք մը նկարչին արեւելքով սնած հոգիին մէջ*[207]։

Բաց աստի, ան չէ զլացած նաեւ արտայայտել իր ոչ-համակրանքը վոտըվիլի եւ մելոտրամի նկատմամբ.

*Գաղափարական խաղ մը, ինչպէս Գէչ հովիւները, լաւագոյն է քան վոտվիլ մը կամ մելոտրամ մը*[208]։

Վերջապէս, երբ ձեռնարկը պարզապէս անհրապոյր է, ան դիմած է ուղիղ քննադատութեան, ինչպէս Գալուստեանի հանդէսը 1938-ին.

*Լաւ չէին, ըստ իս, խմբերգները։ Տղաքը կարծես ակամայ, ճանձրոյթով կ'երգեն եւ այդ ճանձրոյթը կ'անցնի նաեւ ունկնդիրին։ Երգը ոչ միայն իր հոգիէն պարպուած այլ եւ իր ղնդերներէն ու ջիղերէն ալ կարծես սակուած է՝ երբ դուրս կ'ելլէ մանկական ու պատանեկան շրթունքներէն։ Եւ ի՞նչ ըսել այն պզտիկ գործիքներուն – եռանկիւն, ծնծղեայ դափ եւն. – որոնք փոխանակ երգը հագուեցնելու, կարծես աւելի եւս կը չեչտեն անոր նիհարութիւնը։ Գալով այր-մարդու պաշտօնական սեւ տարազով ծպտուած աղջնակներու ճպոտ ի ձեռին մաէսթրոյաձեւ խմբավարութեան, կը ներեմ ինքզինքիս ըսել՝ որ եթէ կատակ է մէկ անգամը բաւական է, իսկ եթէ լուրջ է կը յայտնէ ճաշակի պակաս մը, զոր պէտք է խնայել թէ՛ աշակերտութեան եւ թէ հանդիսատեսներուն։ – Երբ, մանաւանդ, իր կրցածը ընելէ վերջ խեղճ պզտիկ ղեկավարուհին վար կ'իջնէր պատուանդանէն եւ իրեն տրուած հրահանգին համաձայն բոչէթը քաշելով որպէս թէ քրտինքը կը սրբէր, յետոյ ետ-ետ երթալով ու թեւի կլոր շարժումներով համեստօրէն խումբը ցոյց կուտար իբրեւ նշանակէտ ժողովուրդին ծափերուն, – բազմիցս կրկնուած այդ պատկերին առջեւ՝ ես տխրութիւն կ'զգայի, տխրութիւն միայն...*[209]

# ԳՐԱԿԱՆ-ՄՏԱՒՈՐԱԿԱՆ ՆՈՅՆԱՑՈՒՄՆԵՐ

*Արեւ*ի էջերուն մէջ Թէքէեան անընդհատ անդրադարձած է գրողներու մասին, քննարկած անոնց հրատարակութիւնները, հաղորդած կենսագրական տեղեկութիւններ։ Բայց երեք գրողներու նկատմամբ ցոյց տուած է մասնաւոր ուշադրութիւն՝ կարծէք ուզած է ինքզինքը դիտել անոնց ընդմէջէն։ Անոնք են՝ Արփիար Արփիարեան, Երուանդ Օտեան եւ Շահան Շահնուր։

## 1. ԱՐՓԻԱՐ ԱՐՓԻԱՐԵԱՆ

Թէքէեանի համակրութիւնը իր աւագ գրչընկերոջ Արփիարեանի նկատմամբ սկսած է բաւական վաղ։

Ակնարկ մը նետելով միայն եգիպտական շրջանին վրայ, կը տեսնենք որ իր Աղեքսանդրիա ժամանումէն անմիջապէս յետոյ, 1905 Յունուարին Արփիարեան կը սկսի յօդուածներ ստորագրել Թէքէեանի խմբագրած *Շիրակ*ին մէջ, ապա, 1906 Յունիսին *Շիրակ* կը փոխադրուի Գահիրէ եւ Արփիարեան կը դառնայ անոր խմբագիրը, մինչ Թէքէեան Կիւրճեանի հետ կը մնայ հիմնադիր-տնօրէնը։ Ամէն օր միասին կ'անցընեն ճաշարանի թէ սրճարանի մէջ։ 1907-ին Թէքէեան եւ Արփիարեան սենեակներ կը վարձեն Շարա Ալ-Մանախի միեւնոյն բնակարանին մէջ։

1908 Փետրուար 12-ին Գահիրէի մէջ կը սպաննուի Արփիարեան։ Թէքէեանն է որ Ապտինի ոստիկանատունը երթալով կը հաստատէ դիակին ինքնութիւնը։ Թաղումին կ'արտասանէ ազդեցիկ դամբանական մը[210] եւ *Լուսաբեր*ին մէջ անստորագիր երկար գրութեամբ ամենայն մանրամասնութեամբ կը նկարագրէ ամբողջ թաղումի արարողութիւնը[211]։ Քանի մը օր ետք նոյն լրագիրին մէջ կը հրապարակէ թունդ յօդուած մը՝ սպաննիչներուն եւ անոնց յենակիցներուն հասցէագրուած խիստ որակաւորումներով[212]։

*Արեւ*ի մէջ Թէքէեան սահմաններ չի ճանչնար, երբ *Հայրենիք*ը 1931-ին կրկին կը բանայ Արփիարեանի մատնիչ ըլլալու շինծու հարցը.

> ***Մեծ գրագէտն ու անձնուէր հայրենասէրը իր կեանքին վերջին տարիներուն զիս պատուեց իր բարեկամութեամբ։ Իր յիշատակին փաստացի պաշտպանութիւնը պէ՞տք է կատարել թէ ոչ – դեռ համոզուած չեմ այս պահուս։ Կան պարագաներ՝ ուր պաշտպանութիւն մը ոչ միայն աւելորդ է այլ կարծես ակամայ նախատինք մըն է պաշտպանեալին համար, որ պէտք չունի, պէտք ունենալու չէր ոեւէ պաշտպանութեան։ Բայց այս «նրբութիւնը» չհասկցուիր եղեր մեր մէջ։ Բայց բարոյապէս ստիպուած եմ եղեր խօսելու։ Խօսի՛նք ուրեմն***[213]։

Թէքէեան ստուգապէս մերժած է Արփիարեանի առասպելականացումը՝ կեղծ բանաստեղծականացուած բառերու տարափին տակ։ Ուզած է Արփիար-

եանը դիմագծել իրապաշտ հողի վրայ, զայն հեռու պահելով զոհասեղանի մատաղի զգայացունց վերագրումներէ, ուստի ձգտելով սլաքը ուղղել դէպի երեք մահափորձերու բուն ծրագրողներն ու գործադրողները։

Այսպէս, Արսէն Երկաթ Արփիարեանի մասին գրութիւն մը կը հրատարակէ *Յուսաբեր*ի մէջ, մեծ գրողին տալով զոհուածի նկարագիր։

Թէքէեան կը կեդրոնանայ քանի մը կէտերու շուրջ՝ նպատակ ունենալով ապա-առասպելականացնել Երկաթի յօդուածը.

1. Արսէն Երկաթ կ՚ուզէ ընդգծել՝ որ մահուան ժամանակ Արփիարեանի մօտ գտնուած է ընդամէնը չոր հացի կտոր մը։ Այսինքն, ան իր վերջին շրջանը անցուցած է ծայրայեղ աղքատութեան մէջ։ Թէքէեան կը հերքէ ասիկա եւ ցոյց կու տայ՝ որ ան նիւթապէս եղած է ապահով, ունեցած է 10 ոսկի կայուն ամսական *Լուսաբեր*էն եւ որոշ եկամուտներ *Շիրակ*էն, ամսական երեք ոսկիով վարձած է յարկաբաժին մը Գահիրէի կեդրոնը եւ ամէն օր ճաշած է լաւագոյն ճաշարաններէն մէկուն մէջ։ Ասիկա կը կոտրէ հայ գրողը կատարեալ չքաւորութեան եւ անկարութեան մէջ տեսնելու պարտադիր պատկերը.

*Պ. Արսէն Երկաթ գրութիւն մը ունի անցեալ շաբաթ օրուան Յուսաբերի մէջ, ուր իր պատանեկան յուշերուն վրայ յենլով կը նկարագրէ մեծ գրագէտին մահը, անոր անշունչ դէմքին պատկերը, անոր թաղումը եւայլն։*

*«Գրպանէն գտած էին կտոր մը հաց, զոր սենեակը հասնելուն՝ թերեւս արցունքով պիտի թրջէր։ ...Ամերիկայէն եկող հայորդի մը այդ պատառ մը հացը զոհին արիւնովը ներկեց։»*

*Առնենք նախ այդ «պատառ մը հաց»ին պատմութիւնը, որ տարիներէ ի վեր հայ մամուլին շրջանը կ՚ընէ իբրեւ ապացոյց գրողին բացարձակ չքաւորութեան։ Արդ, առասպել մըն է ան, ո՛չ ճիշդ եւ ոչ ալ աղուոր, զոր ուրիշ գրող մը ստեղծեց եւ տարիներ վերջ անոր յարութիւն տուին մարդիկ եւ զայն սիրեցին, գգուեցին ու տարածեցին՝ հասկցնելով որ այդպէս լաւ էր, այդպէս անգութ եւ տգէտ ըլլալու էր մեր ժողովուրդը իր մէկ տաղանդաւոր, շատ տաղանդաւոր զաւկին հանդէպ։*

*Արփիարեան եւ իր եղբօրորդին Փիլիկ, Յար. Թիւրքեան (պաշտօնեայ Երկաթուղեաց Վարչութեան) եւ ես կը բնակէինք նոյն յարկաբաժինը, Շարա Էլ-Մանախ, Նէշընըլ Րէզիտանս շէնքին մէջ՝ որ մաս կը կազմէ Նէշընըլ Հօթէլի պլոքին։ Արփիար 3 ոսկի կը վճարէր իր սենեակին, մօտ տարիէ մը ի վեր։ Իր մահէն քանի մը ամիս առաջ Աղեքսանդրիա փոխադրուելով՝ ես թողած էի այդ սենեակս ու վերադարձիս զայն վարձուած գտնելով գացած էի այլուր։ Բայց ամէն օր, ցերեկ եւ գիշեր, միասին կը ճաշէինք Հալէպլեան ճաշարանը՝ որ ճիշդ այդ միջոցին եկած հաստատուած էր այժմեան Բարիզիանայի տեղին վրայ խանութ մը։ Հալէպլեանը հայ ճաշարաններուն լաւագոյնն էր այն ատեն, ուստի՝ ոչ շատ աժան ճաշարան մը իր ատենին համար, եւ Արփիար տետրակ կամ վարկ չունէր, ամէն օր կը մաքրէր իր հաշիւր։*

*Ան Լուսաբերի խմբագրապետն էր, ամիսը տասը ոսկի կ՚ստանար, որմէ զատ գանձումներ մը կ՚ընէր յանուն Շիրակի որուն հրատարակութիւնը իրեն յանձնած էինք իր փափաքով*

*աւելի քան տարիէ մը ի վեր բայց Հազիւ ինը թիւ միայն մէջտեղ Հանած էր երբ մեռաւ:*

*Կը տեսնուի թէ «պատառ մը Հաց»ով չէր ապրեր ան այդ պաՀուն: Եգիպտոս գալէ առաջ, Վենետիկի մէջ, իրա՛ւ, պաՀ մը նեղուած էր, բայց Ս. Ղազարէն իր ճաշը ղրկէր էին միշտ, եւ երբ գրեց մեզի՝ Շիրակին, – որուն առաջին թիւէն վճարեալ աշխատակիցը դարձեր էր, – թէ ա՛լ չէր ուզեր կամ կրնար Հոն մնալ, Հրաւիրեցինք զինքը Հոս՝ ուր գալուն իսկոյն ստանձնեց Լուսաբերի խմբագրապետութիւնը զոր թողեր էր Պ. ՎաՀան Քիւրքճեան՝ Գալուստեանի տնօրէնութեան կոչուելով: ՊաՀ մը Հրաժարեցաւ Լուսաբերէն, եւ այդ միջոցին ալ նեղուեցաւ – մէկ կամ երկու ամիս՝ եթէ չեմ սխալիր – բայց Յար. Թիւրքեան եւ ուրիշներ օգնեցին իրեն, մինչեւ որ վերադարձաւ իր պաշտօնին՝ որուն թոշակը կանոնաւորաբար կը վճարուէր իրեն, ամէն ամսագլխուն, Տօքթ. Քէչէճեանի կողմէ:*

*Իր սպանութեան երեկոյին, ժամը 8ի ատենները, Արփիար տունէն դուրս ելած էր եւ Հաւանօրէն ճաշարան կ'երթար եւ ո՛չ թէ տուն «արցունքով թրջած» իր չոր Հացը ուտելու, ինչպէս կը Հասկցնէ Պ. Արսէն Երկաթ: ԱյսուՀանդերձ, Հացի կտոր մը ունեցած է քովը, իր ձեռքի ծրարին մէջ եւ ոչ թէ գրպանը, ինչպէս որ կ'ունենար յաճախ եւ զոր պաՀած կ'ըլլար իր առտուան նախաճաշէն, ոեւէ ատեն պատառ մը փրցնել ուտելու Համար սրճարանին մէջ՝ ուր կը գրէր իր յօղուածները…: Մալէզեանն է որ երկու օր վերջ իր դամբանականին մէջ յիշեց այդ Հացը եւ անով աւելի յուզեց յուղարկաւորները ու նոյն ինքն Պօղոս Փաշան որ ներկայ էր՝ քան մնացեալ բոլոր խօսքերովը…*[214]:

2. Արսէն Երկաթ զգացական գունաւորումներ կու տայ Արփիարեանին, նկարագրելով որ իբր մօտը գտնուած հացը թաթախուած էր արիւնով եւ թէ մեռած Արփիարեանի դէմքը կը ժպտէր: Թէքէեան կը մերժէ նման բանաստեղծականացումները, գտնելով որ անոնք կեղծ են նոյնիսկ գրական առումով.

*Միայն թէ՝ ան* [իմա՝ Վահան Մալէզեան, Հ.Ա.] *չըսաւ, ես չլսեցի այն ատեն* [դամբանականին մէջ] *եւ Հիմա միայն կ'իմանամ Պ. Արսէն Երկաթի գրութենէն, թէ վերոյիշեալ Հացի կտորը գտնուած էր Արփիարի արիւնովը ներկուած, ինչպէս նորէն ու նորէն կ'անդրադառնայ Պ. Արսէն Երկաթ գրելով. «Սրտի մը անՀուն ծանրութիւնը չափող կտոր մը Հաց նոյն այդ սրտին արիւնովը թաթաւուն…: Ու մաՀացու վէրքէն Հոսած արիւնովը կարմիր կը տեսնէի Հացը մեր աղքատիկ սեղանին վրայ…»: Ասիկա բանաստեղծական է թերեւս, բայց իրական չէ դժբախտաբար, եւ իրական չըլլալուն Համար ան գեղեցիկ ալ չէ, ըստ իս…:*

*Թէ մեռած Արփիարի դէմքը «կը ժպտէր», ինչպէս կ'ըսէ Պ. Արսէն Երկաթ, նոյնպէս ճիշդ չէ, որով կ'իյնան ատկէ Հանած իր նուրբ Հետեւութիւններն ալ: Ան Հանդարտ էր միայն, եւ ասով գեղեցիկ: Տեսայ զայն սպանութենէն Հազիւ երկու ժամ վերջը, Ապտինի ոստիկանատան բակը ուր պառկեցուցած էին ծածկոցի մը տակ, եւ տեսայ գերեզմանատունը՝ թաղման վայրկեանին: Ո՛չ, ժպիտ չունէր ան:*

*Ըստ Պ. Արսէն Երկաթի, այդ անգոյ ժպիտը այնպիսի բաներ կ'ըսէ եղեր՝ որ «եթէ մէկը իր Հոգիին մէջ զգար այդ ադամանդին լուսաշող սլաքը, այդ շուշանին երկնաբոյր ծաղկումը, անշուշտ որ պիտի ընդմիջէր դամբանախօսները՝ պոռալով անոնց երեսին. – Ջէ՞ք տեսներ*

*որ մեռելը կը ժպտի, ուրեմն ինչո՞ւ կը շարունակէք ձեր կոկորդիլոսի արցունքները:»*

*Ես մէկն էի երեք դամբանախօսներէն – միւս երկուքն ըլլալով Վ. Մալէզեան եւ Եր. Սրմաքէշխանլեան – եւ յանուն մեր երեքին կը յայտարարեմ որ «կոկորդիլոսի արցունք», այսինքն կեղծ արցունքներ չէինք կրնար թափել՝ այն պարզ եւ հասկնալի պատճառով որ մեր ցաւն եւ յուզումը կեղծ չէին...*[215]:

3. Թէքէեանի համար ուղղակի սխալ մըն է Արսէն Երկաթի յայտարարութիւնը՝ թէ Արփիարեան կտոր մը հացի դիմաց կը գրէր իր միտքին ու սիրտին հետ առնչութիւն չունեցող յօդուածներ.

*Ու վերջապէս, Պ. Արսէն Երկաթ կ՚ըսէ. «Հայ գրագէտը կտոր մը հացի համար կը գրէր, կը գրէր՝ ինչ որ յաճախ առնչութիւն չունէր իր մտքին ու սրտին հետ...»: Եւ դարձեալ. «Մի՛ վախնար, կ՚ըսէին անոր, գրէ՛, մենք քովդ ենք կեցեր...: – Գրէ՛, մի՛ վախնար...: Գրէ՛, գրէ՛, Արփիար...:» Այս բառերը կը նախատեն զոհին յիշատակը՝ հասկցնելով թէ ան «հացի համար» եւ ուրիշներու ստիպումով միայն կը գրէր եւ ատոր հետեւանօք նահատակուեցաւ, մինչ ամէն մարդ եւ ես շատ մօտէն գիտենք թէ ան իր հաշուոյն, իր մտքովն ու իր սրտովը միայն կը շարժէր՝ առանց մէկէ մը դրդուելու եւ անշուշտ առանց «իր հացին» նկատումովն այդպէս ընելու...*[216]:

Արփիարեանի նկատմամբ նման բացայայտող պաշտպանողական մը կրնար գրել միայն անոր հետ ներքնապէս կապուած, անոր գաղափարներուն խորապէս համոզուած անձ մը։

Քանի մը օր ետք *Յուսաբեր* կը հրատարակէ ուրիշ յօդուած մը, ուր կը նշէ, թէ 1890-էն առաջ Նուրեան էֆէնտիին ապտակած ըլլալուն համար Արփիարեան կը ստիպուի 1904-ին Կ. Պոլսէն Եգիպտոս ապաստանիլ։ Դէպքին ճշդութիւնը կը հաստատէ Թէքէեան, բայց անմտութիւն կը համարէ՝ որ Արփիարեան միայն 15 տարի ետք պիտի մտածէր խոյս տալ եւ ապաստանիլ այլուր։ Թէքէեան անհրաժեշտ կը նկատէ գրաւոր պատասխանել.

*Անցեալ շաբաթ օրուան Յուսաբերի մէջ անճիշդ տեղեկութիւններ կան «40 ամեայ յուշեր» խորագրով: Յուշե՜ր:*

*Կը կարդամ, արդարեւ, «1904ին, երբ կը հասնէի Եգիպտոս, հոն կը գտնէի ողբացեալ Արփիարեանը»: Ո՛չ, ան Եգիպտոս եկաւ 1905ին:*

*Յետոյ. «Կ՚ըսեն նաեւ թէ Արփիարեան Կ. Պոլսէն Գահիրէ ապաստանած էր՝ այն ատենի Ազգ. Վարչութեան ատենապետ եւ Պետական Խորհրդոյ անդամ Նուրեան էֆէնտիի շառաչուն ապտակ մը փակցնելէ ետքը...»: Ապաստանա՜ծ: Որոնք որ ըսած են կամ կ՚ըսեն ատիկա, մեր ազգային ներքին կեանքին մասին բան մը չգիտնալէ զատ տրամաբանութիւն ալ չունին: Դուք դատեցէք: Ապտակի դէպքը պատահած է 1890էն առաջ, Ազգ. Ժողովին մէջ՝ երբ Նուրեան «սրիկայ» ըսած է Արփիարին եւ Արփիար ապտակած է Նուրեանը բայց կառավարա-*

*կան միջամտութենէ մը վախցող – որովհետեւ Նուրեան պալատի աստիճան ունէր եւ Պետական Խորհուրդի անդամ էր – կրօնական եւ աշխարհական երեսփոխաններու Թախանձանքին վրայ Արփիար ընդունած է սա՛ կարգադրութիւնը. ինքը, երիտասարդ այն ատեն, պիտի համբուրէր ձեռքը ալեւոր Նուրեանին՝ որ ի փոխարէն պիտի համբուրէր Արփիարի ճակատը: Այդպէս ալ կ'ըլլայ...: Անկէ քանի մը տարի վերջը՝ Արփիար կը ձերբակալուի իբրեւ յեղափոխական. յետոյ՝ բանտէն կ'ելլէ. յետոյ՝ կ'ըլլայ Հայրենիքի խմբագրապետը* 1891*էն* 1895. *յետոյ՝* 1895*ին կը վարէ Պապը Ալիի Հնչակեան ցոյցը. յետոյ՝ կը հեռանայ կամ կը փախի Պոլսէն, կ'երթայ Աթէնք, Լոնտոն.* 1898*ին է որ (եթէ չեմ սխալիր) Վեր. Հնչակեան Ընդհ. Պատգ. Ժողովին համար կուգայ Եգիպտոս եւ կը մնայ քանի մը ամիս. կը վերադառնայ Լոնտոն ուր կը շարունակէ ըլլալ Վեր. Հնչ. Կեդր. Վարչութեան անդամ եւ կը հրատարակէ Նոր կեանքը. կը տապալուի. ատեն մը Անգլիոյ Պրայթըն քաղաքը մնալէ ետք կ'անցնի Վենետիկ ուր կը հրատարակէ Հայ հանդէսը* 1903*ին, տասնեակ մը Թիւ. Վենետիկէն կ'աշխատակցի Շիրակին եւ հոս կուգայ, ինչպէս ըսի,* 1905*ին միայն... այսինքն առ նուազն տասնըհինգ տարի վերջը ապտակի խնդրէն եւ այդ միջոցին պատահած բոլոր դէպքերէն ետք, զորս գրչի մէկ հարուածով կը ջնջէ կը հարթէ Յուսաբերի գէշ... յուշագիրը...*[217]:

Թէքէեան անհրաժեշտ դատելով Արփիարեանի «ապաստանութեան» հարցը ճշդել, անգամ մը եւս փաստած կ'ըլլայ իր նախանձախնդրութիւնը անոր անձին եւ կենսագրութեան հանդէպ:

Ապա կը ստորագրէ անձնական իրական ապրումներով յագեցած յուշեր Արփիարեանի մասին, ուր ուղղակիօրէն կը խոստովանի.

*Հոս* [իմա՝ Գահիրէ, Հ.Ա.], *Արփիարի հետ ամէն օր կը հանդիպինք իրարու՝ ճաշարանը եւ սրճարանը: Շուտով՝ բնակակից կ'ըլլանք նաեւ: Ամենահամեղ մարդն է որուն հանդիպած ըլլամ: Ինձմէ* 28 *տարու մեծ է եւ իր մեծութիւնը՝ տարիքով ու խելքով՝ կ'զգամ երբ կը խօսի ինծի, բայց երբ ես իրեն կը խօսիմ՝ կարծէք Թէ ինքն է որ ինձմէ պզտիկ ըլլայ, երբեմն փոխադարձելու համար իրեն հանդէպ իմ զորովս, երբեմն ալ ինծի հետ միշտ համաձայն մնալու իր փափաքովը, որ երբեք պիտի չնուաղէր ու իմ կողմէս նոյն փափաքով պիտի դիմաւորուէր, մինչեւ իր եղերական մահուան օրը...*[218]

## 2. ԵՐՈՒԱՆԴ ՕՏԵԱՆ

Թէքէեանի եւ Օտեանի միջեւ բարեկամութիւնը կը սկսի Աղեքսանդրիա, 1905-ին, երբ Օտեան կը վերադառնար Հնդկաստանէն[219], եւ կը շարունակուի մինչեւ երգիծագիրին վերջին օրերը հիւանդանոցին մէջ:

Թէքէեան-Օտեան անձնական յարաբերութիւնները չհասնելով հանդերձ Թէքէեան-Արփիարեանի անհուն ջերմութեան, երկուքին գաղափարները միշտ մնացին համահունչ՝ յեղափոխական շարժումներուն, մեծահարուստներուն, կղերականներուն եւ այլ հարցերու առնչութեամբ:

1929 Մարտ 21-ին Թէքէեան բանախօսութիւն մը կու տայ Օտեանի մասին:

Համաձայն սղագիրին, ան կը գնահատէ բարձր եւ կեղծ վերնախաւին հասցէագրուած Օտեանի քննադատութիւնները.

*Իր երգիծանքին ենթարկուած են ամենէն աւելի բարձր դասակարգը, կեղծ ազգասէրները, կեղծ յեղափոխականները, որոնցմէ ապրող տիպարներ չինած է:*
*Ինչ որ կը յատկանշէ Օտեան՝ իր «գոհերուն» վրայ կը նայի բարձրօրէն, փիլիսոփայական նայուածքով մը եւ ներողամիտ քմծիծաղով մը: Իր երգիծանքը ազնուական բան մը ունի իր մէջ: Աս՛ր համար է որ Օտեանի գրիչը սիրուած է ամենքէն ու թշնամիներ յարուցած չէ իր դէմ*[220]:

Յետոյ կու գայ Թէքէեանի յուշագրութիւնը Օտեանի մասին՝ մանրամասն նկարագրութիւններով եւ ապրուած յիշատակներով: Այդ իրական ապրումները կը ներկայացնեն Թէքէեանի ենթակայական կապը Օտեանի հետ[221]:
Յուշերը կը վերջանան Թէքէեան-Արփիարեան-Օտեան երրորդութեան վերհանումով՝ երեւակայական բնաբանի մը մէջ.

*Թէեւ ջերմ սիրահար* [իմա՝ Երուանդ Օտեան, Հ.Ա.] *ընթերցող եւ ուսումնասիրող Ս. Գիրքի, ան բացարձակապէս անհաւատ էր: Ի՞նչ լաւ պիտի ըլլար, սակայն, որ հոն գտնէինք մենք իրար եւ Արփիարն ալ միասին՝ խնդալով պատմէինք այս աշխարհի մէջ մեր տեսած խնդալիք բաները: Յաւիտենականութիւնը շատ պիտի չըլլար ատոր համար...*[222]:

### 3. ՇԱՀԱՆ ՇԱՀՆՈՒՐ

Ի տարբերութիւն Արփիարեանէն եւ Օտեանէն, 1940-1941-ին *Արեւ*ի էջերուն մէջ Շահնուրի նկատմամբ ցուցաբերած խոր համոզմունքը կու գայ տագնապային մթնոլորտի մէջ՝ տառապանքի գաղափարին շեշտադրութեամբ:
Թէքէեան համոզուած է՝ որ Շահան Շահնուր կը հանդիսանայ 1920-ականներուն երեւան եկած երիտասարդ գրողներուն ամենատաղանդաւորը՝ լիակատար գրագէտ մը, *տառապող հայ* գրագէտ մը.

*Անցեալ պատերազմէն վերջ, դէպի* 1924*ի ատենները արտասահմանի մէջ երեւան եկած երիտասարդ-գրողներու ամենէն տաղանդաւորն է: Զգայնութիւն եւ մտածում ունեցող, իր ժամանակը – պատերազմի եւ պատերազմէ վերջի –, իր միջավայրը – Պոլսոյ եւ Բարիզի – ճանչցող գրագէտ մը, որ օտարութեամբ հարստացած եւ նրբացած՝ դատելու եւ տառապելու աւելի կարող հայ գրագէտ մը դարձած է: Ինչպէս ամէն գրագէտի, իր մէջ ալ կարեւորը մտածումն եւ զգացումն են անշուշտ, բայց, ինչպէս բոլոր լիակատար գրագէտները, այնպէս ալ այս երիտասարդ հայ գրողը ունի նաեւ ոճի առաւելութիւնը, ըսել կ'ուզեմ՝ ունի իր ոճը իր մտածման եւ զգացման հարազատ թարգմանն է: Թափանցիկ, թեւաւոր եւ պսպղուն ոճ մը, ինչպէս անգամ մը գրած եմ կարծեմ ու կը կրկնեմ՝ որովհետեւ ճիշդ այս երեք բառերով կրնամ զայն որակել եւ ոչ ուրիշ կերպով*[223]:

Շահնուրի մօտ միախառնուած է 1920-ականներու ազգային-հաւաքական տառապանքը իր անձնական խառնուածքային տառապանքին հետ.

*Շահնուր առաջին գործ մը տուաւ երբ հազիւ 25 տարեկան էր, իր Նահանջը առանց երգի՛ն, վէ՛պ մը որ 1922ի վերջերը Պոլսէն Բարիզ ապաստանած հայ տղոց շլացումն ու չփոթութիւնը, յուզումը եւ յուսախաբութիւնը կը պատմէր՝ առնթեր ազգային յուսախաբութեան տառապանքին: Հաւաքական կեանքի պատկեր եւ անձնական խառնուածքի հակազդեցութիւն՝ ահա՛ Նահանջը: Եւ պատմելու, յետոյ կառուցանելու ձիրքեր, զոր ա՛յնքան քիչ ցոյց տուած են արեւմտահայ գրագէտները ու այդ պատճառաւ ալ, հաւանօրէն, ա՛յնքան քիչ վէպ գրած են, մեծ մասամբ գոհացած են նորավէպով ու քրոնիկով*[224]:

Տառապանքը նաեւ Շահնուրի զգացումին դառնութիւնն ու սրութիւնն է, որ հեռու ամէն տեսակ վերացականութենէ՝ ուղղուած է դէպի անձեր ու գործողութիւններ, եւ մանաւանդ՝ դէպի իր սեփական անձը.

*Նահանջը՝ գրողներու եւ գրասէրներու ուշադրութիւնը չգրաւեց միայն այլ եւ համակրութիւնն ու հիացումը շատերուն, ատելութիւնը, չըսեմ նաեւ նախանձը՝ ոմանց: Ասիկա աւելի չեշտուեցաւ՝ երբ իր հեղինակը շարունակեց վիպակներ ու մանաւանդ «անդրադարձումներ» հրատարակել աստին-անդին, որոնց մէջ կը շեշտէր իր ալ մտածումին եւ զգացումին թէ՛ դառնութիւնը եւ թէ սրութիւնը, որոնց մէջ՝ այդ դառնութիւնն ու այդ սրութիւնը կ'ուղղուէին առարկաներո՛ւ (անձ կամ գործ), – ըստ որում անորոշութիւնը դուրս էր նոյնքան իր ոճէն ու միտքէն որքան իր խառնուածքէն, կ'ուզեմ ըսել՝ թէ իր դժգոհութիւնը օդին մէջ կախուած չէր մնար ինչպէս ուրիշ շատ դժգոհութիւններ մեր մէջ, այլ բանի մը կը փարէր եւ գայն կը ծակէր կամ կը թօթուէր...: Ասկէ՝ իր ալ յարուցած դժգոհութիւնը իրեն դէմ, որ լաւագոյնն է գրողի մը յարուցած բոլոր դժգոհութիւններուն...*[225]:

Շահնուրի տառապանքը նաեւ արտայայտուած է իր ներկայ անձնական կեանքին մէջ: Ան հիւանդ է այսօր, պատերազմին պատճառով դուրս նետուած է հիւանդանոցէն, չունի մնայուն ապաստան, զերծ է նիւթական աղբիւրէ եւ մանաւանդ բարոյապէս լքուած է Փարիզի իր գրչընկերներէն եւ ժողովուրդէն: Գրական տառապանքը կը համալրուի ապրուստի տառապանքով.

*Շահան Շահնուր, հետեւանքովը իր չարաչար աշխատանքի կեանքին – լուսանկարի ըրթուշէօռ էր՝ վերջին տարիներս իր սենեակին մէջ, հատի վրայ, օրական 9-10 ժամ աշխատող սեւ լաթին տակ՝ կարենալու համար իր ապրուստը շահիլ – հիւանդ է տարիներէ ի վեր, եւ ծանր հիւանդ, որ քիչ մը կ'ապաքինի՝ վերստին անկողին գամուելու կամ հիւանդանոց իյնալու համար:*

*Այս անգամ, պատերազմը ծագած պահուն Բարիզի մէկ հիւանդանոցն է ան, ուրկէ սակայն դուրս կը թողուի՝ տեղ բանալու համար գալիք վիրաւորեալներու: Քանի մը շաբաթ*

*կը քաշքշուի խուճապահար մայրաքաղաքին մէջ – այդ օրերուն իր գրած մէկ Թղթակցութիւնը հրատարակուեցաւ Արեւի մէջ – յետոյ, անկարող ոտքի վրայ մնալու եւ ապրելու, ինքզինք կը նետէ գաւառական գիւղ մը, ուր միակ հայ ընտանիք մը կայ եւ այդ ընտանիքը եղբայրաբար կը հիւրընկալէ զինքը...:*

*Հոն, կը տառապի ան՝ նոյնքան նիւթական որքան բարոյական լքումէ: Իր բարեկամները, Բարիզէն եւ հոսկէ, շատ քիչ բան կրցած են ընել ու կրնան ընել մինչեւ հիմա, իր բարելաւումին համար, – որովհետեւ՝ կրնայ իր ֆիզիքական վիճակն ալ բարոյական վիճակին նման բարելաւուիլ (ինչպէս եղած է քանի մը անգամ) եթէ գտնէ պէտք եղած հոգածութիւնը իր ծանօթ-անծանօթ բարեկամներէն, իր ժողովուրդէ՛ն՝ որուն հաւատացած է թէ աւելի ծառայած է քան անոր դիրքի-տէր զաւակները, եւ որուն ցաւովը աւելի, շատ աւելի տառապած է ամէն պարագայի՝ քան այդ դիրքերը – ազգային ալ երբեմն – գրաւողները[226]:*

1939 Դեկտեմբերէն սկսեալ Թէքէեան կը յաջողի երկու անգամ 500 ֆրանքի չէքեր ղրկել Շահնուրին[227]: 1940 Մարտի դրութեամբ իր մօտ կը գտնուի 500 ֆրանքի չէք մը եւս[228]:

Գումարները շատ փոքր են: Թէքէեան կը դիմէ գործնապաշտ քայլերու եւ եգիպտահայութեան կոչ կը յղէ անցնիլ աշխոյժ դրամահաւաքի.

*Հոս անհրաժեշտ է որ բացէ ի բաց ըսեմ այլ եւս՝ թէ անո՛նք որ կը հասկնան Շահնուրի մասնաւոր պարագան եւ զայն հասկցած ըլլալնին կրնան կերպով մը հասկցնել նաեւ, անոնք պէտք է օգտագործեն Արեւի միջնորդութիւնը՝ տարաբախտ գրագէտին օգնութեան փութալու համար:*

*Բարեկամի մը աջակցութիւնը զիս ի վիճակի կը դնէ այսօր իսկ 500 ֆրանքի նոր չէք մը ղրկելու իրեն: Բայց ասիկա ոչինչ է եւ պէտք է շուտով կարենանք աւելի կարեւոր գումար մը հասցնել իրեն, շնորհիւ Արեւի ընթերցողներուն գիտակցութեանը: Գումա՛ր մը, որով ամբողջ եգիպտահայութիւնը հոգացած ըլլայ, եթէ կարելի է, միակ հայ գրագէտի մը դարմանումը ապաքինարանի մը մէջ, փոխանակ օտարին քմահաճոյքէն սպասելու խոստումին ձգձգուող գործադրութիւնը:*

*Այս է՝ որ ոչ միայն ֆիզիքապէս այլ եւ բարոյապէս պիտի օգնէր Շահնուրի դարմանումին, անոր յայտնելով թէ իր ազգը կը ճանչնայ զինք եւ կ’ուզէ որ առողջանայ ու արտադրէ նորէն[229]:*

Կոչը դրական արձագանգ կը գտնէ. 1940 Մայիս 1-ին արդէն հաւաքուած է 13497 եգիպտական դահեկան[230], որուն վրայ աւելնալով Շահնուրի գիրքերէն եկած գումարը, Դեկտեմբերին ընդհանուրը կը հասնի 13625 եգիպտական դահեկանի[231]:

Մինչ այդ, Հրանդ Տատրեան[232], Շահնազար Որբունի[233] եւ Առօ Սեւիողենց[234] ընթացքի մէջ եղող գործողութիւնը քաջալերող յօդուածներով ելոյթ կ’ունենան *Արեւ*ի մէջ:

Գումարը պարբերաբար կը ղրկուի Շահնուրին։ Ապրիլին Թէքէեան կը ստանայ Շահնուրի հետեւեալ երկտողը.

*Բոլոր սրտովս շնորհակալութիւն։ Շատ յուզուած եմ։ Մահամերձ եմ բայց լքուած չեմ։ Շահնուր*[235]։

Երկտողին կցուած է Շահնուրը անձնուիրաբար խնամող տիկ. Ա. Աբրահամեանի գրութիւնը՝ ուր կը տեղեկացնէ գումարի մէկ մասին ստացումը։

Քանի մը օր ետք տիկինը կը ղրկէ ուրիշ նամակ մը եւս, ուր կը տեղեկացնէ մնացած գումարին ստացումը եւ կը հաղորդէ Շահնուրի առողջական վիճակին վատթարացումը եւ հիւանդանոց փոխադրութիւնը։ Նամակին վերջաւորութեան Շահնուր իր ձեռագիրով աւեցուցած է.

*Դեռ շատ գէշ եմ եւ գրելու անկարող։ Ջերմապէս կը բարեւեմ սիրով եւ կարօտով. մէկսի։ Շահնուր*[236]։

Ասոր հիման վրայ Թէքէեան կը նորոգէ դրամահաւաքի կոչը.

*Կրնա՞մ խնդրել թէ յետամնացներ եթէ կան՝ հաճին փութացնել իրենց մասնակցութիւնը, եւ թէ չփակուած ցանկեր ի ձեռին ունեցողները հաճին զանոնք փակել եւ վերջնական արդիւնքին հետ ղրկել ինծի, Արեւի հասցէովս։ Շնորհակալութի՛ւն*[237]։

Շարունակելով գրականապէս արտայայտել իր համակրութիւնը, 1940 Ապրիլին Թէքէեան կը թարգմանէ Շահնուրի ֆրանսերէն յօդուածը՝ «Թու լը Թրաֆալկար», լոյս տեսած *Ռըվիւ ֆրանսէզ*ի 1939 Սեպտեմբերի թիւին մէջ[238]։

*Պայքար*ը եւ Աթէնքի *Վերածնունդ*ը կը գնահատեն դրամահաւաքի Թէքէեանի նախաձեռնութիւնը[239]։

Շահնուր շնորհակալական երկար նամակ մը կը յղէ Թէքէեանին եւ *Արեւ*ին, ուր, խօսքը ուղղելով Թէքէեանին, կը գրէ.

*Գիտէի թէ մեզ իրար միացնող կապերը անքակտելի են, բայց չէի գիտեր թէ այս աստիճան կը սիրես զիս*[240]։

Պատերազմի պատճառով Թէքէեան ուշացումով կը ստանայ Շահնուրի եւ տիկ. Աբրահամեանի անջատաբար ղրկուած նամակները։ Կը գրեն ռազմական կացութեան մասին եւ կը տեղեկացնեն գումարներու ստացումը, առանց իրազեկ դարձնելու գրողի առողջական վիճակին մասին[241]։

1941 Մարտին Թէքէեան կը ստանայ Շահնուրէն մէկ եւ տիկ. Աբրահամեանէն

երկու նամակներ, որոնք կը խօսին առողջական վիճակին մասին, համառօտ կը նկարագրեն անոր կացութիւնը բուժարանին մէջ եւ տեղեկութիւններ կու տան չէքի գանձումին հետ կապուած դժուարութեան մասին[242]:

Ապրիլ 12-ին Թէքէեան կը հրատարակէ Շահնուրին նամակը՝ հասցէագրուած տիկ. Աբրահամեանին: Վերջինս զայն ուղարկած է Թէքէեանին: Նամակին մէջ դարձեալ կը խօսի դրամական գանձումներու դժուարութեան մասին եւ կը գանգատի իր առողջական վիճակէն[243]:

1941 Օգոստոսին Թէքէեան մանրամասն կը տեղեկացնէ նախապէս հաւաքուած գումարներու առաքումին հետ կապուած ուշացումները Պատերազմին պատճառով եւ այդ առումով նախաձեռնուած միջոցառումները[244]:

Թէքէեանի գործնական վերաբերմունքը Շահնուրին նկատմամբ խարսխուած է անոր գրական կարողութիւններուն վրայ ունեցած խոր համոզուածութեան վրայ: Հազուագիւտ է, երբ մտաւորական մը գործնական ջանքեր թափէ ուրիշ մտաւորականի մը նիւթական ապահովութեան համար: Թէքէեան դարձաւ այդ հազուագիւտներէն մէկը: Դիմադրեց մտաւորական անջատողականութիւնը եւ մտաւորականութեան տուաւ համակեցական տեսադաշտ մը: Վեր հանեց մտաւորական ենթակայականութիւնը՝ ի դէմս մտաւորական ինքնակեցութեան եւ ինքնամէտութեան: Ան նոյնացաւ Շահնուրի հետ:

## ՀՆԱՐԱՒՈՐՈՒԹԻ՞ՒՆ ԹԷ ԴԻՄԱԴՐՈՒԹԻՒՆ

Թէքէեանի ժամանակ արդեօք ընդունուա՞ծ էր նման հարցերու արծարծումը սփիւռքահայ հիմնահոսանքային մամուլին մէջ, թէ Թէքէեանի դիրքորոշումը արդիւնքն էր անհատական դիմադրութեան:

Նախ, նման խորքային ու համակողմանի յօդուածներ եւ թիրախաւոր քննադատութիւններ շատ չէին գտնուէր իր շրջանի մամուլին մէջ: Բայց, միեւնոյնն է, *Արեւ*ի նման հիմնահոսանքային մամուլը տակաւին կը պարունակէր մտաւոր բաց տարածութիւններ՝ որոնց միջոցով Թէքէեան կարելի դարձուցած էր իր հրապարակագրութիւնները:

Խնդիրը աւելի յստակ ըլլալու համար նշեմ, որ թէեւ այս տեսակ, նոյնիսկ աւելի սրածայր ու միշտ խորքային գաղափարականացումներ եւ քննադատութիւններ այսօր կարելի է գտնել հայկական հրապարակագրութեան մէջ, բայց անոնց մեծամասնութիւնը արտայայտուած է ոչ-հիմնահոսանքային, ոչ-աւանդական, այլ այլընտրանքային տարածութիւններու միջոցով:

Ուրեմն, Թէքէեանի յօդուածները հնարաւոր տարածութիւններու առաւելագոյն օգտագործումն էին, տարածութիւններ՝ որոնք պիտի մնային աննկատ առանց անոր խիզախ անհատականութեան: Այս առումով, Թէքէեանի գրութիւնը

դրսեւորեց նշանակալի չափով անյարմարուողականութիւն ընդունուած չափանիշներուն նկատմամբ։ Թէքէեան անձամբ արտայայտած է իր անյարմարուողականութիւնը (քոնֆորմիսմ), երբ խօսած է արուեստի քննախօսականութեան հնարաւորութեան մասին.

*Հայ արուեստի ցուցահանդէսը կը ներշնչէ կարգ մը խորհրդածութիւններ, տարբեր անոնցմէ որ եղան, կ՚ըլլան եւ կ՚սպասուի որ ըլլան միայն: Ուրիշ խնդիր՝ թէ պէ՞տք է այդ խորհրդածութիւնները յայտնուին, կրնա՞ն անոնք ոեւէ օգտակարութիւն ունենալ, ոեւէ միտք բանալ: Մենք ծայրայեղօրէն քօնֆօրմիսթ մարդիկ եղած ենք հիմա ու ոչինչ այնչափ կը նեղացնէ, նոյն իսկ կը զայրացնէ մեզ՝ որքան մեր ընդունած մէկ դիւրին ընդհանուր կարծիքը խանգարել ձգտող նոր կարծիք մը: Այս պատճառով՝ լաւագոյն էր թերեւս, որ մեզի պահէինք հետագայ պզտիկ մասն ալ մեր խորհրդածութիւններուն*[245]:

Թէեւ խօսքը կը վերաբերի արուեստին, բայց Թէքէեանի անյարմարուողականութիւնը, ինչպէս տեսանք, կը տարածուի գրեթէ բոլոր գրութիւններուն մէջ։

Թէքէեանի յօդուածագրութիւնը աւելի դիմադրութիւն մըն էր քան հնարաւորութիւն։

ԾԱՆՕԹԱԳՐՈՒԹԻՒՆՆԵՐ

1. Վ. Թ., «Անապատի քարոզիչները», *Արեւ*, 25 Մայիս 1929, ԺԶ. տարի, թիւ 3132, էջ 1:

2. Երուանդ Օտեան, «Տասներկու տարի Պոլսէն դուրս 1896-1908», *Ժամանակ*, օրաթերթ, Կ. Պոլիս, 2/15 Դեկտեմբեր 1912, Ե. տարի, թիւ 1295, էջ 1:

Թէքէեան-Օտեանի հանդիպումը եւ փողկապի հարցը կը հաստատէ նաեւ Թէքէեան.

*Իրեն* [իմա՝ Երուանդ Օտեանին, Հ.Ա.] *ծանօթացայ քանի մը տարի վերջը՝* 1901*ին Բարիզի մէջ, ուր գացեր էի Մարսէյլէն, Հոգեբուժն տպագրութեան համար: Հոն էին Պարթեւեան, Հանըմեան եւ ուրիշներ կեդրոնականի նախկին ընկերներէն, ու Օտեանը՝ անոնց մէջտեղ:* [...]

*Ծանօթացած բայց բարեկամացած չէինք: Վերջէն ինծի կ'ըսէր Օտեան՝ թէ իմ յարաբերական ճոխութիւնս, ամէն օր փոխած փողկապներս մանաւանդ՝ զիս իր աչքին ըրած էին Ֆիզ ա բաբա մը (Հայրս մեռած էր, կործանած՝ երբ ես տասը տարու էի): Մեր բարեկամութիւնը սկսաւ Աղեքսանդրիա,* 1905*ին, ուր դարձաւ Հնդկաստանէն, եղբօրը քով ինը ամիս մնալէ ետք:*

(Վ. Թ., «Գրական յուշեր. Երուանդ Օտեանի հետ», *Արեւ*, 13 Օգոստոս 1938, ԻԲ. տարի, թիւ 5966, էջ 2:)

3. 1916 Սեպտեմբեր 7-ին Թէքէեան կ'ենթարկուի յարձակումի եւ չորս ամիս կը մատնուի անգործութեան: Հայկական Լէգէոնի վերաբերեալ գործերով 1917-ին միջոց մը կ'երթայ Կիպրոս եւ ապա կը վերադառնայ Գահիրէ: 1917 Սեպտեմբերին Ազգային Միութեան կողմէ Փարիզ կը ղրկուի՝ իբր եգիպտահայութեան պատուիրակ: 1918 Դեկտեմբերին կը վերստանձնէ *Արեւ*ի խմբագրապետութիւնը: Կրկին կը մեկնի Փարիզ՝ Ազգային Միութեան կողմէ: Այս բացակայութիւններուն, *Արեւ*ի խմբագրապետութիւնը կը ստանձնէր Միքայէլ Ս. Կիւրճեան:

4. «Մեկնում», *Արեւ*, 6 Յուլիս 1929, ԺԶ. տարի, թիւ 3168, էջ 2:

*Արեւ*ի առաջին 17 տարիներու խմբագրական կազմին մանրամասնութիւնները տեղեկագրած է Օննիկ Մահտեսեան՝ «*Արեւ*ի ծնունդը եւ 17 տարուան կեանքը», *Արեւ*, 26 Մարտ 1932, ԺԷ. տարի, թիւ 4008, էջ 2-3:

5. Յունիս 1932-ին Թէքէեան կը գտնուի Փարիզ («Ընկ. Վահան Թէքէեան հիւանդանոց փոխադրուած», *Արեւ*, 16 Յունիս 1932, ԺԷ. տարի, թիւ 4076, էջ 1: «Վ. Թէքէեանի հիւանդութիւնը», *Արեւ*, 21 Յունիս 1932, ԺԷ. տարի, թիւ 4080, էջ 1: «Վ. Թէքէեանի հիւանդութիւնը», *Արեւ*, 28 Յունիս 1932, ԺԷ. տարի, թիւ 4086, էջ 1: «Ընկեր Թէքէեանի տկարութիւնը», *Արեւ*, 12 Յուլիս 1932, ԺԷ. տարի, թիւ 4098, էջ 1): 1934 Նոյեմբեր 15-ին Գահիրէ կու գայ «Կիպրոսի Մելգոնեան Հաստատութեան Ուսուցչանոցի տնօրէն Պ. Վահան Թէքէեան» («Տեղական. ժամանում», *Արեւ*, 16 Նոյեմբեր 1934, ԺԹ. տարի, թիւ 4822, էջ 1) եւ Նոյեմբեր 28-ին կը մեկնի Կիպրոս՝ իր պաշտօնատեղին («Տեղական. մեկնում», *Արեւ*, 29 Նոյեմբեր 1934, ԺԹ. տարի, թիւ 4833, էջ 1:)

6. *Երէկ Բոր Սայիտէն քաղաքս ժամանեց Պ. Վահան Թէքէեան, որ կուգայ առժամապէս վերստանձնել Արեւի խմբագրապետութիւնը:*

*Պ. Թէքէեան, որ տարիէ մը ի վեր Կիպրոս կը գտնուէր, առողջական պատճառներով հրաժարած է Մելգոնեան Կրթական Հաստատութեան մէջ իր վարած Վարժարապետանոցի տեսչութեան եւ ուսուցչութեան պաշտօններէն:*

(«Ժամանում», *Արեւ*, 2 Սեպտեմբեր 1935, Ի. տարի, թիւ 5064, էջ 1:)

Պ. Վահան Թէքէեան «վերստանձնած ըլլալով *Արեւ*ի խմբագրապետութիւնը՝ հրաժարած էր վարժապետանոցի տեսչութեան պաշտօնէն՝ ի մեծ ցաւ ամբողջ աշակերտու-

թեան» («Կիպրահայ նամականի. Պ. Վահան Թէքէեանի մեկնումը», *Արեւ*, 10 Սեպտեմբեր 1935, Ի. տարի, թիւ 5071, էջ 2)։

7. Վ. Թ., «Ազգ. Գալուստեան Վարժարանը», *Արեւ*, 9 Սեպտեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6601, էջ 1։

8. Վահան Թէքէեան, «Հին եւ նոր նօթեր», *Արեւ*, 26 Յունիս 1937, ԻԱ. տարի, թիւ 5620, էջ 2։

9. Անդ։

10. Վահան Թէքէեան, «Հին եւ նոր նօթեր», *Արեւ*, 19 Յունիս 1937, ԻԱ. տարի, թիւ 5614, էջ 2։

11. Վ. Թ., «Պաշտօ՞ն թէ առաքելութիւն», *Արեւ*, 10 Յուլիս 1943, ԻԸ. տարի, թիւ 7467, էջ 1։

12. Վ. Թ., «Հրապարակագիրը», *Արեւ*, 3 Ապրիլ 1943, ԻԷ. տարի, թիւ 7384, էջ 1։

13. Անդ։

14. Վ. Թ., «Ճիշդ լուր», *Արեւ*, 15 Յուլիս 1940, ԻԵ. տարի, թիւ 6553, էջ 1։

15. «Առաջին դասախօսութիւնը. Պ. Վահան Թէքէեանի կոչը եգիպտահայութեան», *Արեւ*, 27 Ապրիլ 1926, ԺԲ. տարի, թիւ 2184, էջ 2։

16. Անդ։

17. Անդ։

18. Michael Mack: *How Literature Changes the Way We Think*, London and New York: Continuum, 2012, pp. 1, 11.

19. Վ. Թ., «Գրական. գրականութիւն», *Արեւ*, 13 Ապրիլ 1929, ԺԵ. տարի, թիւ 3097, էջ 1։

20. Վ. Թ., «Գրական. անապատի քարոզիչները», *Արեւ*, 25 Մայիս 1929, ԺԶ. տարի, թիւ 3132

21. Վ. Թ., «Հայ գիրը հայ երկրէն դուրս», *Արեւ*, 5 Յունիս 1943, ԻԸ. տարի, թիւ 7437, էջ 1։

22. «Պէրպէրեան Վարժարան», *Արեւ*, 29 Դեկտեմբեր 1926, ԺԳ. տարի, թիւ 2393, էջ 3։

23. Ներկայ մը, «Պէրպէրեան Վարժարան», *Արեւ*, 8 Յունուար 1927, ԺԳ. տարի, թիւ 2400, էջ 2։

24. Անդ։

25. Անդ։

26. Վ. Թ., «Ի պատիւ բանաստեղծութեան», *Արեւ*, 23 Մարտ 1938, ԻԲ. տարի, թիւ 5845, էջ 2։

27. Անդ։

28. Անդ։

29. Վ. Թ., «Երիցուկի թերթեր. Բ.- *Երիցուկի թերթեր*, *Կրակը*», *Արեւ*, 20 Յունիս 1938, ԻԲ. տարի, թիւ 5919, էջ 2։

30. Անդ։

31. Անդ։

32. Անդ։

33. Անդ։

34. Անդ։

35. Անդ։

36. Վ. Թ., «Հայ գրականութիւնը», *Արեւ*, 25 Սեպտեմբեր 1943, ԻԸ. տարի, թիւ 7532, էջ 1։

37. Վ. Թ., «Սրբոց Թարգմանչաց», *Արեւ*, 12 Հոկտեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6630, էջ 1:
38. Վ. Թ., «Առանց կեանքի», *Արեւ*, 15 Օգոստոս 1942, ԻԷ. տարի, թիւ 7192, էջ 1:
39. Վ. Թ., «Գրական. քաղաքական գրականութիւն», *Արեւ*, 27 Ապրիլ 1929, ԺԵ. տարի, թիւ 3109, էջ 1:
40. Վ. Թ., «Գրական. գրականութիւն», *Արեւ*, 13 Ապրիլ 1929, ԺԵ. տարի, թիւ 3097, էջ 1:
41. Վ. Թ., «Խմբագրական. հայ թատրոնը», *Արեւ*, 17 Յունուար 1931, ԺԶ. տարի, թիւ 3640, էջ 1:
42. Վ. Թ., «Գրական. անապատի քարոզիչները», *Արեւ*, 25 Մայիս 1929, ԺԶ. տարի, թիւ 3132:
43. «Մեր առաջին խօսքը», *Արեւ*, Ա. տարի, թիւ 1, 11 Մայիս 1915, էջ 1:
44. Վահան Թէքէեան, «Ընթերցողի նօթեր», *Արեւ*, 3 Ապրիլ 1937, ԻԱ. տարի, թիւ 5549, էջ 2:
45. Հրահատ, «Կուսակցութեան Օրը տօնուեցաւ խանդավառ մթնոլորտի մէջ», *Արեւ*, 21 Դեկտեմբեր 1938, ԻԲ. տարի, թիւ 6075, էջ 2:
46. Անդ:
47. Վ. Թ., «Մեր մամուլին գրական դերը», *Արեւ*, 30 Սեպտեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6619, էջ 1:
48. Վ. Թ., «Կուսակցութիւնները», *Արեւ*, 9 Օգոստոս 1941, ԻԶ. տարի, թիւ 6881, էջ 1:
49. Վ. Թ., «Հայուն «ես»ը», *Արեւ*, 26 Ապրիլ 1941, ԻԵ. տարի, թիւ 6791, էջ 1:
50. Վ. Թ., «Իշխանութեան զեղծում», *Արեւ*, 30 Օգոստոս 1941, ԻԶ. տարի, թիւ 6897, էջ 1:
51. Վ. Թ., «Գրական. արեւմտահայ աշխարհաբարը», *Արեւ*, 6 Յուլիս 1929, ԺԶ. տարի, թիւ 3168, էջ 1:
52. Վ. Թ., «Նոր հրատարակութիւններ. Ա.- Հայրենի խնդիրը», *Արեւ*, 16 Յունիս 1938, ԻԲ. տարի, թիւ 5916, էջ 2:
53. Վ. Թ., «Լեզուի սէր», *Արեւ*, 10 Օգոստոս 1940, ԻԵ. տարի, թիւ 6576, էջ 1:
54. Վ. Թ., «Լեզուին պահպանութիւնը», *Արեւ*, 17 Օգոստոս 1940, ԻԵ. տարի, թիւ 6582, էջ 1:
55. Վ. Թ., «Ի՞նչ կայ լեզուին տակը», *Արեւ*, 24 Օգոստոս 1940, ԻԵ. տարի, թիւ 6588, էջ 1:
56. Վ. Թ., «Լեզուն եւ ազգը», *Արեւ*, 10 Յունուար 1942, ԻԶ. տարի, թիւ 7007, էջ 1:
57. Վ. Թ., ««Մայրէնի լեզուս»», *Արեւ*, 2 Յուլիս 1931, ԺԷ. տարի, թիւ 3780, էջ 2: Դիտաւորեալ «մայրէնի» գրուած է «է»-ով:
58. Վ. Թ., «Յեղափոխական ոգին», *Արեւ*, 20 Մարտ 1943, ԻԷ. տարի, թիւ 7372, էջ 1:
59. Բանախօսութիւնը տեղի ունեցած է 1927 Մայիս 5-ին, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան Ժողովրդային Սրահին մէջ, «Պ. Վահան Թէքէեանի բանախօսութիւնը», *Արեւ*, 9 Մայիս 1927, ԺԳ. տարի, թիւ 2501, էջ 1-2:
60. Անդ:
61. Անդ:
62. Անդ:
63. Անդ:
64. Անդ:
65. Անդ:
66. Վահան Թէքէեան, ««Մարտիրոսութեան վարժութիւնը»», *Արեւ*, 18 Մարտ 1932, ԺԷ.

տարի, թիւ 4001, էջ 2:

67. Անդ:

68. Անդ:

69. Վ. Թ., «Յեղափոխական ոգին», *Արեւ*, 20 Մարտ 1943, ԻԷ. տարի, թիւ 7372, էջ 1:

70. Marc Nichanian, 'Catastrophoinc Mourning,' in *Loss: The Politics of Mourning*, edited by David L. Eng and David Kazanjian, Berkeley, Los Angeles, London: University of California Press, 2003, pp. 99-120.

71. Վ. Թ., «Եղերական տօնը», *Արեւ*, 25 Ապրիլ 1942, ԻԶ. տարի, թիւ 7096, էջ 1:

72. Վ. Թ., «Երիցուկի թերթեր. Բ.- *Երիցուկի թերթեր*, *Կրակը*», *Արեւ*, 20 Յունիս 1938, ԻԲ. տարի, թիւ 5919, էջ 2:

73. Վ. Թ., «Երէկը, այսօրը եւ վաղը», *Արեւ*, 30 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6463, էջ 1:

74. Անդ:

75. Վ. Թ., «Անօգուտ տօնը», *Արեւ*, 23 Ապրիլ 1927, ԺԳ. տարի, թիւ 2489, էջ 1:

76. Վ. Թ., «Քսանհինգամեակ մը. 1915 Ապրիլ 24 – 1940 Ապրիլ 24», *Արեւ*, 24 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6484, էջ 1:

77. Վ. Թ., «Ապրիլ 24», *Արեւ*, 24 Ապրիլ 1941, ԻԵ. տարի, թիւ 6789, էջ 1:

78. Վ. Թ., «Խորհ. Հայաստանի 24րդ տարեդարձը», *Արեւ*, 29 Նոյեմբեր 1944, ԻԹ. տարի, թիւ 7889, էջ 1:

79. Վահան Թէքէեան, «Անոնք եւ մենք», *Արեւ*, 9 Դեկտեմբեր 1933, ԺԸ. տարի, թիւ 4534, էջ 2:

80. Վահան Թէքէեան, «Նօթեր», *Արեւ*, 10 Յունուար 1935, ԺԹ. տարի, թիւ 4867, էջ 2:

81. Անդ:

82. Վ. Թ., «Խմբագրական. յարձակումը», *Արեւ*, 2 Մայիս 1931, ԺԶ. տարի, թիւ 3728, էջ 1:

83. Այս հարցին մասին տե՛ս՝ Հ. Ա., *Փարիզի Քոմիւնը, Կայսրութիւնը եւ Հայոց Յեղափոխութիւնը*, *Զահակիր* շաբաթաթերթ, Յաւելուած Դ., էջ 101-106:

84. Վահան Թէքէեան, «Խորհրդային գրականութեան մեծ վիշտը, Ա.», *Արեւ*, 29 Մայիս 1937, ԻԱ. տարի, թիւ 5596, էջ 2:

85. Անդ:

86. Անդ:

87. Վահան Թէքէեան, «Գրական ազատութիւնը եւ քաղաքական վիճակը Խ. Հայաստանի մէջ», 17 Յուլիս 1937, ԻԱ. տարի, թիւ 5638, էջ 2:

88. Վ. Թ., «Խնդրագիր անոնց համար», *Արեւ*, 6 Դեկտեմբեր 1941, ԻԶ. տարի, թիւ 6980, էջ 1:

89. Վ. Թ., «Հոգին եւ մարմինը», *Արեւ*, 6 Փետրուար 1943, ԻԷ. տարի, թիւ 7336, էջ 1:

90. Վ. Թ., «Գրական. գեղարուեստը եւ գրականութիւնը գաղութներու մէջ», *Արեւ*, 9 Մարտ 1929, ԺԵ. տարի, թիւ 3069, էջ 1:

91. Վ. Թ., «Աղեքսանդրիան կարօտ օգնութեան», *Արեւ*, 13 Հոկտեմբեր 1941, ԻԶ. տարի, թիւ 6935, էջ 1:

92. Վ. Թ., «Պարտք եւ իրաւունք», *Արեւ*, 27 Օգոստոս 1940, ԻԵ. տարի, թիւ 6590, էջ 1:

93. Անդ:

94. Վ. Թ., «Հանգանակչութիւն», *Արեւ*, 20 Փետրուար 1943, ԻԷ. տարի, թիւ 7348, էջ 1:

95. Արշակ Ալպօյաճեան, «Կայէնի բաժինը», *Արեւ*, 15 Մայիս 1924, Ժ. տարի, թիւ 134 (1593), էջ 1:
96. Վ. Թ., «Գրական. որբի պատմութիւններ», *Արեւ*, 16 Մարտ 1929, ԺԵ. տարի, թիւ 3075, էջ 1:
97. Վահան Թէքէեան, «Որբ եւ կարօտ ուսանողաց համար. ազդ», *Արեւ*, 22 Յուլիս 1925, ԺԱ. տարի, թիւ 1949, էջ 2:
98. Վահան Թէքէեան, «Կեսարիոյ անօթի ու մերկ որբերը», *Արեւ*, 15 Սեպտեմբեր 1925, ԺԱ. տարի, թիւ 1995, էջ 1:
99. Անդ:
100. «Կեսարիոյ որբերուն ի նպաստ», *Արեւ*, 10 Հոկտեմբեր 1925, ԺԱ. տարի, թիւ 2017, էջ 2:
101. Վահան Թէքէեան, «Կէս-կեսարացիի մը յուշերէն», *Արեւ*, 25 Փետրուար 1938, ԻԲ. տարի, թիւ 5823, էջ 2:
102. «Կեսարիոյ որբերուն ի նպաստ», *Արեւ*, 10 Հոկտեմբեր 1925, ԺԱ. տարի, թիւ 2017, էջ 2:
103. Վահան Թէքէեան, «Կեսարիոյ որբերը կշտացան եւ հագուեցան», *Արեւ*, 20 Հոկտեմբեր 1925, ԺԱ. տարի, թիւ 2025, էջ 2:
104. Անդ:
105. «Օգնութեան ձեռնարկ Կեսարիոյ որբերուն համար. կեսարացիներու հայրենակցականը հիմնուեցաւ», *Արեւ*, 28 Հոկտեմբեր 1925, ԺԱ. տարի, թիւ 2032, էջ 2:
106. «Կեսարիոյ որբերուն համար», *Արեւ*, 14 Նոյեմբեր 1925, ԺԱ. տարի, թիւ 2047, էջ 2:
107. «Կեսարիոյ որբերուն համար», *Արեւ*, 29 Դեկտեմբեր 1925, ԺԲ. տարի, թիւ 2085, էջ 2:
108. «Հանգանակութիւն Կեսարիոյ որբերուն համար. Բ. ցանկ», *Արեւ*, 30 Դեկտեմբեր 1925, ԺԲ. տարի, թիւ 2086, էջ 2:
109. «Հանգանակութիւն Կեսարիոյ որբերուն համար. Գ. ցանկ», *Արեւ*, 8 Յունուար 1926, ԺԲ. տարի, թիւ 2092, էջ 2:
110. «Հանգանակութիւն Կեսարիոյ որբերուն համար. Դ. ցանկ», *Արեւ*, 13 Յունուար 1926, ԺԲ. տարի, թիւ 2096, էջ 2:
111. «Հանգանակութիւն Կեսարիոյ որբերուն համար. Ե. ցանկ», *Արեւ*, 21 Յունուար 1926, ԺԲ. տարի, թիւ 2103, էջ 2:
112. «Հրաւէր», *Արեւ*, 10 Ապրիլ 1926, ԺԲ. տարի, թիւ 2170, էջ 2:
113. «Կեսարիոյ Հայրենակցականը վերջնականապէս կազմակերպուած», *Արեւ*, 6 Մայիս 1926, ԺԲ. տարի, թիւ 2191, էջ 2:
114. Վահան Թէքէեան, «Կէս-կեսարացիի մը յուշերէն», *Արեւ*, 25 Փետրուար 1938, ԻԲ. տարի, թիւ 5823, էջ 2:
115. Վ. Թ., «Գրական. անջատ եւ միացեալ նօթեր», *Արեւ*, 4 Մայիս 1929, ԺԵ. տարի, թիւ 3115, էջ 1:
116. Անդ:
117. Վ. Թ., «Խմբագրական. յարձակումը», *Արեւ*, 2 Մայիս 1931, ԺԶ. տարի, թիւ 3728, էջ 1:
118. Անդ:

119. *Հայրենաբաղձ հնչիւններ. սփիւռքի հայ երգահանների մեներգեր եւ խմբերգեր*, կազմեց եւ տպագրութեան պատրաստեց Ցիցիլիա Բրուտեանը, Երեւան, Հայպետհրատ Հրատարակչութիւն, 1962, էջ 5։

120. «Անցած ճանապարհը, հեռանկարներ», *Սովետական արուեստ*, ամսագիր, Երեւան, Յունուար 1971, թիւ 1, էջ 1։

121. Շ. Ափոյեան, «Կամերային գործիքային երաժշտութիւն. դաշնամուրային երաժըշտութիւն», *Սովետական Հայաստանի երաժշտութիւնը. յօդուածների ժողովածու*, Երեւան, Հայաստան Հրատարակչութիւն, 1973, էջ 419։

122. Վ. Թ., «Խմբագրական. յարձակումը», *Արեւ*, 2 Մայիս 1931, ԺԶ. տարի, թիւ 3728, էջ 1։

123. Անդ։

124. Անդ։

125. Վահան Թէքէեան, «Նախ մարդ, յետոյ հայ», *Արեւ*, 4 Ապրիլ 1932, ԺԷ. տարի, թիւ 4014, էջ 2։

126. Անդ։

127. Վ. Թ., «Ուսուցչութեան խնդիրը», *Արեւ*, 11 Յուլիս 1942, ԻԷ. տարի, թիւ 7162, էջ 1։

128. Վ. Թ., «Կրթական գործը խստութեամբ», *Արեւ*, 8 Մայիս 1943, ԻԷ. տարի, թիւ 7413, էջ 1։

129. Վ. Թ., «Հոգին եւ մարմինը», *Արեւ*, 6 Փետրուար 1943, ԻԷ. տարի, թիւ 7336, էջ 1։

130. Վահան Թէքէեան, «Մեր երիտասարդութիւնը, Բ.», *Արեւ*, 11 Յունիս 1915, Ա. տարի, թիւ 15, էջ 1։

131. Վ. Թ., «Մինաս Չերազ», *Արեւ*, 6 Ապրիլ 1929, ԺԵ. տարի, թիւ 3091, էջ 1։

132. Վ. Թ., «Ի՞նչ կայ լեզուին տակը», *Արեւ*, 24 Օգոստոս 1940, ԻԵ. տարի, թիւ 6588, էջ 1։

133. Վ. Թ., «Դպրոցները պիտի վերաբացուին», *Արեւ*, 31 Օգոստոս 1940, ԻԵ.տարի, թիւ 6594, էջ 1։

134. Անդ։

135. Վ. Թ., «Կրթական քաղաքականութիւն մը», *Արեւ*, 29 Նոյեմբեր 1941, ԻԶ. տարի, թիւ 6974, էջ 1։

136. Վ. Թ., «Սրտի խնդիր, մտքի խնդիր», *Արեւ*, 17 Յունիս 1940, ԻԵ. տարի, թիւ 6529, էջ 1։

137. Վ. Թ., «Սպահան իր պարտէզներով եւ պալատներով», *Արեւ*, 17 Փետրուար 1937, ԻԱ. տարի, թիւ 5512, էջ 2։

138. Վահան Թէքէեան, «Մեր երիտասարդութիւնը, Ա.», *Արեւ*, 9 Յունիս 1915, Ա. տարի, թիւ 14, էջ 1։

139. Անդ։

140. Վ. Թ. «Համաժողով մը...», *Արեւ*, 5 Հոկտեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6624, էջ 1։

141. Անդ։

142. Վ. Թ., «Գրական. անջատ եւ միացեալ նօթեր», *Արեւ*, 20 Ապրիլ 1929, ԺԵ. տարի, թիւ 3103, էջ 1։

143. Վահան Թէքէեան, «Խեղճութեանց ցուցադրութիւն. Ռուբէն Մամուլեանի առիթով», *Արեւ*, 1 Դեկտեմբեր 1937, ԻԱ. տարի, թիւ 5753, էջ 2։

144. Անդ։
145. Անդ։
146. *Արեւ*, 25 Նոյեմբեր 1929, ԺԶ. տարի, թիւ 3596, էջ 3։
147. *Արեւ*, 27 Նոյեմբեր 1929, ԺԶ. տարի, թիւ 3598, էջ 4։
148. Վ. Թ., «Խմբագրական. հայ թատրոնը», *Արեւ*, 17 Յունուար 1931, ԺԶ. տարի, թիւ 3640, էջ 1։
149. Վահան Թէքէեան, «Մեր երիտասարդութիւնը, Բ.», *Արեւ*, 11 Յունիս 1915, Ա. տարի, թիւ 15, էջ 1։
150. Վահան Թէքէեան, «Ընթերցողի նօթեր», *Արեւ*, 3 Ապրիլ 1937, ԻԱ. տարի, թիւ 5549, էջ 2։
151. Վահան Թէքէեան, «Խրիմեան եւ կուսակրօնութիւնը (յուշեր եւ նօթեր)», *Արեւ*, 5 Մայիս 1937, ԻԱ. տարի, թիւ 5575, էջ 2։
152. Անդ։
153. Անդ։
154. Անդ։
155. Անդ։
156. Վահան Թէքէեան, «Խրիմեանի մասին», *Արեւ*, 31 Յուլիս 1937, ԻԱ. տարի, թիւ 5649, էջ 2։
157. Անդ։
158. Արշակ Ալպօյաճեան, «Նուպար եւ Օտեան», *Արեւ*, 7 Փետրուար 1942, ԻԶ. տարի, թիւ 7031, էջ 4։
159. Ասուպ, «Ամենօրեայ. Խրիմեանի նամակը», *Արեւ*, 9 Փետրուար 1942, ԻԶ. տարի, թիւ 7032, էջ 2։
160. Վ. Թ., «Պօղոս Նուպար փաշա», *Արեւ*, 19 Հոկտեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6636, էջ 1։
161. Անդ։
162. Վ. Թ., «Յիշատակներ Կոմիտաս Վարդապետէն», *Արեւ*, 2 Նոյեմբեր 1935, Ի. տարի, թիւ 5116, էջ 2։
163. Հրահատ, «Յիշատակի հանդէս Կոմիտաս Վարդապետի համար», *Արեւ*, 28 Նոյեմբեր 1935, Ի. տարի, թիւ 5138, էջ 2։ Բանախօսութիւնը տեղի ունեցած է 1935 Նոյեմբեր 24-ին, Հայ Գեղարուեստասիրաց Միութեան սրահին մէջ։
164. Վահան Թէքէեան, «Կոմիտասի երգերուն բառերը», *Արեւ*, 11 Յունուար 1936, Ի. տարի, թիւ 5174, էջ 2։
165. Անդ։
166. Վ. Թ., «Գրական յուշեր. Ե. Օտեանի հետ», *Արեւ*, 20 Օգոստոս 1938, ԻԲ. տարի, թիւ 5971, էջ 2։
167. Վ. Թ., «Զատկի շաբաթը», *Արեւ*, 22 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6457, էջ 1։
168. Վ. Թ., «Զատկի առթիւ», *Արեւ*, 23 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6458, էջ 1։
169. Անդ։
170. Վահան Թէքէեան, «Հաւատքէ պարպուող եկեղեցին», *Արեւ*, 23 Յունուար 1926, ԺԲ. տարի, թիւ 2105, էջ 1-2։
171. Վ. Թ., «Եկեղեցական պետերը», *Արեւ*, 3 Օգոստոս 1940, ԻԵ. տարի, թիւ 6570, էջ 1։

172. Անդ։

173. Վ. Թ., «Ըմբռնում», *Արեւ*, 26 Սեպտեմբեր 1942, ԻԷ. տարի, թիւ 7227, էջ 1։

174. Անդ։

175. Անդ։

176. Վահան Թէքէեան, «Հաւատքէ պարպուող եկեղեցին», *Արեւ*, 23 Յունուար 1926, ԺԲ. տարի, թիւ 2105, էջ 1։

177. Անդ, էջ 1-2։

178. Անդ, էջ 2։

179. Վահան Թէքէեան, «Հին եւ նոր նօթեր», *Արեւ*, 26 Յունիս 1937, ԻԱ. տարի, թիւ 5620, էջ 2։

180. Պլատոն, «Սոփեստ», *Երկեր չորս հատորով*, հատոր II, հին յունարէնից թարգմանեց եւ ծանօթագրութիւնները գրեց՝ Սերգէյ Ստեփանեան, Երեւան, Սարգիս Խաչենց. Փրինթինֆօ, 2009, էջ 204։

181. Guy Debord, *Society of the Spectacle*, translated by Ken Knabb, London: Rebel Press, p. 7.

182. Վ. Թ., «Գրական. *Բարոյական գաղափարներու ծագումը եւ զարգացումը*», *Արեւ*, 23 Մարտ 1929, ԺԵ. տարի, թիւ 3080, էջ 1։

183. Անդ։

184. Անդ։

185. Վ. Թ., «Հ.Բ.Ը.Մ.ի կեդրոնը, Բ.», *Արեւ*, 8 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6445, էջ 1։

186. Անդ։

187. Վ. Թ., «*Միութիւն*ի մէջ, Բ.», *Արեւ*, 10 Մայիս 1940, ԻԵ. տարի, թիւ 6497, էջ 1։

188. Անդ։

189. Վ. Թ., «*Միութիւն*ի մէջ, Գ.», *Արեւ*, 15 Մայիս 1940, ԻԵ. տարի, թիւ 6501, էջ 1։

190. Վ. Թ., «Բարեգործականի գործը», *Արեւ*, 24 Յունուար 1942, ԻԶ. տարի, թիւ 7019, էջ 1։

191. Վ. Թ., «Բարեգործականը ի՞նչ կ'ընէ», *Արեւ*, 22 Նոյեմբեր 1941, ԻԶ. տարի, թիւ 6968, էջ 1։

192. Վ. Թ., «Բարեգործականի գործը», *Արեւ*, 24 Յունուար 1942, ԻԶ. տարի, թիւ 7019, էջ 1։

193. Վ. Թ., «Էջմիածնի դիմումը», *Արեւ*, 9 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6446, էջ 1։

194. Վ. Թ., «Անթիլիասի անցքերը», *Արեւ*, 27 Դեկտեմբեր 1941, ԻԶ. տարի, թիւ 6998, էջ 1։

195. Վ. Թ., «Ազգ. Գալուստեան Վարժարանը», *Արեւ*, 9 Սեպտեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6601, էջ 1։ Վ. Թ., «Տնօրէնին պարագան, Ա.», *Արեւ*, 16 Սեպտեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6607, էջ 1։

196. Վ. Թ., «Հոգաբարձութեան պարագան», *Արեւ*, 11 Սեպտեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6603, էջ 1։

197. Վ. Թ., «Ըմբռնում», *Արեւ*, 26 Սեպտեմբեր 1942, ԻԷ. տարի, թիւ 7227, էջ 1։

198. Վ. Թ., «Քիչ մը քննադատութիւն», *Արեւ*, 1 Փետրուար 1941, ԻԵ. տարի, թիւ 6721, էջ 1։

199. Վ. Թ., «Յոռետե՞ս թէ լաւատես», *Արեւ*, 18 Հոկտեմբեր 1941, ԻԶ. տարի, թիւ 6940,

էջ 1:

200. Անդ:

201. Վահան Թէքէեան, «Նուարդ Տամատեանի դաշնակի ռէսիթալը», *Արեւ*, 16 Մարտ 1938, ԻԲ. տարի, թիւ 5839, էջ 2-3:

202. Վ. Թ., «Թատերական. *Գէշ հովիւները*», *Արեւ*, 24 Նոյեմբեր 1928, ԺԵ. տարի, թիւ 2981, էջ 1:

203. Վ. Թ., «Կոստանեան թատերախումբ. *Խորտակուած ընտանիքը*», *Արեւ*, 17 Ապրիլ 1929, ԺԵ. տարի, թիւ 3100, էջ 2:

204. Վ. Թ., «Պ. Շ. Պէրպէրեանի հայկական համերգը Գեղարուեստասիրացի հովանիին տակ», *Արեւ*, 29 Մայիս 1929, ԺԶ. տարի, թիւ 3135, էջ 2:

205. Վ. Թ., «Աշոտ Զօրեանի ցուցահանդէսը», *Արեւ*, 10 Յունուար 1942, ԻԶ. տարի, թիւ 7007, էջ 2:

206. Վ. Թ., «Ֆիլիք Աղազարեանի փառայեղ նուագահանդէսը», *Արեւ*, 15 Փետրուար 1939, ԻԳ. տարի, թիւ 6120, էջ 2:

207. Վ. Թ., «Աշոտ Զօրեանի ցուցահանդէսը», *Արեւ*, 10 Յունուար 1942, ԻԶ. տարի, թիւ 7007, էջ 2:

208. Վ. Թ., «Թատերական. *Գէշ հովիւները*», *Արեւ*, 24 Նոյեմբեր 1928, ԺԵ. տարի, թիւ 2981, էջ 1:

209. Վ. Թ., «Գալուստեանի հանդէսը», *Արեւ*, 8 Յունիս 1938, ԻԲ. տարի, թիւ 5909, էջ 3:

210. «Վ. Թէքէեանի դամբանականը», *Լուսաբեր*, 18 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 484, էջ 3:

211. *Լուսաբեր*, 18 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 484, էջ 1-2:

212. Վահան Թէքէեան, «Յեղափոխութիւն եւ ոճիր», *Լուսաբեր*, եռօրեայ, Գահիրէ, 22 Փետրուար 1908, Դ. տարի, թիւ 486, էջ 192:

213. Վահան Թէքէեան, «Արփիար Արփիարեան «մատնիչ»», *Արեւ*, 21 Նոյեմբեր 1931, ԺԷ. տարի, թիւ 3901, էջ 2:

214. Վ. Թ., «Ճշմարտութիւնը», *Արեւ*, 13 Մարտ 1943, ԻԷ. տարի, թիւ 7366, էջ 2:

215. Անդ:

216. Անդ:

217. Վ. Թ., «Արփիարեանի մասին», *Արեւ*, 10 Ապրիլ 1943, ԻԷ. տարի, թիւ 7390, էջ 2:

218. Վ. Թ., «Արփիար Արփիարեանի հետ (Յուշեր)», *Արեւ*, 8 Մայիս 1943, ԻԷ. տարի, թիւ 7413, էջ 2-3: Շարունակութիւնը՝ Վ. Թ., «Արփիար Արփիարեանի հետ (Յուշեր)», *Արեւ*, 15 Մայիս 1943, ԻԸ. տարի, թիւ 7419, էջ 2-3:

219. Վ. Թ., «Գրական յուշեր. Երուանդ Օտեանի հետ», *Արեւ*, 13 Օգոստոս 1938, ԻԲ. տարի, թիւ 5966, էջ 2:

220. Օ. Մ., «Օտեանի երեկոյթը Ժողովրդային Սրահին մէջ», *Արեւ*, 26 Մարտ 1929, ԺԵ. տարի, թիւ 3082, էջ 2:

221. Վ. Թ., «Գրական յուշեր. Երուանդ Օտեանի հետ», *Արեւ*, 13 Օգոստոս 1938, ԻԲ. տարի, թիւ 5966, էջ 2: Վ. Թ., «Գրական յուշեր. Ե. Օտեանի հետ», *Արեւ*, 20 Օգոստոս 1938, ԻԲ. տարի, թիւ 5971, էջ 2:

222. Վ. Թ., «Գրական յուշեր. Ե. Օտեանի հետ», *Արեւ*, 20 Օգոստոս 1938, ԻԲ. տարի, թիւ 5971, էջ 2:

223. Վ. Թ., «Շահան Շահնուրի համար, Ա.», *Արեւ*, 18 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6453, էջ 1:

224. Անդ:

225. Անդ:

226. Անդ:

227. Անդ:

228. Վ. Թ., «Շահան Շահնուրի համար, Բ.», *Արեւ*, 19 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6454, էջ 1:

229. Անդ:

230. «Շահան Շահնուրի համար, Ա. ցանկ», *Արեւ*, 20 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6455, էջ 1:

«Շահան Շահնուրի համար, Բ. ցանկ», *Արեւ*, 21 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6456, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, Գ. ցանկ», *Արեւ*, 22 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6457, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, Դ. ցանկ», *Արեւ*, 23 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6458, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, Ե. ցանկ», *Արեւ*, 26 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6459, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, Զ. ցանկ», *Արեւ*, 27 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6460, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, Է. ցանկ», *Արեւ*, 29 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6462, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, Ը. ցանկ», *Արեւ*, 30 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6463, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, Թ. ցանկ», *Արեւ*, 1 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6464, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, Ժ. ցանկ», *Արեւ*, 2 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6465, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, ԺԱ. ցանկ», *Արեւ*, 3 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6466, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, ԺԲ. ցանկ», *Արեւ*, 10 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6472, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, ԺԳ. ցանկ», *Արեւ*, 16 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6477, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, ԺԴ. ցանկ», *Արեւ*, 25 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6485, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, ԺԵ. ցանկ», *Արեւ*, 1 Մայիս 1940, ԻԵ. տարի, թիւ 6489, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, ԺԶ. ցանկ», *Արեւ*, 25 Մայիս 1940, ԻԵ. տարի, թիւ 6510, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, ԺԷ. ցանկ», *Արեւ*, 30 Մայիս 1940, ԻԵ. տարի, թիւ 6514, էջ 1:
«Շահան Շահնուրի համար, ԺԸ. ցանկ», *Արեւ*, 22 Յունիս 1940, ԻԵ. տարի, թիւ 6534, էջ 1:

231. Վ. Թ., «Շահան Շահնուրի համար», *Արեւ*, 21 Դեկտեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6688, էջ 2:

232. Հրանդ Տատրեան, «Շահնուրի իրականութիւնը», *Արեւ*, 23 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6458, էջ 2:

233. Տոքթ. Շահնազար Որբունի, «Խորհրդածութիւններ Շահան Շահնուրի պարագային շուրջ», *Արեւ*, 28 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6461, էջ 2:

234. Առօ Սեւհողենց, «Երախտապարտ ըլլանք Շահնուրի», *Արեւ*, 30 Մարտ 1940, ԻԵ. տարի, թիւ 6463, էջ 2:

235. Վ. Թ., «Լուրեր Շահան Շահնուրէն», *Արեւ*, 13 Ապրիլ 1940, ԻԵ. տարի, թիւ 6475, էջ 1:

236. Անդ:

237. Անդ:

238. «Անտիպ էջ մը Շ. Շահնուրէն», *Արեւ*, 1 Յունիս 1940, ԻԵ. տարի, թիւ 6516, էջ 2-3:

239. «Ազնիւ տուրքը», *Արեւ*, 5 Յունիս 1940, ԻԵ. տարի, թիւ 6519, էջ 2:

240. «Շահան Շահնուրի նամակը իր *Արեւ*ի բարեկամներուն», *Արեւ*, 8 Յունիս 1940, ԻԵ. տարի, թիւ 6522, էջ 2:
241. Վ. Թ., «Շահան Շահնուրի համար», *Արեւ*, 21 Դեկտեմբեր 1940, ԻԵ. տարի, թիւ 6688, էջ 2:
242. Վ. Թ., «Լուրեր Շահան Շահնուրէն», *Արեւ*, 29 Մարտ 1941, ԻԵ. տարի, թիւ 6769, էջ 2:
243. «Շ. Շահնուրի նամակը», *Արեւ*, 12 Ապրիլ 1941, ԻԵ. տարի, թիւ 6781, էջ 2:
244. Վ. Թ., «Շահան Շահնուրի համար», *Արեւ*, 30 Օգոստոս 1941, ԻԶ. տարի, թիւ 6898, էջ 2-3:
245. Վ. Թ., «Հայ արուեստին հետ», *Արեւ*, 27 Մարտ 1943, ԻԷ. տարի, թիւ 7378, էջ 1:

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹԻՒՆ

# ՅԱՒԵԼՈՒԱԾՆԵՐ ՁԱՀԱԿԻՐ ՇԱԲԱԹԱԹԵՐԹԻ

2016

Յաւելուած Ա.
*Չորս հարցազրոյց Հրանդ Տինքի հետ*, նախաբան՝ Հայկ Աւագեան (59 էջ)

Յաւելուած Բ.
Հայր Լեւոն Զէքիեան, *Մեծ Եղեռնի հարիւրամեակ՝ յիշողութիւն եւ մարտահրաւէր (դասախօսութիւն)* (40 էջ)

Յաւելուած Գ.
*Թէոդիկի նամակները Արարատ Քրիսեանին*, խմբագիր՝ Հ. Աւագեան (61 էջ)

Յաւելուած Դ.
Հայկ Աւագեան, *Փարիզի Քոմիւնը, Կայսրութիւնը եւ հայոց ցեղասպանութիւնը. մարքսիթական-անարշիթական ընթերցում մը* (202 էջ)

2017

Յաւելուած Ե.
*Papasian & Co. երաժշտական ընկերութիւնը (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան (317 էջ)

Յաւելուած Զ.
*Աղեքսանդրիոյ հայկական երաժշտական կեանքի ուրուագիծ (ըստ ազդագիրներու եւ յայտագիրներու)*, հաւաքեց՝ Հ. Աւագեան (201 էջ)

Յաւելուած Է.
*Խմբավար եւ երաժշտահան Հայկ Սարգիսեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան ուրուագիծ (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան (561 էջ)

Յաւելուած Ը.
*Դաշնակահար եւ մանկավարժ Նուարդ Տամատեանի կեանքի ուղեգրութիւնը (ըստ վաւերաթուղթերու եւ փաստագրութիւններու)*, հաւաքեց եւ պատրաստեց՝ Հայկ Աւագեան (546 էջ)

Յաւելուած Թ.
*Ուրուագիծ Գոհար Գասպարեանի Եգիպտոսի շրջանի գործունէութեան (1940-1948)*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (88 էջ)

Յաւելուած Ժ.
*Տիրան Կարապետեան. յօդուածներ իր մասին, նկարներու ալպոմ (ծննդեան 135-ամեակին առիթով),* հաւաքեց՝ Հ. Աւագեան (73 էջ)

Յաւելուած ԺԱ.
*Վանիա Էքսէրճեան. բազմերանգ աշխարհ մը համակ կենսունակութեամբ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (53 էջ)

## 2018

Յաւելուած ԺԲ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Ա.- Հայկ Աւագեան, *Արփիար Արփիարեանի սպանութիւնը* (155 էջ)

Յաւելուած ԺԳ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Բ.- *Արփիար Արփիարեանի լոնտոնեան թղթածրարը Գահիրէի մէջ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (497 էջ)

Յաւելուած ԺԴ.
Արփիար Արփիարեանի սպանութեան 110-ամեակին առիթով
Գ.- *Մարդը ընդդէմ մարդու. մահափորձեր եւ սպանութիւններ հայկական օրինակով (1890-1908)*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան (169 էջ)

Յաւելուած ԺԵ.
*2008 Մարտ 1-ը ըստ* Lragir.am*-ի,* A1+*-ի եւ Հետքի (10-ամեակին առիթով)*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան (625 էջ)

Յաւելուած ԺԶ.
Հայկ Աւագեան, *Թաւշեայ Յեղափոխութիւն Հայաստանի մէջ. Ա. փուլ (13 – 23 Ապրիլ 2018)* (32 էջ)

Յաւելուած ԺԷ.
Հայկ Աւագեան, *Թաւշեայ Յեղափոխութիւն Հայաստանի մէջ. Բ. փուլ (25 Ապրիլ – 1 Մայիս 2018)* (58 էջ)

Յաւելուած ԺԸ.
*Արմենակ Շահ-Մուրատեան. ժամանակագրութիւն, յօդուածներ, երգացանկ*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (580 էջ)

Յաւելուած ԺԹ.
*Գոհարիկ Ղազարոսեան. ցանկ ստեղծագործութիւններու, սկաւառակագրութիւն*, պատրաստեց՝ Հայկ Աւագեան (160 էջ)

Յաւելուած Ի.
Մարուշ Երամեան, *Ուրուանկար 1965-1995 թուականներու Սփիւռքահայ բանաստեղծութեան*, ներածութիւն՝ Հայկ Աւագեան, գնահատանքի խօսք՝ Արմենակ Եղիայեան (182 էջ)

## 2019

Յաւելուած ԻԱ.
*Քիրազ. ընտրանի եգիպտական շրջանի երգիծանկարներու*, հաւաքեց՝ Հայկ Աւագեան (81 էջ)

Յաւելուած ԻԲ.
Հայկ Աւագեան, *Վահան Թէքէեանի յօդուածները* Արեւ *լրագիրին մէջ. հնարաւորութի՞ւն թէ դիմադրութիւն* (124 էջ)